# ԵՐԴՈՒՄՆ

# ՀԻՆ ՀԱՅՈՑ ՄԷՋ

ԳՐԵՑ

Հ. ՎԱՐԴԱՆ Վ. ՀԱՑՈՒՆԻ

ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ

ՌՅԾԹ — 1910

# ԵՐԴՈՒՄՆ

## ՀԻՆ ՀԱՅՈՑ ՄԷՋ

Ամէն ժամանակ և ամէն տեղ մարդկութիւնը սովորութիւն ըրած է վկայ կոչել զԱստուած կամ զաստուածայինս՝ ճշմարտութեան հաստատութեանը համար. և այս գործը կը կոչուի երդումն։

Քրիստոնէութիւնը կատարելութեան հետամուտ, բաւական համարեցաւ անկեղծ բանից սոսկ վկայութիւնը։ Յայտնի է ամենուն աւետարանական ծանօթ պատուէրն՝ «Ամենեւին մի՛ երդնուլ»։ Սա այնպէս խոր տպաւորուած էր եկեղեցւոյ Հարց մտացը վրայ, որ անոնք ճշմարիտ

սարսափ մը կ'իմանային երդմանէն։ Ոսկեբերան մեկնելով նոյն տեղին, կը մերժէ որ և է պատճառաւ երդնուլը, նոյն իսկ արդարն ալ, «աւելի» և «ի չարէն» կոչելով «երդնուլն իսկ, և ոչ եթէ սուտ երդնուլ» (Մեկ. Մատթ. Ա. ժէ)։ Քան զայն ուժգին կը խօսի մեր հին Հայրերէն Յովհան Մանդակունի, որ նոյն խնդրոյն նկատմամբ գրեց ամբողջ ճառ մը, «Վասն չար սովորութեան երդման» վերնագրով (ճառք, ժե)։ «Ամենեւին մի՛ երդնուլ, կ'ըսէ հոն, մի՛ սուտ և մի՛ արդար. զի երդումն արդար երբեք ոչ է, այլ ի սատանայէ է» (էջ 110)։ Այս համոզումն՝ աւելի կամ նուազ ուժգնութեամբ՝ սեպհականութիւն մնաց նաև յաջորդ դարուց գրեթէ բոլոր եկեղեցական Հարց։

Սակայն ոչ Աւետարանի և ոչ Հարց ձայնը ստացաւ երբեք բացարձակ զօրութիւնը՝ ջնջելու քրիստոնէական ընկերութենէն երդման արմատացած սովորութիւնը։ Եւ խօսքս կեդրոնացնելով Հայոց վրայ, մնաց այն անոնց քով այնպէս՝ ինչպէս որ էր Աւետարանի ծագելէն յառաջ. ինչպէս որ ժառանգեր էին իրենց հեթանոս նախնիներէն։

*Երդումը կ'առնունք կրկին իմաստով․ մին այն՝ զոր վարժած էր ռամիկը թեթեւութեամբ կրկնել իւր հանապազօրեայ խօսակցութեան մէջ, և զոր կ'անուանեմ անկանոն երդումն․ և միւսն այն՝ որ կարեւոր դիպուածոց մէջ կը կատարուէր լրջութեամբ և հրապարակաւ, և զոր կը կոչեմ օրինական երդումն։ Գիտենք՝ թէ ո՛րքան կը զանազանին ասոնք իրարմէ կարեւորութեամբ և յարակից բոլոր հանգամանօք։ Հարկ է ուրեմն անջատաբար եւս տեսնել զանոնք։*

# ԱՆԿԱՆՈՆ ԵՐԳՄՈՒՆՔ

*Մանդակունւոյն վերոյիշեալ ճառը որքան մանրամասն՝ այնքան հետաքրքրական է իր բովանդակութեամբ, և անոր համար արժանի մեր շնորհակալութեան։ Անկից կ'իմանանք՝ թէ իր ժամանակակից Հայք ո՛րչափ խանգարուած էին բարուք, և ո՛րքան դիւրաւ կ'երդնուին՝ իրաւ կամ սուտ, առ հարկի կամ առանց հարկի, որպէս թէ Աւետարանի կամ Եկեղեցւոյ պատուէրը կատարելապէս անծանօթ լինէր իրենց։ «Ցընտելական սովորութենէն, կ'ըսէ նա, և չարիքն իսկ ոչ երեւին»* (110), *և երդմնելու ժամանակ վարժութենէն և ոչ իսկ կը զգային՝ թէ կ'երդնուն* (113)։ *Խօսքէն յառաջ երդումը կ'ելնէր ամենուն բերանէն, կը յաւելու. իսկ ցոփոգիք և աղտեղաբանք՝ իրենց ըսելիքը դեռ չխորհած՝ երդումը պատրաստ ունէին լեզուին վրայ* (114)։

1․ — Կը զարմանանք, և դժուարաւ պիտի հաւատայինք՝ եթէ նոյն ականատես վկայն չհաստատէր, թէ Հայոց մէջ ամէն դասակարգ և ամէն աստիճանաւոր նոյն ախտով վարակուած էին։ Եւ որովհետեւ սովորութեամբ և անխտիր երդումը ճշմարտութեան շատ դաշնակից չէր կարող լինել, ուստի թագաւորք, իշխանք, եպիսկոպոսք, քահանայք, արք, կանայք, ծերք ու տղայք՝ «երդմունս սուտս» կը տեղային ամէն առթի մէջ և ամէն տեղ (115)։ Անոնք որ տան կամ փողոցներու մէջ իրարու հետ կը խօսակցէին, երդումը հետն ունէին (113, 114, 115)։ Տղայք որ կը խաղային, իրենց յաջողութիւնը կամ անաջողութիւնը երդմամբ կը հաստատէին (114)։ Վաճառականք իրենց վաճառուց լաւութիւնը կամ գնոց արդարութիւնը ցուցնելու համար երդման կը դիմէին (114, 115)։ Թշնամանողք իրենց լուտանքները կը սաստկացնէին երդմամբ (114)։ Երբ զգաստ անձինք կը ցուցնէին այդ սովորութեան անպատեհութիւնը, զեղծանողք կը պատասխանէին․ «Երդմամբ հաստատեմք զբանս, զի առանց երդման ոչ հաւատայ» (115)․ որ է ըսել՝ յոռի վար-

*ժութիւնը լոկ խօսից վրայ հաւատքը ցըրուեր էր ի սպառ անոնց միջէն։ Կային ալ՝ որ պարզապէս կատակի համար՝ «ընդ խաղ ինչ ընդ վայր» կ'երդնուին* (113)։

*Եւ շատ իրաւացի էր՝ երբ պերճաբան հայրապետը կ'աղաղակէր բարկութեամբ․ «Արդ զի՞նչ արասցուք զահեղ ամբարըշտութիւնս ախտիս այսորիկ․ զի իբրեւ զհուր հոսեցաւ ընդ ամենայն երկիր, և լցան բերանք ամենայն բոցով անօրէնութեան ախտին»* (113)։

2․ — *Պարզ երդնուլը չէր թերեւս զինք զարհուրեցնող, որքան իրերը որոց անուան կ'երդնուին։ Արեգակն, լուսին և աստեղք, որոնք Հայոց նախկին ու լքեալ աստուածներն էին, քրիստոնէութեան շրջանին տակաւին բաժին մ'ունէին իրենց հին պաշտամունքէն՝ երդման մէջ, զոր կ'ընծայէին Հայք իրենց*[1]։ — *Գլուխը, մարմնոյն ազնուականագոյն անդամը, երդում կ'ըդունէր իւր բերանէն*[2]։ — *Աչքը, զգա-*

1․ *Պարսիկներն այդ ժամանակ դեռ երդում կու տային յանուն աստուածացեալ տարերաց․ Ճապուհ «երդնու...* յարեգակն և ի ջուր և ի կրակ» (Փաւս․ Դ, ժզ)։ Եւ *Յազկերտ կը կրկնէր «զահաւոր երդումն* յարեգակն» (Եղիշ․ Բ)։

2․ *Ատոր շարունակութիւնը և կատարման նկարագիրը*

յարանաց ամենէն գեղեցիկը, անոնք եւս կը պատուէին երդմամբ (115)։

Գուցէ դեռ տանելի պիտի լինէին այս աւանդական հեթանոս ձեւերը, եթէ անոնց հետ չխառնուէին աւելի նուիրական կոչումներ. զի նոյնքան թեթեւութեամբ և անտարբերութիամբ կ' երդնուին անոնք նաեւ Աստուծոյ վրայ (անդ), Քրիստոսի խաչին ու չարչարանաց վրայ, մարգարէից, առաքելոց և մարտիրոսաց վրայ (111), զոր Մանդակունին չի խղճեր անուանել «սատանայական երդումն» (անդ), և «կատարեալ ուրացութիւն» (115)։ Այսպիսիք կը կոչուէին երդմնահարք (112), և իրենց գործը՝ երդմնահարութիւն (Ցճխպ. Զ. 52)։

3. — Հայը միշտ աւանդապահ եղած է ինչպէս իր առաքինութեանց, նաեւ իր մոլութեանց մէջ. և զարմանք չէ՝ որ երդմնահարութեան այդ հին ախտը պահուած լինի դեռ ԺԲ դարուն։ Այդ ժամանակի Մանդակունին՝ Մխիթար Գոշն է, որ երկարօրէն կը գրէ այս մասին Դատաստա-

կը տեսնենք Մխիթ. Գոշի առակաց մէջ. ուր կատուն խոստանալով խնայել մկանց, «ձեռն ի գլուխ եդեալ՝ երդմամբ հաստատեաց զայս» (Գ,Ա)։ Հրեայք ալ ունէին այս ձեւը, զոր Քրիստոս արգիլեց՝ ըսելով. «Մի՛ ի գլուխ քո երդնուցուս» (Մտթ. Ե, 36)։

նագրոց՝ մէջ (Նախդր. Ը)։ Կ՚ըսէ նա՝ թէ տէրունական հրամանը «տեսանեմք այժմ կորեան եղեալ ի մարդկանէ. քանզի յաճախեաց վայրապար երդնուլն»։ Երդումը կը մտնէր սովորական խօսակցութեանց մէջ «յոչինչ պէտս». և այն՝ «ի փողոցս և ի հրապարակս և ի բանակռուութիւնս», մանկանց՝ ծերոց և շատ անգամ քահանայից իսկ կողմանէ։ Դատախազք յատեան չհասած՝ «ի կռուելն և ի ճանապարհին գալն բազում անգամ երդնուն ստսկալի օրինակաւ»։ Իսկ երբ կը հասնէին դատաւորին առջեւ, սուրբեր կը դառնային և կը դժուարէին տալ օրինական երդումն՝ իբրեւ հակառակ Աւետարանին (անդ, էջ 46)։ Երբ կը յանդիմանուէին վայրապար երդմանց համար, կը պատասխանէին իրենց Ն դարու նախնեաց պէս. «Չի ոչ հաւատան բանից մերոց, վասն այնորիկ երդնումք»։ Եւ շատ տարօրինակ պարագայ մը, «Բամբասեն ըզՔրիստոսի Աւետարանն՝ թէ ընդէ՞ր հրամայեաց բնաւ ոչ երդնուլ» (47). որպէս թէ խղճէին այդ հրամանն ոտնակոխ ընել։

1. Էջերը կը դնեմ ըստ հրատարակութեան Վ. Վ. Բաստամեանց, 1880, ի Վաղարշապատ։

4. — Մխիթար երդման կրկին ձեւեր կ'աւանդէ, խոստովանութեան և ուրացութեան. առաջինն օրինաւոր և երկրորդն ապօրինի, որոց բացատրութիւնը պիտի տեսնենք իրենց տեղւոյն մէջ։ Երկրորդ կարգէն կը դնէ հետեւեալ սովորոյթները, որ կը գործադրուէին ռամիկներէն կամ ռամկաբար՝ այլազգեաց պահանջելովը. այս ինքն՝ եկեղեցի մտնելով՝ ճրագը մարել[1]. — բերանով փչել ջրոյ և ձիթոյ վրայ. — գետինը խաչ նկարել ու կոխել. — շան ձետէն բռնել. — ձեռաց մէջ ոսկր առնուլ. — գետնի վրայ երկու ծիր գծել, և մեկէն միւսը մտնել[2]։ Այսոցմէ՝ կ'ըսէ նա՝ քրիստոնեայն պարտի մահու չափ շգուշանալ (51)։

Սոյնպիսի անպատեհ երդմանց դասէն էր և այն՝ զոր կը տեսնէր Գրիգոր Տաթեւացի իւր օրով. որ է երդնուլ «յայլիւն և ի մօրուսն Աստուծոյ», զոր ինք «ծանր մեղք» կ'անուանէ (Քրզ. հտ. ձմր. Բ, 16)։

1. Այդ սովորութիւնը դեռ կը պահուի հայ գաւառաց մէջ։

2. Այդ ձեւոց իմաստը գուշակել դիւրին է. մարել քրիստոնէական հաւատքը. մկրտութեան ջրոյն և մեռոնին շնորհքը մերժել. կոխել փրկագործութեան խորհուրդը. անհաւատ շա՞ն հաւասարիլ. մեռնիլ, ո՞սկր դառնալ. ծիր փոխելով՝ կրօնափոխ կամ ուրացող լինել։

# ՕՐԻՆԱԿԱՆ ԵՐԴՄՈՒՆՔ

*Եթէ Հարք կը խորշէին ընդհանուր երդմանէն, աւելի ներողամիտ էին սակայն օրինական երդման մասին, որ ոսկեդարու մատենագիրներէն կը կոչուի նաեւ «ուխտ[1]»։ Ներողամիտ էին անոր համար՝ որ ամէն ժամանակ և ամէն ազգաց ու կրօնից մէջ օրինական երդումը տիրապետող դեր մը ստացած էր. ուսկից քրիստոնէութիւնը չէր կարող դիւրաւ ձեռնպահ մնալ, եթէ ոչ չափով մը, երբ պիտի կենցաղակցէր և խնդիրներ ունենար ուրիշ կրօնից հետեւողներու հետ։ Իսպառ քեցել անկից քրիստոնէութիւնը՝ թէեւ իրենց ներքին բաղձանքն էր, բայց կը զգային թէ անկարելին պիտի պահանջէին. ու տեղի կու տային։*

*Նոյն ինքն Մանդակունին, զոր այնքան անողոք տեսանք վերեւ, կ'որոշէ մաս-*

*1. Թէեւ այդ բառն աւելի կը նշանակէ դաշն երդմամբ հանդերձ կամ լոկ։*

Նաւորապէս առ ի սովորութենէ կատարուածը՝ «երդմունս սուտս» բացատրութեամբ (115), և չափով մը թոյլ կու տայ օրինականը՝ երբ կ'ըսէ. «Մի՛ վայրապար ընդ Աստուծոյ յուխտ մտցուք, և զսուրբ անունն Աստուծոյ ընդ երդմանն կապեսցուք» (116)։ — Շնորհալին ալ, ընդունելով հանդերձ Աւետարանի անպայման արգելքը, չի մերժեր երդումն ուր հարկ է. միայն թէ կը յանձնարարէ իշխանաց շատ զգուշաւոր լինել. «Մի՛ եղիցի ձեզ յօժարութեամբ դիմել յերդմունս... առանց մեծագոյն հարկի» (Ընդհր. Վենետ. 192)։

Մխիթար Գոշ ըստ տառին կ'առնու տէրունական հրամանը, և կը փորձէ անոր հետ հաշտեցնել Ս. Գրոց մէջ երդման նպաստաւոր երեւած քանի մը տեղիքը, զոր ժամանակակիցքը մատնացոյց կ'ընէին. բայց ի վերջոյ ինքն ալ կը յաղթուի բռնաւոր և հզօր սովորութենէն (47–50), և կը պատուիրէ այն ժամանակ միայն երդնուլ՝ երբ «դատաւորն հրամայիցէ» (46)։ Իսկ անոր համար ալ իբր մեղանչական գործի՝ ապաշխարութեան կանոններ կը սահմանէ (57–8), որոնք թէ գործածութեան մտեր են երբեք՝ չեմ գիտեր, և կը տարակուսիմ։

Գոշէն քանի մը տարի յետոյ այս խնդրով զբաղեցաւ նաեւ Զաքարիա եպս. Ծործորեցի, լուսամիտ անձ մը, որ պատասխանելով Սիւնեաց Յովհ. եպիսկոպոսի դիտողութեանց, կը պայքարի անոր դէմ և յաջողութեամբ կ՚արդարացնէ դատաստանական երդումը, զոր կը գտնէ համաձայն Ս. Գրոց հոգւոյն։ Ի մէջ այլոց կ՚ըսէ. «Յորժամ տանջի լսողն (դատաւոր) և չհաւատայ բանին և երդմնեցուցանէ, ըստ այսմ պատճառի ոչ ինչ է վնաս»։ Անոր պայմաններն ալ կը դնէ այսպէս. «Երիս այս ինչ պահանջի յերդումն. զի վասն ճշմարիտ իրաց երդնուն. և արդարութեամբ երդնուն սրտի մտօք. և դատաստանաւ երդնուն՝ յորժամ հրաման ունիցին»։ Ասկից կը զատէ ինքնակամն ու կեղծը, զոր կը դատապարտէ. «Զի որիշ է երդումն ուտել[1] անձամբ վասն միոյ փողոյ և սուտ, և որիշ է երդումն տալ առաջնորդաց և դատաւորաց՝ վասն ճշմարտութեան հաւատալոյ» (Թուղթ)։ Ինչպէս

1. Այդ բացատրութիւնը Հայկազ. Բառգիրքն իրաւամբ կը մեկնէ «երդնուլ տարապարտ»։ Բայց Ե դարուն կը նշանակէր երդմնազանց լինել, ինչպէս է Մանդակունւոյն «երդմնակեր» ձեւին մէջ (112), որ իւր բարդն է։

տեսանք՝ Զաքարիա շատ հեռի է այսպիսի երդմանց մեղանչականութեան ու պատժոյ գաղափարէն։

Գր. Տաթեւացին նախորդներէն աւելի խիստ է. բայց թոյլ կու տայ երդնուլ «անհաւատից» առջեւ միայն. և այն՝ եթէ լինի «գործ մեծ վասն հաւատոյ կամ վասն արեան փրկութեան» (հտ. ձմր. 16)։ — Վերջապէս ունինք Եկեղեցւոյ հին ու նոր սովորութիւնը՝ զոր պիտի տեսնենք յաջորդաբար, և որ կը համաձայնի նոյն Հարց տուած ազատութեան հետ։

Ուսումնասիրութեանս նիւթը բաւական բարդ է. զի այլ և այլ դարերու մէջ կը հանդիպինք երդման պէսպէս ձեւերու, ո-րոնք մեծապէս կը տարբերին իրարմէ, ցոյց տալով տոհմային մտածութեանց ու բարուց հետաքրքրական յեղաշրջութիւն մը։ — Դարձեալ՝ խնդրոյս վրայ կանո-նաւորապէս խորհելու ժամանակ՝ մեր մը-տաց մէջ կը զարթնուն խումբ մը հարցեր. զոր օրինակ՝ ե՞րբ կ՚երդնուին նախնիք, ո՞ւր, ի՞նչ բանի վրայ, ի՞նչ ձեւով, և այլն, որոնք հարկ է որ առանձնաբար զբաղեցնեն զմեզ այս տեղ. և անոնց մէջ պիտի տեսնենք ժամանակեան տարբերու-թիւնքն ալ։

## Ա. ԱՌԻԹՔ ԵՐԴՄԱՆ

*Երդման բնութիւնը կը պահանջէր՝ որ անոր պատճառները լինէին ծանր խնդիրներ միայն, որոց մէջ նիւթական կամ բարոյական կարեւոր վնաս մը տեսնուէր՝ խափանելու, կամ նոյնպիսի մեծ օգուտ մը՝ ձեռք բերելու ի նպաստ ընկերութեան և կամ անոր անդամոց։ Հարկ էր դարձեալ՝ որ հանրութեան օրէնքը կամ սովորութիւնն յարմար դատէին երդման գործածութիւնն այս կամ այն առթին կամ պարագային մէջ։ Իսկ այս հարկն այն ժամանակ կը զգացուէր՝ երբ առաջադրեալ վախճանին հասնելու ուրիշ բաւական կամ ապահովիչ միջոցներ չլինէին ի ձեռին։ Եթէ երդման բոլոր առիթները քննենք մի առ մի, զանոնք ամփոփուած պիտի տեսնենք սոյն սկզբանց շրջանակին մէջ։ — Հայ անցեալէն երդման իմ յիշած առիթներն են հետագայք։*

1. — Կենցաղական խնդիրք։ — *Այն ամէն վիճեր՝ որոնք դատաստանի նիւթ կը կազմէին, ի սկզբանէ հետէ ենթակայ*

էին երդման՝ զոր ատեանն ինքնին կը պահանջէր։ Զա՛յս կը հաստատէ Մանդակունին՝ երբ կը յորդորէ իւր ճառին մէջ՝ «ոչ ճեղել զոք և զրկել, և ոչ հակառակութեամբ երդմունս սատանայականս» կատարել (116), ուր կը մտնեն առեւտրական և կալուածական գործեր, հարստահարութիւնք, զեղծմունք ի վնաս այլոց, և այլ ամէն այսպիսիք։ — Ըստ Մխիթար Գոշի՝ այսպիսի դատերու համար այն ժամանակ միայն կարելի էր երդնուլ՝ երբ վկայ չգտնուէր (53–54)։ Նոյնը կը կրկնէ Ծործորեցին ալ իւր վերոյիշեալ թղթին մէջ. «ի դատաստանի՝ որ վկայ ոչ լինի»։

2. – Քրէական յանցանքներ։ — Ասոնցմէ կը թուէ Մխ. Գոշ չորս գլխաւորներ. գողութիւն, շնութիւն, սպանութիւն և աւազակութիւն, որոնք միշտ ոճիրներ համարուած են հին ժամանակ. և որոնց պատիժը սաստիկ ու ջախջախիչ լինելով ամբաստանելոյն համար, անհրաժեշտ էր երդումը դատաստանի մէջ՝ երբ վկայ չկար եղեռնը հաստատող (54)։

3. – Հաւատարմութիւն առ կրօնս։ — Այս գործը կրկին իմաստով առնելու ենք.

մին՝ անձին հաւատոց հաստատութեան ցոյց մը. և միւսը՝ պաշտպանութիւն հասարակաց կրօնից կամ Եկեղեցւոյ։ Առ այս գեղեցիկ օրինակներ կ'ընծայէ մեզ Վարդանանց պատերազմը։

Միհրներսեհ Յազկերտի կողմանէ նամակ մը գրելով Հայոց, կ'առաջարկէր փոխանակել իրենց կրօնքը կրակապաշտութեան հետ։ Անհեթեթ առաջարկութիւն, որուն պատասխանեցին Հայք ընդարձակ թղթով մը, որով կը ջատագովէին քրիստոնէութիւնը և իրենց անխախտելի փարումն անոր։ Եւ որովհետև կասկածելի հոգիներ անպակաս էին Հայոց մէջ, հաստատելու համար բոլորին ներքին մասնակցութիւնն ալ, ամբողջութեամբ, կաթողիկոս, եպիսկոպոսունք, երիցունք և նախարարք, «անսուտ երդմամբ եդին վկայութիւն՝ կենօք և մահու ի նմին կալ հաստատուն» (Եղիշէ, Բ)։ Այս նամակը վայրացուց զՅազկերտ, որ հրամայեց նախարարաց ի դուռն երթալ։ Անոնք մեկնելէ յառաջ երկրորդ անգամ «նովին ուխտիւ հաստատեալ», ապա գնացին (անդ)։

Հասնելով հոն մեր՝ Վրաց և Աղուանից իշխանք, տեսան որ Յազկերտի ճիրանաց

մէջ բռնուած էին. կամ պէտք էր մազդեզականութիւնն ընդունել, և կամ յանձն առնուլ երբեակ կորուստներ, անձանց, հայրենեաց և եկեղեցւոյ։ Նախամեծար համարեցան ուրացութիւն մը կեղծել. բայց նախապահեստ մը պէտք էր՝ կեղծը ստուգութեան չփոխուելու, և միանգամայն համոզելու համար զՎարդան՝ որ կը հակառակէր ուժգին. երդումն էր այդ։ Ուստի բոլորը միասին «երդմունքն» յետ զերծանելու՝ հնազանդել սպարապետին հրամանաց, և տալ իրենց արիւնն հաւատոց պաշտպանութեան և աշխարհին փրկութեան համար. և մինչեւ իսկ յանձն առնուլ՝ եթէ հարկ լինի՝ օտարութիւն և աղքատութիւն կրօնից համար։ Ի տես մեծ վտանգին՝ որ կը սպառնար, և այս հանդիսական հայրենանուէր անկեղծ ուխտին՝ յուզուեցաւ ու լացաւ Մամիկոնեան առիւծը. ընկճուած էր, և զիջաւ (փարպ. ԻԷ)։ — Մինչդեռ կը դառնային ի Հայաստան, ճանապարհին վրայ ամէն անգամ որ դաշնակից նախարար մը կ'անջատուէր խմբէն՝ իւր գաւառն երթալու, նախ կը կրկնէր «զնոյն ուխտ երդման», կ'ըսէ պատմիչը (նոյն, ԻԸ)։

Այն պահուն՝ ուր Հայք ապստամբութեան դրօշը պիտի պարզէին, ի մի հաւաքուած մարզպանը, բոլոր Նախարարք ու սեպուհք, և ամբողջ բանակը, «երդուեալ» ամրապնդեցին առաջին ուխտը, կամ «հաստատէին զերդումն», (Նոյն, ԼԲ)։ — Նոյնպիսի սրտառուչ տեսարան մը կը պարզէ մեզ Վահանեանց ապստամբութիւնը. բոլոր զինակիցք յառաջ եկան, և զինուց փայլիւնին ու շաչիւնին մէջ մի առ մի երդուան հաւատարիմ մնալ Քրիստոսի սուրբ հաւատոց (Նոյն, ԿԶ)։

4. – *Նիզակակցութիւն*։ — Կրնար կատարուիլ թէ օտարաց և թէ ազգայնոց հետ. և զոր յաճախ կ'ամրացնէին երդմամբ։

Պէսպէս օրինակներ կան ասոր, որոց հնագոյնը կը տեսնենք Բ Արշակայ գործոյն մէջ։ Սա յեղյեղուկ և ըմբոստ նկարագիր մը, որպէս զի Շապուհ զինք միշտ զինակից ընէ՝ «երդումն պահանջէր ի նմանէն», ըսելով. «Հաւանեաց և երդուիր ինձ յօրէնս քո, զի մի՛ ստեսցես ինձ»։ Արշակունին թէեւ անյօժար, հարկադրեցաւ տալ անոր «ուխտ խաղաղութեան», որ ապահովեց զՇապուհ (Փաւս. Դ, ժզ, ժդ)։

Վարդանանք իրենց պատերազմին առթիւ կարօտ էին դրացի ազգաց ձեռնտուութեան. ուստի դիմեցին փոքր Թէոդոսի օգնականութեան, յիշեցնելով Յունաց հետ հին դաշինք մը։ Անոնք բանալով իրենց յիշատակարանները, «զնոյն ուխտ հաստատութեան ի ներքս գտանէին», կ'ըսէ Եղիշէ (Գ)։ Աստի իբր դար մը յառաջ՝ Տիրանայ գերութեան առթիւ ալ Հայք դիմած էին Յունաց օգնութիւնը խնդրելու, «զուխտն յիշեալ զդաշանցն կռելոց զերդմանցն հաստատութեան, միջնորդութեամբ ի մէջ կայսեր Կոստանդիանոսի և ի մէջ թագաւորին Տրդատայ» (Փաւս. Գ. իա)։

Հոնաց նիզակակցութիւնն ալ խնդրեցին Վարդանանք, որոնք յօժարութեամբ փութացին «երդմամբ յուխտ մտանել». փոխարէն «յանձն առին և զերդումն քրիստոնէից» (Եղշ. անդ)։ Մեծ ճակատամարտին չկրցան գալ. սակայն յետոյ երբ Հայք յիշեցուցին անոնց «զուխտն՝ զոր եդեալ էր ընդ Հայս և անսուտ երդմամբ հաստատեալ», յարձակեցան Պարսից սահմանները և աւերեցին ի նպաստ մեզ (նոյն, Է)։

Ապստամբութեան ճգնաժամին մէջ՝ երբ

Աղուանից ազատք, որ ի Պարսկաստան — գուցէ և ուրիշ անգամ — կնքուած երդմամբ «ուխտակիցք էին Հայոց», գուժեցին Պարսից գալուստն իրենց վրայ և չարիքները, Վարդան գնդով մը գնաց հասաւ անոնց օգնութեան, այսպէս յարգելով իր տուած երդումը (Փրպ. ԼԳ. Եղիշ. Գ)։

Աշոտ պատրիկ բագրատունի՝ բռնադատուեցաւ նախարարներէն՝ յարձակիլ և հալածել Հայաստանէն հարստահարող օտար տարրերը։ Վստահութեան փորձ մ'ուզեց նա. ուստի նախ «դնէին դաշինս ուխտի առ միմեանս՝... աննենգ պահել զսէր միաբանութեանն», և ապա ձեռնարկեցին իրենց նպատակին (Ղեւոնդ, ԻԶ)։

5. – Հաւատարմութիւն։ — Օրինաւոր էր՝ զինուց փոթորկէն յետոյ՝ երդմամբ ապահովել իրարու միտք ապագայ չփոթութեանց դէմ։ — Աբաս սպարապետ, Սմբատ բագրատունւոյ հօրեղբայրը, ձերբակալեց ու բանտեց Վրաց իշխանն Ատրներսեհ. յետոյ Գէորգ կաթողիկոսի միջնորդութեամբ ու գրաւականով խոստացաւ արձակել, փոխարէն «երդման՝» զոր տուաւ, և սակայն չպահեց (ՅՀ. կթղ. Լ)։

Աշոտ արծրունի բռնեց իւր հօրաքեռորդին ու թշնամին Հասանը։ Անոր կեանքը վտանգի մէջ էր. միջամտեց Յովհաննէս հայրապետ. և Աշոտ փրկանք ստացաւ բանտարկելոյն ամրոցը Սեւանայ մէջ, « սաստիկ երդմանց » ապահովութեամբ չվնասելու անոր (նոյն, ԼԸ)։

Աշոտ Երկաթ և աները Սահակ իշխան Գարդմանայ՝ բանսարկուաց թելադրութեամբ գրգռուած՝ ճակատեցան իրարու դէմ։ Դեռ չբաղխած, նախարարք յորդորներով խափանեցին եղբայրասպան կռիւը. և հակառակորդք «դաշինս հաստատեն խաղաղութեան», տալով իրարու «բազում ուխտ երդմանց» (նոյն, Կ)։

Անտիոքացիք նախատեր էին զԳորգ անեցին՝ կտրելով մօրուքը. նա աղոր վրէժը լուծելու համար, հինգ հարիւր թուրք զինուոր առած՝ յանկարծակի յարձակեցաւ կտրեց անոնցմէ շատերը։ Յետոյ «երդուեալ նոցա» այլ եւս չվնասել, «արարին խաղաղութիւն » և դարձան իրենց տեղերը (Ուռհ. ճԺԳ)։

6. — Հպատակութիւն։ — Ստորակարգեալք առ իշխանս — լինէին աշխարհական թէ եկեղեցական — ունեցած իրենց

անկեղծ հլութիւնը կարող էին ցուցնել երդմամբ, եթէ պահանջուէր կամ կարեւոր համարուէր այն։ — Վեր կ'ելնենք մինչեւ Դ դար, և կը փոխադրուինք Ձիրաւայ դաշտը, ուր Հայոց բանակը Մուշեղայ հրամանատարութեամբ պատրաստ է զարնուելու Պարսից հետ։ Հոն են նաեւ Ս. Ներսէս և արքայն։ Կարճամիտն Պապ կասկածոտ սպարապետին հաւատարմութեան վրայ, խնդրեց հայրապետէն՝ թէ «Նախ երդումն տուր[1]... զի մեզ մի՛ ստեսցէ»։ Վշտացաւ քաջը. բայց փութաց հանդարտեցնել Արշակունւոյն խանգարուած ուղեղը, և «երդնոյր» թէ կաթողիկոսին և թէ թագաւորին (Փաւս. Ե, դ)։

Վեստ Սարգիս և Հայոց իշխանք խորհեցան մատնել Բագրատունեաց ոստանն Յունաց ձեռքը. և հայրապետին հետ միասին կեղծաւորութեամբ կը յորդորէին ըզԳագիկ՝ ընդունել կայսեր հրաւէրն ի Կոստանդնուպոլիս։ Երբ նա կը վարանէր,

1. Հին հայերէնի մէջ այդ բացատրութիւնը չի նշանակեր՝ ինք երդնուլ, այլ տալ երդնուլ, ինչպէս և Շապուհ «տայր երդումն» Արշակայ, և Տիգրոնի երիցունք «ետուն նմա զերդումն» (Փաւս. Դ. ժզ, ծդ). «քեզ երդումն տուեալ», կ'ըսէր Յազկերտ Դենշապհոյ (Եղիշ. Ը). և նոյն ձեւը կը գործածէ միշտ Մխ. Գոշ (51–55)։

վստահացնելու համար զինքը՝ երդուան թէ վտանգի պահուն պատրաստ են տալ իրենց կեանքը թագաւորին համար։ Եւ այդ դաւաճան երդումը պատճառ եղաւ մեր երկրորդ հարստութեան բարձմանը (Ուռհ. կե)։

Պետրոս Գետադարձ տաղտկացած հայ ազատանւոյն անկարգ ընթացքէն, գնաց առանձնացաւ ի Վասպուրական։ Յետ չորս տարւոյ՝ Յովհաննէս թագաւորն և իշխանք միաբան «Թուղթ» մը գրեցին անոր, որով կը խնդրէին վերադառնալ իւր աթոռը, խոստանալով «լինել ունկնդիր ամենայն հրամանաց նորա»։ Եւ որպէս զի համոզիչ լինէր իրենց խոստումը, «գրեցին զայս հանդերձ մեծամեծ երդմամբ», որով և հասան իրենց նպատակին (Նոյն, խթ)։

7. – *Օծումն արքայական*։ — Ազգային և քաղաքական ամենէն շքեղ առիթն էր այս՝ երդման համար, զոր կու տար ազգը իւր նորընտիր պսակաւորին։ Չեմ հանդիպած և չգիտեմ՝ թէ արդեօք Արշակունեաց օրով կա՞ր այս սովորութիւնը։ Ընդ հակառակն գտած եմ յիշատակութիւն յաջորդ երկու թագաւորութեանց շրջաններէն։

Բագրատունեաց վերջին պայազատը Գագիկ կը պսակուէր յԱնի՝ Պետրոս Գետադարձի ձեռամբ և ի ներկայութեան հայ իշխանաց ու զօրաց։ Յետ արարողութեան՝ հայրապետն և աւագանին իրենց հաւատարմութեան երդումը տուին թագաւորին. «Երդմունս արարեալ ուխտից՝ միամտութեամբ ծառայել նմա» (Կիրակ. 52). — խոստում մը զոր սակայն շատ շուտով պիտի մոռնային։ — Այս օրինակը բնականապէս կ'ենթադրէ ուրիշներ ալ, այսինքն տիրող սովորութիւնը Գագկայ նախորդաց ժամանակ, թէեւ յայտնապէս յիշուած չգտնենք պատմչաց քով։

Ռուբինեանց գահակալութեան առթիւ տրուած երդման հանդիպած եմ նոյն ինքն անոնց թագաւորօրհնէից կանոնին մէջ։ Այստեղ սակայն երդմնողաց դէմքերը փոխուած են։ Արեւմուտքը, այդ արարողութեան հետ՝ զոր ի՛նք տուած էր մեզ Լամբրոնացւոյն թարգմանութեամբ, ներշընչեր էր Հայոց համար նոր այս արեւմտեան գաղափարն ալ՝ թէ թագաւո՛րը պարտէր երդնուլ՝ պահպանելու ազգին օրէնքն ու իրաւունքը, հակառակ Բագրատունեաց սովորութեան՝ որ տիրապետական հին ձե-

ւով՝ ազգէ՛ն կը պահանջէր ծառայական հպատակութեան ուխտ: «Կաթողիկոսն, կ'ըսուի հոն, տայ երդնուլ ընտրելոյն՝ ի վերայ սովորական իրաւանց»: Այս կը լինէր արարողութեան սկիզբը. և այսպէս իւր հաւատարմութեան ապահովութիւնը տալէ վերջ միայն կ'ընդունէր օծումն ու թագը:

## Բ. ԵՐԴՄՆՈՂՔ [1]

Պատշաճ կը համարիմ ասոնց մէջ բաժանում մը ընել՝ նախ ըստ հոգեկան հանգամանաց, որ է կրօնքը. երկրորդ՝ ըստ անձնականին, որ է հասակն ու վիճակը: Նկատենք զասոնք առանձնաբար:

1. — *Խառն երդմնողք:* — Այսպէս կոչենք տարբեր կրօնից պատկանողները: Այս պարագային իւրաքանչիւր կողմ կ'երդնուր իւր օրինաց գծած ձևով: Ոչ միայն՝ որովհետև պարտաւորիչ էր այդ ի կրօնից, այլ զի հակառակ կողմանք ալ նախամեծար կը համարէին զայդ՝ իբրև աւելի

1. Այդ բառը Մխիթար Գոշի է (55):

վստահելի։ Այսպէս Շապուհ ստիպեց զԱրշակ երդնուլ «Աւետարանին» վրայ (Փաւս. Դ, ժզ)։ Մեր թագաւորն ալ Շապհոյ կոչին երթալու համար՝ իւրմէ պահանջեց՝ վարագապատկեր մատանեաւ կնքուած «աղ», որ ըստ պատմչին՝ Պարսից արքայից տուած հաւատարմական երդման յատուկ ձեւն էր[1] (անդ, Դ, ծզ)։ — Հոնք ևս Հայերէն ընդունեցան «զերդումն քրիստոնէից», և փոխանակեցին զայն «ըստ կարգի իւրեանց օրինաց» (Եղիշ. Գ), որոյ ձեւը դժբախտաբար անծանօթ է։ — Նոյնը եղաւ միշտ մահմետականաց հետ յարաբերութեանց մէջ եւս։

2. — *Քրիստոնեայ երդմնողք*։ — Մխիթար Գոշ ասոնց մասին զանազան կարգադրութիւններ կը սահմանէ կամ կ'աւանդէ՝ որոց հետքը չենք գտներ հայ հնութեան մէջ։ Իւր նման իրաւագէտ մը

1. «Ուխտ աղի» ծանօթ էր Հրէից ևս (Բ Մնաց. ԺԳ, 5)։ — Աղը իւր համեմիչ բնութեան պատճառաւ խորհրդանշան համարուած էր բարեկամութեան և սիրոյ. ասկից էր սովորութիւնն ալ «աղ և հաց» ընծայելու իշխանաւորաց՝ երբ այցելութեան երթային, ինչպէս կը լինէր Յունաց, Պարսից և Հայոց մէջ. Դենշապուհ կ'ըսէր Ղեւոնդեանց՝ թէ «իմ զի աղ և հաց կերեալ է յաշխարհին ձերում, զութ և սէր ունիմ առ աշխարհն» (Եղիշ. Ը)։

պէտք էր՝ որ գրէր և մեզ հասցնէր։ Հազիւ մէկ՝ երկու ակնարկութեան հանդիպած եմ, որոց մին կը պատկանի հասակին։ Այսպէս Արտաշատու աշխարհախումբ երդման կը մասնակցին «ի մեծամեծաց մինչեւ ցփոքունս» (Եղիշ. Բ), ուր սակայն յայտնի չէ, հասակա՞ւ փոքրեր էին թէ աստիճանաւ։ Յետոյ՝ դատաստանական երդում մը չէր այդ, որպէս զի երդմնողին անձնական հանգամանքներն հաշուի առնէին. այլ հաւատոց համագումար ուխտ մը՝ յորում խտրութիւն չէր մտներ հասակի։

Կ՚ամփոփեմ հոս Մխիթարայ տեսութիւնքը։ — Երդում տալու համար հարկ է քսանեւհինգ տարեկանէն վար չլինել. զի տղայք անկարող են ըմբռնել անոր ոյժը։ — Ծերունիք և հիւանդք պէտք չէ երդնուն. գուցէ չապաշխարած մեռնին։ — Եւ ոչ ապաշխարողք, որպէս զի մեղք մեղաց վրայ չյաւելուն ։ — Կ՚արգելու զայն նաեւ կանանց՝ երբ հաւատաւոր են, կամ ապաշխարող, կամ անպարկեշտ, կամ տղայ, կամ պառաւ, կամ ծնանելու մօտ. արգելք մը՝ որ կը հիմնուի մի և նոյն պատճառաց վրայ։ — Մաքսաւորք, ար-

բեցողք և մեղաւորք՝ ցորչափ կը մնան այդ-պիսիք, անընդունակ են երդման գործոյն՝ ապաշխարողաց համար տրուած պատճառաւ։ — Իսկ բոլոր ադոնց փոխարէն կարող են երդնուլ իրենց մերձաւոր ազգականք կամ բարեկամք։ Այն փոխանակութիւնը կը պատուիրէ նաև կրօնաւորաց ու քահանայից համար, որոց վիճակը չի ներեր երդնուլ. ազգականք երթան յատեան, որպէս զի երդումն ալ անոնք տան՝ երբ պահանջուի ։ Միայն կրնան իբր վկայ ընդունուիլ (55–56)։

Մանդակունւոյն օրով երդմնելու իրաւունքը չարախօսին էր, որով պիտի հաստատէր իւր ամբաստանութեան ստուգութիւնը. «Դատախազն, կ՚ըսէ, դատախազէ և երդնու» (114)։ Ընդ հակառակն Մխիթար տարբերութիւն մը կը դնէ։ Սովորական յանցանաց համար պարտաւոր է երդնուլ ամբաստանեալը. և այս իրաւունքը կ՚անցնի ամբաստանողին՝ եթէ իբր ճըշմարտախօս մարդ ճանչուած է։ — Իսկ քրէական դատաստանաց մէջ երդմնողը պիտի ըլնի դատախազը. ապա թէ յանցաւորն ուժգին բողոքէ իւր անմեղութիւնը, և ատենին համոզիչ թուի, վերջինը պիտի երդնու (53–54)։

Այնու որ Մխիթարայ Դատաստանագիրքը գործածութեան մտած է, ինչպէս կ'ապացուցանէ հրատարակիչը Վ. Վ. Բաստամեանց՝ իւր յառաջաբանութեան մէջ, կրնանք հետեւցնել՝ թէ վերոյիշեալ սահմանք լոկ մեռեալ տառ չմնացին։

## Գ. ՏԵՂԻՔ ԵՐԴՄԱՆ

Նախնիք կը ջանային՝ ուր որ հնար էր՝ կատարել տալ երդումն այնպիսի վայրերու մէջ՝ որ առանձին կարեւորութիւն մ'ունէին կրօնապէս կամ քաղաքականապէս։ Անոնց մէջ ներկայութիւնը՝ պատկառանք մը կ'ազդէր երդմնողաց վրայ, որով անոնք լաւագոյնս կը զգային կատարելի գործոյն ծանրութիւնը, և առ այն պահանջուած պատրաստութեամբ մը կը մատչէին անոր։ Այդ տեղեաց առաջինն էր՝

1. — *Եկեղեցին։* — Այնու որ երդումը կրօնական գործ համարուած էր թէ հեթանոսութենէն և թէ քրիստոնէութենէն, և կապուած սրբութեանց հետ (տես, Դ), նախկին դարերուն պատշաճօրէն կը կատարուէր սովորաբար տաճարին մէջ։ Ա֊

սոր առաջին՝ ինչպէս և երիցագոյն վկայութիւնը գտած եմ Մանդակունւոյն քով։ Սա յետ նկարագրելու Հայոց աներկիւղ երդմնահարութիւնը, կը յաւելու՝ թէ երբ օրինական երդման կը կոչուէին սրբավայրին մէջ, կ՚ամփոփուէին և զգաստութեամբ մը ներս կը մտնէին. «Եւ յորժամ յեկեղեցին երթան մտանել ի՛ ներքս ի յերդնուլ, զարթնու իմն և խորհի. ընդէ՞ր. զի յերդումն երթամ՝ ասէ» (113)։ Հայրապետս կը հաստատէ մի և նոյն պարագայն՝ երբ այլուր կը խրատէ առիթ չտալ աղօթավայրին մէջ կատարելի այդ երդմանց. «Ոչ նեղել զոք և զրկել, և ոչ հակառակութեամբ երդմունս ստանայականս յեկեղեցի Աստուծոյ մուծանել» (116)։ Արդէն տեսանք մեք՝ (աստ, Ա. 1) թէ այս վկայութիւնը կ՚ակնարկէ կենցաղական խնդրոց, որոնք յետ քննուելու արտաքին ատենի առջեւ, իրենց վերջին լուծումը կը ստանային երդմամբ՝ տաճարին նուիրական որմոց ներքեւ։

Գագկայ օծումն՝ որով և անոր հպատակութեան երդումն ալ կատարուեցաւ «առ դրունս մեծափառ կաթուղիկէին Անւոյ» (Կիր. 52)։ — Նմանապէս Ռուբինեանցը

կը կատարուէր՝ յետ հանդիսական թափօրով գնալու «ի տաճարն սուրբ»․ և այդ պահուն «ի մէջ եկեղեցւոյն դադարեն՝» երդումը տալու համար միայն, յետ որոյ բեմը կ'ելնէին։

Հայոց Նամակն առ Միհրներսեհ և երդումն, որ կատարուեցաւ Արտաշատու մէջ համախմբութեամբ եպիսկոպոսաց և նախարարաց, և որ կը ներկայացնէր տեսակ մը եկեղեցական ժողով, այս եւս հաւանօրէն եկեղեցւոյ մէջ էր։

2․ – Ատեանն։ — ԺԲ դարուն կամ Գոշի օրով եկեղեցին դադարած էր երդման միակ վայր ըլլալէ, և փոխուած երդման նիւթի (տես, Դ, 8)։ Ընդ հակառակն դատաստանական երդումը, հաւանօրէն արաբական տիրապետութեան ազդեցութեան ներքեւ, փոխադրուած էր «ի հրապարակ», – ինչպէս կ'անուանեն զատեանը ոմանք ի նախնեաց, և յատկապէս Շահապիվանու ժողովը (կան․ Ի) և Մխիթար։ – Սա իսկ կը հաստատէ այդ փոփոխութիւնը, երբ կ'ըսէ․ «Ոչ է պարտ ի հրապարակին վայրապար երդնուլ՝ մինչ չեւ դատաւորն վճռով հրամայիցէ» (Նխդր․ Զ, 35), և կամ՝ «յորժամ գայցեն ի տեղի դատաստանին և դա-

տաւորն հրամայիցէ վասն իրաւանց դատաստանին երդնուլ» (անդ, Ը, 46)։

Բայց դատաւորն ալ իր կարգին պիտի ջանար «առանց երդման» տեսնել դատը՝ եթէ հնար էր, և հակառակ պարագային միայն դիմել այդ միջոցին (անդ, 52)։ Կ՚արգելու նաև Մխիթար երդնուլ թեթեւ խնդրոց համար, զոր օրինակ տասն դահեկանի. և եթէ պահանջողը պնդէ, դատաւորը պարտի պահանջին կէսը հատուցանել տալ ամբաստանելոյն. իսկ երբ յանձն չառնու աղքատութիւն պատճառելով, դատաւորը կարէ թոյլատրել երդումը, և կամ ժամանակ շնորհել վճռող կողմանց իրաւախոհութեան գալու (53)։

3. – Պատահականք։ — Յաճախ նաև կը հանդիպէր երդնուլ՝ ուր որ դէպքը և կամ պէտքը պահանջէր. այսինքն առանց որ և է խտրութեան տեղւոյ։ Զոր օրինակ՝ Արշակ հիւր էր Շապհոյ և կէս մը կալանաւոր. ուրեմն պարտաւոր էր երդնուլ սրբութեանց մէջ և անոր առջեւ (Փաւս. Դ, ժզ)։ — Մուշեղէ երդում պահանջուեցաւ Նպատ լերան վրայ՝ ուր կային արքայն ու կաթողիկոսը. ուրեմն կը մնար հոն իսկ տալ զայն (Նոյն, Ե, դ)։ —

Վարդանանք և ուխտակիցք հարկադրուած էին զատուիլ իրարմէ «ի ճանապարհին» Պարսկաստանի, որով և հոն ալ երդնուլ (Փրպ. ԻԸ)։ — Երկրորդ երդումը կնքեցին մարզպանին տան մէջ, ուր «մտին թափ՝» ստիպելու համար զինքն ապստամբութեան, և ուր ժամանակ չկար դանդաղելու (Նոյն, ԼԲ)։ — Հոնաց նիզակակցութեան երդումը տուին անոնց պահակին մէջ, ուր մղած էր զիրենք զինուց պէտքը (Եղիշ. Գ)։ — Աշոտ և Սահակ հաշտութեան ուխտը կնքեցին մարտի ճակատին մէջ, ուր երկու բանակները պիտի զատուէին իրարմէ այդ պայմանաւ (Յհ. կթղ. Կ)։ Բոլոր այդ երդմունք օրինաւոր էին արտաքոյ կանոնական տեղւոյ, երբ միւս կրօնական ձեւակերպութիւնք կը գործադրուէին անթերի։

*

### Դ. ՍՐԲՈՒԹԻՒՆՔ

Նախնեաց այս բառով կ'ուզեմ կոչել այն սրբազան իրերը՝ որոց վրայ կը կատարուէր երդումը։ Կրօնից նուիրագործած նիւթոց մէջ աստուածեղէն ծածուկ զօրութիւն մը

ղրած է քրիստոնէութիւնը, ինչպէս ուրիշ ամէն կրօններ ալ։ Անոնց ներկայութիւնը երդման՝ կը նշանակէր ներկայութիւնն այդ զօրութեան գերագոյն Աղբեր։ Վկայ ունենալով զանոնք, երդմնողք կը զգային՝ թէ որո՛յ առջեւ կ'երդնուն. անոր որ կը տեսնէ սրտին գաղտնիքները եւ կը պատժէ ճշմարտութենէ հեռացողները։ Հետեւաբար այդ սրբութիւնք լաւագոյն գրաւականները կը համարուէին երդման ճշդութեանը։ Ասոնք են.

1. — *Աջ Հայրապետի եւ Արքայի*։ — Դրած վերնագիրս նուազ կը համաձայնի ասոնց. բայց հարկ է մեզ նախ զայս տեսնել անոր համար՝ որ թէ ժամանակաւ եւ թէ յիշատակութեամբ հնագոյնն են երդման ուրիշ ենթակայից։ Կը հանդիպինք իրենց Մուշեղայ ծանօթ երդման պարագային մէջ։ Նոյն ինքն Պապ էր՝ որ առաջարկեց հայրապետին երդմնեցնել սպարապետն իւր աջ ձեռին վրայ. «Նախ երդումն տուր յԱջ քո»։ Եւ Մուշեղ մօտեցաւ բռնեց զայն, «բուռն հարկանէր զԱջոյ եպիսկոպոսապետին», եւ այնպէս երդուաւ։ Նոյն գործողութիւնը կատարեց ապա արքային աջոյն վրայ եւս. «սոյնպէս եւ ի (Աջ) թա-

*գաւորին Պապայ ձեռն արկանէր՝ երդնոյր»,
կ'ըսէ պատմիչը* (*Փաւս*. Ե, դ)։

*Այս ձեւին իմաստն յայտնի է. հայրապետն աջով կը ձեռնադրէր, անով կը կրէր հովուական գաւազանը և անով կ'օրհնէր ժողովուրդը։ Իսկ թագաւորն աջով կու տար իր հրամանները և անով կը բռնէր աշխարհավար սուսերը։ Պարզ ըսենք, աջն էր հայրապետական կամ արքայական իշխանութեան խորհրդանշանը. և երդումն աջոյն վրայ՝ երդնուլ էր անոնց իշխանութեան վրայ։*

*Այս սովորութեան ծագումը կ'ախորժիմ հեթանոսութեան մէջ դնել՝ երկու փաստերով։ Նախ՝ զի հայ հեթանոսութեան շատ մօտիկը կը գտնենք զայն, և յետոյ այլ եւս չի տեսնուիր։ — Երկրորդ՝ զի անոր հանդիպած եմ օտարաց քով եւս. զոր օրինակ՝ Սալուստիոս կը պատմէ, թէ Նումիդիոյ թագաւորը Միկիփսա՝ իր որդւոյն նոյն այդ ձեւով երդնուլ տուաւ. «Կ'երդմնեցնեմ զքեզ աջոյս և թագաւորութեանս վրայ*[1]*»* (*Պորզ.*

1. *Հրէից մէջ ալ երբեմն յիշուած է նոյնը. բայց ոչ սովորական, այլ Աստուծոյ համար ըսուած. «Երդուայց յաջ իմ»* (Բ Օր. ԺԲ. 40). *կամ «Երդուաւ Տէր զօրութեանց ի բազուկ իւր»* (Երեմ. ԾԱ, 14). *և որ ոչ մի դեր չէ կարող ունեցած լինել մեր սովորութեան մէջ։*

Բուզ. ժ). ուր առաջինն յայտնապէս կը նշանակէ զերկրորդը։

2. — Աշտիշատ։ — Այս է հնութեան և կարեւորութեան կարգաւ երդման յատուկ առաջին սրբութիւնը. և նոյն իսկ ժամանակակից ալ է նախորդին հետ մեր քրիստոնէութեան առաջին շրջանին մէջ։ Այնքան մեծ էր անոր նշանակութիւնը՝ ոչ միայն յաչս քրիստոնէից, այլ և հեթանոսաց, որ անոր վրայ հաստատուած երդումը բացարձակ վստահութիւն կը վայելէր։ Շապուհ՝ Արշակայ երդումը պապանջեց «ի գլխաւորութիւն այնմ՝ զոր Աշտիշատն կոչեն... որ է գլխաւորութիւն ուսմանց նոցա քրիստոնէութեանն», ինչպէս ինք կ'ըսէր (Փաւս. Դ, ծդ). ուստի «բերին զԱշտիշատն սուրբ», և Շապուհ տուաւ «երդնուլ յաստուածեան Աշտիշատն» (անդ, Դ, ժգ)։

Անոր ասպարէզը շատ աւելի ընդարձակ է Վարդանանց պատերազմի ժամանակ, և ակներեւ մինչեւ վերջին դարերը։ Վասակ որսալու համար Վարդանանց համակիրները, «սուրբ Աշտիշատեան» սուտ երդումներ կը յղէր ամէն կողմ, իբր թէ Յազկերտ թոյլ կու տար քրիստոնէութիւնը

(Եղիշ. Դ)։ Նոյնպէս յետ մեծ ճակատամարտին՝ ձերբակալելու համար փախըստականները, «յերդմունս ապաստան եղեալ՝» երկու երեք անգամ «ետուն տանել զԱւետարանն» (Նոյն, Է)։ — Վահանեանք «բերեալ սուրբ Աւետարան», անոր վրայ հիմնեցին իրենց հաւատարմութեան ուխտը (Փրպ. ԿԶ)։ — Շնորհալւոյն օրով դեռ կ՚ երդնուն «յԱւետարանն սուրբ» (Ընդհ. 192), կամ «յԱւետարան» ըստ Գոշի (51–52), ծանօթ նաեւ Մործորեցւոյն և Գր. Տաթեւացւոյն (հտ. ձմր. 16)։

3. — Աւետարան ուխտին կամ երդման։ — Պատմական յատուկ կոչումն է սա այն չքնաղ հատորին՝ որ վկայ հանդիսացաւ Աւարայրի քաջազանց անկեղծ և ջերմեռանդն զգացմանց, և որ չի կրնար վրիպիլ մեր ուշադրութենէն։ Առաջին անգամ այդ անուամբ մկրտեցաւ այն Տիզբոնի մէջ. «զսուրբ Աւետարան ուխտին» (Փրպ. ԻԷ). այսինքն այն երդման՝ զոր նախարարք տուին հոն իրարու (աստ, Ա, 3)։ Այդ մատեանն այնուհետեւ անոնց հետ և անոնց ետեւէն կը շրջի միշտ։ — Վարդան երբ լքած իւր հայրենակցաց երկդիմի ընթացքէն, կը փորձէր փախչիլ ի Յու-

նաստան, իշխանք հասուցին անոր ետեւէն «զկնքեալ Աւետարանն ուխտին» կամ «զԱւետարանն երդման», զոր դեսպանք բռնած՝ այնպէս և անոր անուամբ կը խօսէին. «ունէին առաջի երանելւոյն Վարդանայ և եղբարց նորա» (Փրպ. Լ)։ — Ապստամբութեան սկիզբը բոլոր բանակն իւր առջեւ ունի «զԱւետարան ուխտին սրբոյ», և անոր վրայ կը կրկնէ իւր հին երդումը (անդ, ԼԲ), և միանգամայն կ՚ աղօթեն հաստատուն մնալ «յուխտի սուրբ Աւետարանին» (Եղիշ. Գ)։ Վերջապէս այն է հասարակաց միութեան զօդն և առաջնորդ ամէն տեղ։ — Ո՞վ գիտէ՝ ո՞ւր գնաց ծածկուեցաւ արդ մեծ յիշատակը մեր տոհմային պատմութեան մեծագոյն անցքին։ Գուցէ թաղուեցաւ Արտազու փոշիներուն մէջ՝ հայ քաջաց նուիրական ոսկերաց քով, ննջելու յաւիտենական քունը։

4. — Աւետարանի զօրութիւնը։ — Նկատելի շատ կարեւոր կէտ մ՚է այս՝ ճանաչելու համար հին հայ ժողովրդեան հոգեբանութիւնը։ Վարդան վերոյիշեալ փախըստեան դիպուածին մէջ անոր գեղեցիկ մէկ օրինակը կու տայ։ Դեսպանաց առջեւ

թափեց սրտին դառնութիւնը Հայոց յեղ-յեղուկ նենգամտութեան դէմ, յայտնելով՝ թէ ոչ ի շնորհս եկողաց, այլ երկնքէն իջնող Աւետարանի հրաւիրին հնազանդելու համար կը դառնար. «Բայց սուրբ և երկնաւոր հրաւիրակիդ Աւետարանի՝ ոչ կացեալ ոք է ընդդէմ ի մեր ազգէս (Մամիկոնեանց), և ոչ մեք կամք. քա՛ւ լիցի»։ Եւ թողուց՝ որ անոնց սիրտը կարդայ «սուրբ Աւետարանդ՝ որ ճանաչէ զամենայն և դատի ըստ իւրաքանչիւր գործոցն» (Փրպ. Լ)։

Ուրացեալն Վասակ դուրս տուաւ սրտին մութ գոյնը և ձերբակալուեցաւ ուխտապահներէն. առիթն էր քարկոծելու զայն, ինչպէս ըրին ուրիշ իրեն նմանող մը։ Նա սակայն գիտէր՝ թէ ո՛ւր ապաւինելու էր. վերստին երդուաւ «ի սուրբ Աւետարանն»։ Ի՞նչ ընէին անոնք։ Թէեւ «հաստատեալ գիտէին՝» կ՚ըսէ Եղիշէ՝ անոր կեղծաւորութիւնը, սակայն և այնպէս ներեցին, և «սուրբ Աւետարանին թողին ի դատապարտութիւն» (յեղ. Գ)։ — Պատերազմէն վերջ Հայոց սրտին մէջ վստահութեան ի՞նչ կայծ կընար մնալ դեռ հանդէպ մատնչին։ Եւ սակայն երբ նա

Աւետարանը կը յղէր փախստէից, անբացատրելի ծածուկ ոյժ մը կը մղէր քահանայքը բերդերէն վար, և «յանձն առնուլն զիջանելն», մինչ զգուշաւոր զօրականք անյողդողդ կը մնան (Եղիշ. Է)։ — Նոյնը պատահեցաւ նաեւ Կապոյտ լերան ամրոցին առջեւ, ուր «վասն երդմանցն հարկ եղեւ քահանայի մի իջանել առ նոսա», որ և իսկոյն գերի տարուեցաւ (անդ)։

Մի և նոյն հոգին կը տեսնենք Վահանեանց վրայ եւս։ Վախտանգ՝ Վրաց թագաւորը, զինակից իրենց և Պարսից գաղտնի կուսակից, կը խաբխաբէր զանոնք։ Իսկ Հայոց գունդը՝ «վասն զի ուխտադիր էր» անոր հետ, «զոր ինչ միանգամ ասէր ստոյգ կամ սուտ», կամաւ և գիտութեամբ «ջանային վասն Աւետարանին երկիւղի զամենայն կատարել» (Փրպ. ՀԳ)։ ցորչափ յայտնապէս չէր անջատուած իրենցմէ, ստիպուած էին յարգել իրենց երդումը։

Ի՞նչպէս մեկնել այս երևոյթը. փորձենք։ Հայ ազգը մէկ ու կէս դարէ ի վեր քրիստոնեայ, դեռ նոր հասկացեր էր քրիստոնէութիւնը. դեռ նոր ծանօթացեր էր Աւետարանին, որ մինչեւ այն ժամանակ

օտար լեզուաց վարագուրին ետեւ ծած֊
կուած, հանեց յանձնեց զայն անոր Ս.
Մեսրոպ տոհմային լեզուաւ։ Կախարդիչ
էր անոր նախընծայ հրապոյրը՝ զոր աւելի
կ'արծարծէին մեծ վարդապետին հոգելից
աշակերտները, որոնք կ'ապրէին տակա֊
ւին իրենց մէջ և կ'առաջնորդէին իրենց։
Հայ ազնուականութիւնը լափեր էր Ս.
Գիրքը հայացած օրէն. Վարդան «տեղեակ
էր ի մանկութենէ իւրմէ սուրբ Կտակա֊
րանաց», զոր Աւարայրի մէջ անգամ բա֊
ցած՝ կը կարդար ի լուր իւր բանակին
(Եղիշ. Ե)։ Ս. Ղեւոնդ չէր վարաներ ըսե֊
լու զօրականին՝ թէ դուք «քան զիս տե֊
ղեկագոյն և հմուտք էք սուրբ Կտակա֊
րանացն» (անդ)։ Այդ «աստուածաշունչ»
մատեանին քաղցր հմայքը թափանցեր էր
մինչեւ անոնց ոսկերաց մէջ, գերած ա֊
նոնց միտքը, և մանկան մը հլութիւնն ու
վստահութիւնը դրած էր անոնց սրտին
մէջ, մանաւանդ հանդէպ Աւետարանին՝
որ աւելի բարձր է քան միւս ս. գրեանքը.
զոր իրենց «հայր» կը դաւանին (անդ, Գ).
որ իբրեւ բանաւոր էակ մը՝ կը ճանաչէ,
կը դատի ու կը դատապարտէ. որմէ օտա֊
րացումը չեն համարձակիր պատժել ան֊

ձամբ, և որոյ վրայ հիմնուած երդման չեն ուզեր առաջին լուծողը լինել՝ երբ արդարացի փաստեր ունին նենգամիտ ուխտադրուժներէ։

5. – Խաչ։ — Երկրորդ ենթական էր երդման, և ժամանակաւ ոչ կրտսեր քան աւետարանը ։ Մանդակունւոյն քով իսկ տեսանք՝ թէ ի՛նչպէս իւր ժամանակակիցք կ՚երդնուին նաեւ «ի սուրբ խաչն Քրիստոսի» (118)։ — Աշոտ Բագրատունւոյ և նիզակակցաց երդումը նմանապէս կատարուեցաւ «միջնորդութեամբ տէրունեան նշանին» (Ղեւոնդ, ԻՁ). և Աշոտ Երկաթին Սահակայ հետ՝ «միջնորդութեամբ սրբոյ նշանի խաչին» (Յհ. կթղ. Կ)։ — Հաւասարապէս ծանօթ է «ի խաչ» երդումը՝ Շնորհալւոյն (Ընդհր. 192), Մխիթար Գոշի (51–52) և Տաթեւացւոյն ալ (Հտ. ձմր. 16)։

Դիտելի է՝ որ այդ օրինակաց մէջ կը ներկայանայ խաչը միայնակ։ Յետոյ՝ չէ ունեցած Աւետարանի ընդարձակ գործածութիւնը. և աւելի յաճախեալ էր միջին դարուն քան յառաջ, եթէ հաստատուինք մեր ունեցած վկայութեանց վրայ։

6. — **Աւետարան և Խաչ։** — Պակաս չեն նաեւ երկու սրբութեանց միասին գործածութեան փաստեր։ Կը պատմէ Եղիշէ՝ թէ Վասակ իւր խաբերայ երդմանց վկայ կը ղրկէր նաեւ «Աւետարան հանդերձ խաչիւ» (յեղ. Գ)։ Իսկ Փարպեցին՝ թէ Վահանեանց ու Վախտանգայ կնքած ուխտն էր «Աւետարանաւ և Խաչիւ» միանգամայն (ՀԳ)։ Աւելի ուշ՝ Գորգ անեցին Անտիոքացւոց հետ իւր հաշտական երդումը վաւերացուց նոյնպէս «Խաչով և Աւետարանով[1]» (Ուռհ. ՃԻԳ)։ — Կը տեսնենք սակայն՝ որ այս ձեւը նախորդներէն շատ սակաւադէպ է, և աւելի երիցագոյն շրջանին սեպհական։

7. — **Անուանն Աստուծոյ։** — Թէեւ հին, բայց շատ նուազ նիւթ եղած է երդմանց։ Թերեւս իւր մեծութիւնը կը պատկառեցնէր Հայերը, և կը զգուշանային անկից։ Աւագագոյն աղբիւրներէն Մանդակունին է զայս յիշատակողը իւր հետագայ խօսքով, յորում միանգամայն կը պարզէ իմ ըսած

1. Ժամանակին Յունաց ախորժելի ձեւն էր այդ. Մոնոմախ մեր Գագկայ երդումը ղրկեց՝ «միջնորդութեամբ սրբոյ աւետարանին և սրբոյ նշանին Քրիստոսի» (Ուռհ. ԿԵ)։

միտքը. «Մի՛ վայրապար ընդ Աստուծոյ յուխտ մտցուք, և զսուրբ Անուանն Աստուծոյ ընդ երդմանն կապեսցուք» (116)։ Պատմական ծանօթ դիպուածոց մէջ ասոր օրինակին չենք հանդիպիր. նշան՝ թէ որքան հազուադէպ էր այս ձեւը Ե դարուն և յետոյ եւս, կամ աւելի զեղծման արդիւնք։ Ընդ հակառակն ԺԲ դարու մէջ աւելի սովորական և օրինական դարձած է, ինչպէս կը հետեւցնեմ Շնորհալւոյն զգուշացնելէն՝ մի՛ «յօժարութեամբ դիմել յերդմունս յԱնուանն Աստուծոյ» և այլ սըրբութեանց (192)։ Այս ալ տակաւին այլակրօնից հետ պատահած ծանրագոյն խնդրոց մէջ էր, երբ անոնք այդպէս կը պահանջէին. վասն զի Մխիթար Գոշ կ'արգելու «աւելի ինչ երդումն» քան միւս ծանօթ սրբութեանց վրայ (52)։

8. — Եկեղեցի։ — Երբեմն վայր երդման, ինչպէս տեսանք (Գ, 1), միջին դարուն փոխուած եղած էր նաեւ նիւթ[1]։

1. Մնալով միշտ վայր ալ, ինչպէս կը հետեւի Տաթեւացւոյն սա երդմնաձեւէն. «Գիտէ Տէր և այս խաչս և այս եկեղեցիս» (հտ. ձմր. 16). ուր երդումը կը կատարուի խաչին վրայ և եկեղեցւոյ մէջ. և որ մինչեւ ցարդ կը տեսնուի դեռ տեղ տեղ մեր ժողովըրդեան քով։

*կ՚ըսեմ միջին դարուն. որովհետեւ հինգերորդին անծանօթ է Մանդակունւոյն, որ այնքան խնամով կը թուէ երդման բոլոր ենթակայքը։ Արդ զայս առաջին յիշատակողն է նոյն Մխիթար Գոշ, երբ կը խօսի երդման իւր ժամանակի երրեակ սրբութեանց վրայ. «ի խաչ և յաւետարան և յեկեղեցի» (51). կամ «ի խաչ և յեկեղեցի և յաւետարան» (52). ուր տաճարին ճիշդ այն դերը կ՚ընծայէ՝ ինչ որ այլոց։ Հետեւաբար այն ոճով կ՚երդնուին ասոր վրայ, ինչ որ միւս երկուց. զի մի և նոյն հոլովն ունի, որ վրայ կը նշանակէ, և ոչ մէջ։ Բնական է. ո՞չ ապաքէն Աստուծոյ տունն ալ մեծ սրբութիւն մ՚էր հաւասար այլոց, և արժանի մի և նոյն պատուին։ — Այս կիտիս վերստին պիտի դառնանք ուրիշ փաստերով (տես. Ե, 3). և նոյնը կը զօրանայ յաջորդ օրինակով ալ։*

9. — Անւոյ հազար և մի եկեղեցին։ — *Բագրատունիք իրենց ոստանը պճնած էին չքնաղ դաստակերտնիրով, որոց մէջ առաջին տեղը կը բռնէին յոգնախուռն և գեղաշէն տաճարները, որոնք դարուց և ազգաց բերած աւերներէն վերջ դեռ բարձր*

պիտի բռնէին իրենց գլուխը։ Ուռհայեցին պատմելով քաղաքին առումն Ալփասլանէ 1064ին, կ'ըսէ՝ թէ «յայնմ աւուր հազար և մէկ եկեղեցի ի պատարագի կայր ի յԱնի» (ՁԸ)։ Կրնայ այս թիւն անորոշ բազմութիւն մը նշանակել, ինչպէս կ'ըսէ Կիրակոս նոյն քաղաքին համար՝ թէ «եկեղեցի բազում կայր ի նմա» (ԻԵ)։ Պէտք է նաև «եկեղեցին» մատրանաձեւ խորան իմանալ, ինչպէս այն ժամանակ սովորութիւն էր կոչել[1]։ Յամենայն դէպս Անին մեծ էր յաչս Հայոց, անոնց Երուսաղէմն էր։ Հրեայք կ'երդնուին Երուսաղեմի և կամ տաճարին վրայ[2]. իսկ Հայք, կը յաւելու Կիրակոս, «ի կարգ խօսից երդման այսպէս երդնուին. Անւոյ հազար և մի եկեղեցին»։ Անցեալ ժամանակաւ կը խօսի պատմիչս, «երդնուին».

1. Օրինակներ շատ կան (Լմր. մեկն. Պորգ. 71. — Կիր. ԾԱ. եւն)։ Մանաւանդ թէ այդ է միայն Ուռհայեցւոյն միտքը, զոր ինքն իսկ կը հաստատէ ուրիշ տեղեր. ինչպէս երբ կ'ըսէ՝ թէ Արծնի մէջ «կայր յայնժամ ութ հարիւր եկեղեցի ընդ պատարագով» (ՁԳ). և Սեբաստիոյ մէջ կը դնէ «վեց հարիւր եկեղեցիք» (ՁԴ)։ Ուրեմն Անւոյ «հազար և մին» ալ ձեւացուած է՝ տաճարաց բոլոր խորանները միասին հաշուելով։ Ասոնց բազմութեան մասին գրած եմ այլուր (Ս. Պորգի. Օրերն եւն, 62, 65, 71)։

2. Մատթ. Ե, 35. ԻԳ, 16, 21։

ուրեմն այդ սովորութիւնը հին էր քան ԺԳ դար. այս ինքն ոստանին պայծառութեան շրջանին յատուկ։ — Սիրո՛ւն և անցա՛ծ յիշատակ։

10. — Բաժակ պատարագին։ — Տարօրինակ և միանգամայն անհեթեթ դիպուածի մ' առջեւ կը դնէ զմեզ Մոթ. Ուռհայեցին, երբ պատմելով հայ իշխանաց առ Գագիկ տուած երդումը (աստ, Ա, 6), կը յիշէ տէրունական բաժակին ներկայութիւնն այն տեղ՝ ո՛չ որպէս վայրկենական վկայ, այլ մնայուն գրութեան, որով յաւէժ անբաժան մնար ուխտէն. «Բերին, կ'ըսէ, զսուրբ խորհուրդն մարմնոյ և արեան որդւոյն Աստուծոյ, և թանայիւ զգրիչն յԱրիւնն կենարարին, և արարին երդման գիր հայրապետն և ամենայն իշխանքն Հայոց». և այսպէս «Արեամբն Աստուծոյ կապեցին զերդումն սոսկալի», կը վերջացնէ (կե)։ Մեր քրիստոնէական զգացմանց դէմ կ'ընդվզի այս. հաւատա՞նք ասոր։ Եւ ինչո՞ւ ոչ։ Դաւաճաններ՝ որոնք սուտ երդմամբ կը մատնեն թագաւորը և Անին, պիտի խղճէի՞ն այդ սրբապղծութենէն։ Յետոյ՝ այսպիսի անլուր գործ մ'ի՞նչպէս կրնար երեւակայել

պատմիչը, եթէ իրօք կատարուած չլինէր։ Թող որ այդ ժամանակի Հայոց մտքէն — հետեւաբար ըսե՛նք և սովորութենէն — ա՛յնքան հեռի բան մ'ալ չէր այս. Դաշանց թղթոյն հնարողը կ'ուզէ՝ որ Դ դարուն Հռովմայ և Հայոց քաղաքական ու եկեղեցական գլուխներն ալ նոյն ոճով գրած լինին իրենց դաշնը. «Եւ յաղագս հաւատարմութեան հաստատուն և անջրելի ուխտիս մերոյ, կ'ըսուի հոն, զահագին և զանգին Արիւնն Քրիստոսի ի մելանս խառնեալ՝ գրեցաք Փրերք (եղբարք) միմեանց՝ արեւմտեան և արեւելեան ազգս»։ Արդ՝ երկու օրինակներս ձեւով ու շրջանով կատարելապէս կը շօշափեն ու կը զօրացնեն զիրար, ուստի և մեր հաւատքն ալ՝ նախարարաց ըրածին վրայ։

⁂

## Ե. ԵՂԱՆԱԿ ԵՐԴՄԱՆ

Որ և է գործ կը կատարուի իրեն յատուկ ձեւով մը. երդումն ալ իւր ձեւն ունէր։ Եւ այնու որ կրօնական գործ մ'էր, և տեղի կ'ունենար սրբութեանց միջեւ, իրեն կ'ընկերէր համառօտ՝ բայց ճշմարիտ

արարողութիւն մը, որ հանդիսական և ազդեցիկ կերպարանք մը կու տար անոր։ Տեսնենք զայն։

1. – Աղօթք։ — Այն երդմունք՝ որ սեպհական էին կրօնից հաւատարմութեան, իրենց հետ ունէին պարագային յարմար յանկարծահնար աղօթք մ'ալ, որ կը կանխէր քան երդումը, և որով երդմնողք իրենց միտքը կը բարձրացնէին ու կը միացնէին գերագոյն վկային հետ՝ զոր պիտի կոչէին։ Այսպէս Վարդանանք ի Պարսկաստան ծանօթ ուխտը կնքելէն յառաջ՝ նախ «մեծաւ յուսով աղօթելով՝ ասէին» կարճ մաղթանք մը, որոյ բովանդակութիւնն ալ կու տայ Եղիշէ։ Անոր մէջ կը յայտնեն իրենց սրտից անկեղծութիւնն առ Աստուած. անոր օգնականութիւնը կը խնդրեն պատուիրանապահութեան համար, կորացումն Յազկերտի կամաց, և դարձն ի ծոց հայրենի Եկեղեցւոյն (յեղ. Բ)։ — Վահանեանք ևս իրենց երդմնելէն յառաջ ոտքի ելան. «յառնեն ամենեքեան». և նախ «յաղօթս կացեալ», որոյ բովանդակութիւնը չէ յիշած Փարպեցին, ապա երդուան (կԶ)։ — Վարդանանց երկրորդ «հաւատոյ ուխտն» արդէն աղօթից ձեւ

ունէր, որով և կարօտ չէր ուրիշ առանձին աղօթից (Նոյն, ԼԲ)։

Արդեօք առենական երդմանց հետ ալ կա՞ր աղօթքը։ Հաւանական կը կարծեմ, և յատկապէս այն պարագային՝ երբ երդում կը տրուէր եկեղեցւոյ մէջ։ Աղօթավայրը մըտնողը պատշաճ էր որ նախ խօսք մ'ուղղէր առ Աստուած, որոյ ներկայութեանը կու գար վկայել ճշմարտութեան. և այս վախճանաւ խնդրէր անոր օգնականութիւնը։

2. — Համբոյր կամ Երկրպագութիւն սրբութեանց։ — Քրիստոնէի մը, որ ինչ և իցէ ժամանակ կամ նպատակաւ կը մերձենար նուիրական իրաց, առաջին գործը կը լինէր մեծարանաց ցոյց մ'ընել, պագնելով զանոնք և կամ երկրպագելով՝ ըստ սրբութեան։ Ուստի նոյնպէս կը լինէր և երդման առթիւ։ Փարպեցին է զայս յիշատակողը. Վահանեանք երդման պահուն «Բերեալ, կ'ըսէ, սուրբ Աւետարան, ողջունէին՝» այս ինքն կը համբուրէին «ամենեքեան», որ է բոլոր անոնք որ ներկայ էին և պիտի երդնուին (ԿԶ)։ Միւս նման օրինակաց մէջ այս պարագայն անյիշատակ կը մնայ. բայց չենք կարող նոյնը չենթադրել նաեւ անոնց մէջ. զի Վահա-

*նեանց այդ համբոյրն արդիւնք էր ոչ Թէ երդման, այլ ինչպէս ըսի՝ Աւետարանի մերձեցման, և որ կար արդէն ու կը գոր-ծադրուէր ուրիշ առԹից մէջ եւս* (*Եղիշ*. Գ. Փրպ. ԼԴ)։

*Խաչին համբոյրը չէ յիշուած ծանօԹ երդմանց մէջ. բայց սկզբունքը նոյն է. և նոյն սովորուԹիւնը կը հաստատեն՝ Դա-ւիԹ ԱնյաղԹ երբ կ՚ըսէ խաչին ներբողին մէջ. «Որ ոք հաղորդեսցի (անոր) համ-բուրելով արժանացեալ»* (107)*. և Զա-քարիա ԿԹղ. Թէ «ի համբուրել մեզ ըղ-խաչն» եմ* (*ի ս. եկեղ.*)։ *Մանաւանդ Թէ պարտաւոր ենք ենԹադրել նոյն առԹիւ՝ և ողջագուրելէն յառաջ՝ քաջածանօԹ եր-կրպագութիւնն ալ տէրունական նշանին, որ ամենասովորական բան էր Հայոց մէջ*[1]։

— *Նոյնը կը տեսնենք Աջոյ երդման առ-Թիւ եւս. Մուշեղ երբ սոյն նպատակաւ կոչուեցաւ Պապայ առջեւ, «եկն եպագ երկիր արքային», և ապա երդուաւ* (Փաւս. Ե, դ)*. Թէեւ այս ալ սովորական էր որ և*

1. *Ուրիշ անգամ արդէն ընդարձակօրէն ցուցած եմ այդ սովորուԹեան ամենամեծ հնուԹիւնը և ընդհանրա-կանուԹիւնը տիեզերական Եկեղեցւոյ մէջ* (*Մանզումէ*, 21 Դեկ. 1904)։

է ժամանակ մերձեցման առ Թագաւորն ու Հայրապետը։

Իսկ եկեղեցւո՞յ համբոյրը։ Ես զայդ ալ կ՚ընդունիմ. և կը լինէր՝ անոր պատը պագնելով. զի ո՞չ ապաքէն միւռոնով օծուած էին այդ պատերը՝ նման միւս սրբութեանց։ Այսպէս Է զարուն արծրունի տիկինը Մարիամ՝ Ս. Կարապետի սրբավայրը մտնելով՝ «համբուրեաց զորմ տաճարին», կ՚ըսէ Յովհ. Մամիկոնեան (10)։ Նոյն սովորութիւնը կը յիշէ խորթին դարձուածով մը Նարեկացին ալ (աղ. ՀԵ, բ)։ Այդ էր վերջապէս յեկեղեցի մտնելու ընդհանուր ձեւը. ուստի բնական էր՝ որ նոյնը կրկնէին նաեւ երդման համար մտնելու ժամանակ։

3. — Դրութիւն ձեռաց։ — Համբուրին կը յաջորդէր այս. ձեռներն հանգչեցուցած սրբութեանց վրայ, այնպէս կ՚արտասանէին երդման բանաձեւը։ Ձեռք դնելը՝ շօշափել էր սրբութիւնը, և անով աւելի սերտ կցորդութեան մը մտնել անոր հետ. ճիշդ ինչպէս Դաւիթ Անյաղթ խաչին համբոյրը կոչեց «հաղորդիլ»։ Այս գաղափարն ու գործը շատ հին են. Մուշեղ իւր նախաքրիստոնէակերպ երդման մէջ «բուռն

հարկանէր» հայրապետին և արքային աջոյն՝ որոց վրայ երդուաւ (սստ, Դ, 1)։ Նոյնը կը պատահէր միշտ նաեւ սրբութեանց հետ. օրինակներ շատ են։ Վարդանանք «եդեալ ամենեցունց առ հասարակ զձեռս ի վերայ» Աւետարանին՝ այնպէս կատարեցին իրենց ուխտը (Փրպ. Իէ)։ Նոյնը կը տեսնենք Վահանեանց երդման մէջ ալ. «Եդեալ իւրաքանչիւր ուրուք զձեռս ի վերայ» Աւետարանին, կ՚ըսէ նոյն պատմիչը (ԿԶ)։ – Դիտելի են հոս նաեւ այս բառերը, «իւրաքանչիւր ուրուք». ըսել է՝ թէ անոցմէ ամէն ոք առանձինն կրկնեց այդ գործը. ուրեմն բաւական չէր հաւաքաբար կամ միոյն բերանով երդնուլը։ Եւ դարձեալ՝ դնելով «զձեռս», այս ինքն՝ երկու ձեռները միասին։ Վերջապէս կը տեւէր դեռ այն Մխ. Գոշի օրով, որոյ համեմատ երդմնողը «դնէ զձեռն... յԱւետարան» (51), և ուր ժամանակն երկու ձեռաց գործածութիւնը վերածած է մեկի, այն է աջոյն միայն։

Մխիթար մի և նոյն ձեւը կ՚աւանդէ նաեւ միւս սրբութեանց համար. ինչպէս՝ «դնէ զձեռն ի խաչ» (անդ)։ Այս հասկանալի է, և անկարօտ բացատրութեան։ —

Ադոր կը յարէ՝ «կամ յԵկեղեցի»։ Այս վերջինս ի՞նչպէս կը լինէր։ Բնականաբար աջը դնելով տաճարին այն մասին վրայ՝ ուր կը դրոշմէին համբոյրը. այս ինքն որմոյն, ինչպէս դեռ այսօր սովորութիւն կայ երդնուլ Հայաստանի մէջ, և որ հարկաւ մնացորդն է հնոյն։

Ընդ հակառակն՝ չեմ կարծեր թէ «յԱնունն Աստուծոյ» երդման մէջ որ և է սրբութեան հպում կատարուէր. զի Շնորհալին իւր վկայութեան մէջ կ'անջատէ անոր երդումն յայլոց. «յանունն Աստուծոյ և յաւետարանն սուրբ և ի խաչ» (Ընդհ. 192)։ — Եւ ոչ դարձեալ շօշափում կար «Անուոյ հազար և մի եկեղեցւոյն» երդման մէջ, որոցմէ գաւառներով հեռի էին երդմնողները. և արդէն կարելի չէր հազար և մի խորաններու դպչիլ։ Գուցէ լինէր կարկառում մը ձեռաց դէպ յերկինս՝ առաջին պարագային[1]. և շատ աւելի ենթադրական՝ դառնալ մը դէպ Անի՝ երկրորդ պարագային, ինչպէս Հրեայք աղօթելու համար կը դառնային Երուսաղեմի կողմը, և Մահմետականք՝ Մեքքէի։

1. Համեմատել Վարդանանց «Հաւատոյ ուխտն» առ Աստուած, զոր տուին՝ «համբարձեալ առ հասարակ ըզձեռս ընդ երկինս», և ապա գրեցին զայն (Փրպ. ԼԲ)։

## Զ. ԲԱՆԱՁԵՒՔ ԵՐԳՄԱՆ

*Յիշեալ ձեռաց դրութեան կ'ընկերէր երգումը։ Նախկին դարերուն անոր արորո-ղական որոշ բանաձեւեր չկային. այլ կը յարմարէին զանոնք ըստ պարագային և սրբութեան՝ որոց հետ կապուած էր եր-գումը։ Ասոր համար ինձ այնպէս կը թուի՝ թէ մեր պատմիչներն իրենք իսկ կը շա-րադրեն զանոնք։ Եթէ արդարեւ անոնց աւանդած ձեւոց մէջ բառացի ճշդութիւն չլինի անգամ, անկասկած է սակայն՝ թէ անոնք կը պահեն գէթ ժամանակի երգ-մանց ընդհանուր գծերը։ Այս պատճառաւ չեմ վարանիր իբր կանոնաւոր երգմնա-ձեւեր ներկայացնել զանոնք ընթերցողա-ցըս։ — Նոյնպէս չէ կարելի խորհիլ ա-տենական երդմանց մասին, որոնք հար-կաւ ունէին ի սկզբանէ ամենուն՝ մանա-ւանդ ռամկին՝ դիւրամատոյց առանձին ու պարզ ձեւեր. ինչպէս կային և միջին դարուն, որոց կ'ակնարկէ Կիրակոս, յի-շելով Անւոյ երգումն «ի կարգ խօսից երգ-ման»* (իե). *և ուր մեր վարդապետները կը*

թելադրեն, կամ աւելի ճիշդ՝ արդէն եղածներէն կը գտեն որոշ ձեւեր՝ խափանելու համար ժողովրդեան անպատեհ սովորոյթները։ Կ'ուզեմ յառաջ բերել հոս ինչ որ ծանօթ է ինծ անոցմէ հին ու համեմատաբար նոր։

1. – **Աշխարհիկ ձեւեր։** — Հնագոյն և միակ բանաձեւն այս կարգէն՝ Մուշեղի տուածն է առ Պապ. և է այսպէս. «Կեցից և մեռայց ի վերայ քո՝ որպէս նախնիքն իմ ի վերայ նախնեացն քոց. որպէս հայրն իմ ի վերայ հօրն քո Արշակայ, այնպէս և ես ի վերայ քո. բայց միայն չարախօսացն ունկն մի՛ դնիցես» (Փաւս. Ե, դ)։ Ահա երդում մը յորում ոչ ինչ կայ կրօնական, ինչպէս և ոչ մի սրբութեան ներկայութիւն։ Զինուորականի մը, Մամիկոնեան սպարապետի մը յատուկ երդումն է, յանկարծուստ հնարուած ռազմի ճակատին մէջ, համառօտ ու կորովի. անձնանուիրութիւն պաշտօնական ծանուցումը. և որ կ'աւարտի՝ զրպարտեալ սրտի մ'արդար և ազդարար բողոքով։ Այս ձեւը Դ. դարուն մէջ՝ մնացորդ էր նախալուսաւորչեան շրջանին, որ չպիտի կարենար երկար ապրիլ, և խոյս պիտի տար քրիս

տոնէութեան տիրապետութեան առջև, որ մարդկային ամէն գործոց կը զգեցնէր հոգեւորութեան նկարագիրը։ Ուստի և այդ երդման կը յաջորդեն փութով՝

2. – Կրօնական ճառեր։ — Աստցմէ ունինք Ե դարու ծանօթ յուզմանց մէջ յիշուածները։ Առաջինն է Նախարարաց երդումն առ Վարդան՝ Փարպեցւոյն քով (ԻԷ), որ սակայն շատ ընդարձակ է բանաձևի մը համար. և յորում պատմիչը համառօտած է անոնց ամբողջ խօսակցութիւնը զոր ըրին, համոզելու համար սպարապետը՝ Յազկերտի ձեռքէն խաբէութեամբ ճողոպրելու։ Բաւական կը համարիմ անոր բովանդակութիւնը դնել հոս. — Եթէ դու, Վարդան, անգամ մը կեղծ ուրացութեամբ ազատես զմեզ այս որոգայթէն, պիտի հնազանդինք քեզ՝ տալով մեր արիւնը Եկեղեցւոյ և հայրենեաց փրկութեան համար. իսկ եթէ հարկ լինի պանդխտութիւն ու տնանկութիւն՝ պահելու համար մեր կրօնքը, պիտի ընդունինք։ Եթէ ոք ստէ այս երդման, թող անջատուի նման Յուդայի և մատնուի անշէջ հրոյն, և երեք աշխարհաց հասանելի վնասները տուժէ յաւիտեան. իսկ քու

պատճառաւ լինելի բարիքը թող յաւիտեան գրաւական մնայ քու և տոհմիդ հոգւոց փրկութեան։

Աւելի հակիրճ և ազդու է Վահանեանց բանաձեւը, որոյ նպատակն յար և նման էր նախորդին, և որ ահաւասիկ բառ առ բառ. «Որ խոստովանեսցի զհաւատս զայս՝ զոր Փրկիչն ամենեցուն և տէր Յիսուս Քրիստոս վարդապետեալ գրեաց ի սմա[1], և Որդի մարդոյ խոստովանեալ տարցի զնա առաջի Հօր իւրոյ, ժառանգեցուցանել նմա զերկնից բարութիւնս։ Եւ որ ոք խոտորեալ ուրասցի ի հաւատոյս յայսմանէ, և նենգեալ ստիցէ Աւետարանիս երդման, և Որդի մարդոյ ուրացեալ հանէ զնա ի խաւարն արտաքին՝ ուր լալ աչացն է և կրճել ատամանց» (Փրպ. կԶ)։

Ի՞նչ կը տեսնենք մեք այս բանաձեւերու մէջ։ Նախ և յառաջ երդման նպատակը կամ նիւթը. այս ինքն է պահպանութիւն՝ մահուամբ և զրկանօք չափ՝ Փրկչին ուսուցած հաւատոց։ Յետոյ՝ անոր փոխան խոստումն յաւիտենական կենաց ու փրկութեան։ Եւ վերջապէս անէծք ու սպառ-

1. Այս ինքն Աւետարանին մէջ՝ որոյ վրայ կը լինէր այդ երդումը։

նալիք կորստեան անոնց դէմ՝ որոնք պիտի դրժեն այդ ուխտին։ Այս էր և այս միայն կրնար լինել հաւատոց պատկանեալ երդմանց յօրինուածը։

3. — *Ատենական ձեւեր*։ — Մխիթար Գոշի ժամանակ երդմնաձեւերը բազմացած էին՝ գլխաւորապէս արաբական ազդեցութեան ներքեւ, ինչպէս կը կարծեմ։ Անոր և յաջորդաց յիշածները, որոցմով կը զբաղինք այս տեղ, բոլորն յատուկ էին դատաստանական խնդրոց։ Անոնք աւելի մանրամասն են Մխիթարայ քով քան այլոց. և ըստ տեսակի կը բաժանուէին «խոստովանութեան» և «ուրացութեան»։ Ուրացութեանն էր այն՝ յորում երդմնողն իւր վկայածին ստուգութեան պայման կը դնէր՝ հակառակ պարագային չլինել քրիստոնեայ. զոր օրինակ, «Քրիստոնեայ ոչ եմ՝ եթէ չիցէ այդ այդպէս». և կամ հեթանոսի յատուկ վարմունք մը ցոյց կու տար, եկեղեցւոյ լոյսը մարելով և այլն (51), զորս արդէն տեսանք Անկանոն երդմանց մէջ։ Այդ ձեւերը դեռ կը տեւէին Տաթեւացւոյն օրով. անոր համար՝ «անպատշաճ է, կ'ըսէ նա, որ ուրացական երդնու» (հտ. ձմր. 16)։ Մխիթար կ'ուզէ

*որ սոյնպիսի երդմանց միջամուխ եղողներ մինչեւ ցմահ ապաշխարութեան ենթարկուին. թէեւ առաջնորդաց գթութեան դուռն ալ չի փակեր անոնց առջեւ*[1] (58)։

*Իսկ խոստովանութեան երդումնքն էին՝ քրիստոնէի վայել հաստատական ձեւեր. զոր օրինակ՝ «Գիտէ Աստուած, և խաչս և Աւետարանս վկայ է սրտիս՝ զի այսպէս է որպէս ասեմ, և ոչ ստեմ». և կամ աւելի կարճ ու ժողովրդական ճոխաբանութեամբ, «Փառք սոցա և զօրութիւն՝ զի ճշմարիտ ասեմ զոր ասեմ, և ոչ ստեմ»* (51)։ *Եթէ այս բանաձեւերու մէջ երեք սրբութիւնք միացեալ են, համառօտութեան համար է, ոչ եթէ այն ժամանակ երեքին վրայ անվրէպ միասին կ'երդնուին միշտ. զի նոյն տեղ Մխիթար կ'ըսէ եւս անջատաբար՝ «ի խաչ կամ յԱւետարան կամ յԵկեղեցի». այսու ըզգացնելով թէ միացման և թէ բաժան֊*

1. *Նոյն սովորութեան ազդեցութեամբ հնարուած են Բարսղի կեղծ Գ կանոնաց սա յօդուածները. «Քահանայ մի՛ թողցէ զոք յերդումն յեկեղեցի ամենեւին, և մի՛ ճրագ անցուցանել և լինել ուրացող. և եթէ ոք յանդըգնի՝ եղիցի ընդ խաչահանուինսն Քրիստոսի»* (ՃՀԸ), *և կամ. «Եթէ ոք երդնու ուրացութեամբ, հնգետասան ամ ընդ ունկնդիրսն կացցէ, և մի ամ առ դրանն հաղորդեսցի օրինաց»* (Է)։

ման սովորութից գոյութիւնը ։ Այսպէս Գրիգոր Տաթեւացին ալ Գոշի բանից և կամ սովորութեան թելադրութեանը ներքեւ կը դնէ նոյնպէս կրկնակ և աւելի՛ ռամկացած ձեւեր. ինչպէս, «Այս խաչիս փառքն, կամ՝ Այս Աւետարանիս (փառքն), որ այս այսպէս է». որոնք կրկին են ուրոյն սրբութեանց վրայ։ Եւ կամ այս խառն ձեւը. «Գիտէ Տէր և այս խաչս և այս Եկեղեցիս», անշուշտ նոյնպէս յաւելլի՝ «որ այս այսպէս է» (Հտ. Ճրմ. 16)։ — Տեսանք Բագրատունեաց ոստանին երդմնաձեւը, «Անւոյ հազար և մի եկեղեցին» (Կիր. ԻԵ), որ նմանապէս թերի է և կարօտ լրացման, և ուր պատմիչն ուզած է լոկ յիշատակել սովորութիւնը, ոչ եթէ ամբողջական բանաձեւը տալ։

Ընդհանուր դիտողութիւն մը։ Մեք պիտի խորհէինք՝ որ ինչպէս այժմ, հին ժամանակ ալ երդմնաձեւք սկսէին կարեւոր բառովս՝ «Երդնում»։ Ընդ հակառակն նախնիք չունէին և վերոյիշեալ բոլոր ձեւոց մէջ չենք գտներ աղօր գործածութիւնը։ Ցետոյ կը տեսնենք՝ որ ամենուն մէջ կայ յարակից սրբութեան յիշատակութիւնը. «Նենգեալ ստեսցէ Աւետարա-

*նիս երդման», կամ «գիտէ Աստուած», կամ «Խաչս և Աւետարանս վկայ է», կամ «փառք սոցա և զօրութիւն» և այլն. ուր անոնց յիշումն ինքնին կը բռնէ երդումի բառին տեղը. և այդ վկայից զատ ուրիշ բան պէտք չէր՝ բայց պարզապէս ըսել ճշմարտութիւնը և զայն անոնց ամենատես գիտութեամբն ու վկայութեամբ հաստատել։*

-※-

## Է. ԳՐԱՒՈՐ ԵՐԴՈՒՄՆ

*Սովորաբար բերանացի կը լինէր երդումն, ինչպէս մինչեւ ցարդ մեր տեսած օրինակաց մեծագոյն մասին մէջ. եւս առաւել առենական խնդրոց համար տրուածը։ Այդպէս չէր աւելի ծանր առթից մէջ. հոս՝ խնդրոյն անսովոր կարեւորութիւնը և կամ երդմնողաց հաւատարմութեան կասկածը թելադիր կը լինէին՝ բերանով արտասանածը գրով ալ աւանդելու կամ պահանջելու, որով առաւելագոյն հաստատութիւն մը ստանար, և ապագային մնար անուրանալի վկայ մը։ Նոյն նպատակաւ միանգամայն կ'ենթարկուէր*

ուրիշ ձեւակերպութեանց ալ, զոր պիտի տեսնենք հետագայ յօդուածոց մէջ։

1. — *Գիր կամ յետկար երդման։* — Շատ են ասոր օրինակներն ու զանազան դարերու մէջ կ՚երեւին։ Ուխտադրուժն Վասակ երբ ձերբակալուելով՝ կրկնեց իր հաւատարմութեան երդումը, այս անգամ աւելի եւս համոզելու համար ուխտապահներն իր անկեղծութեան մասին, «գրէր» զայն, կ՚ըսէ Եղիշէ (Գ)։ Չի բացատրեր՝ ինքնակա՞մ թէ ստիպմամբ ըրաւ այդ բանը. բայց գործը ցոյց կու տայ՝ թէ այդ ժամանակ արդէն կար երդմնագրոյն սովորութիւնը։ Սակայն շատ նուազ էր այն երիցագոյն դարերուն՝ քան կրտսերագունից մէջ։ Այս տեղ տիրող անհաւատարիմ բարքերն ու ստերդմնութիւնք՝ զորս պիտի տեսնենք իրենց կարգին, աւելի զգալի ըրած էին գրաւոր երդման պէտքն ու գործածութիւնը։ Ասոր համար այդ շրջանի պատմական օրինակաց մէջ գրեթէ ամենուրեք կ՚երեւի այն. թէեւ արդիւնքը նըպատակին չհամապատասխանէ միշտ։ Այսպէս՝ Աշոտ Երկաթ և աներն իրենց ուխտը փոխանակեցին «գրով» (Յհ. կթղ. Կ)։ Աբաս սպարապետ՝ ի նպաստ Ատրներսեհի

երդումն արձանացուց «յետկարի[1]» վրայ (նոյն, Լ)։ Աշոտ արծրունւոյն՝ Հասանայ ազատութեան համար տուածն էր նոյնպէս «յետկար սաստիկ երդմանց» (նոյն, ԼԸ)։ Գեղարքունւոյ իշխանը Վասակ՝ Աշոտ Երկաթի առ ինքն ունեցած զգացմանց և դիտաւորութեան մասին կասկածոտ, խընդրեց ու ստացաւ անորմէ ապահովիչ «յետկար երդման», (նոյն, ԾԹ)։ Եւ Անւոյ մատնիչներն առ Գագիկ խթեցին «երդման գիր» (Ուռհ. ԿԵ)։ Վերջապէս կը տեսնենք՝ որ սովորութիւնը շատ ընդարձակ է այդ միջոցին։

Ժամանակակից Հայք օտարներէն ևս նոյն ձեւով կը պահանջէին երդումը։ Հասան Գնթունի՝ Կարուց ամրոցին մէջ պաշարուած Ափշինէ, «խնդրէր յետկար երդման՝» խնայելու բերդականաց. և նա տալով՝ գրաւեց ամրոցը (Յհ. կթղ. ԼԵ)։ Սըմբատ Խոստովանողն ալ նոյն տագնապին մատնուած Յուսուփէն՝ Կապուտայ ապաստանարանին մէջ, «յետկար երդման ուխտի յոստիկանէն խնդրեալ», ապա անձնատուր եղաւ (նոյն, ԽԸ)։

1. Պրս. եատկեար՝ կը նշանակէ յիշատակ, յուշարար, ինչպէս էին ու կը կոչուէին նոյն ժամանակներ մեր այդ երդմնագրերը։

2. — Գիրն Աւետարանի մէջ։ — Ամե-
նակարեւոր պարագայ մը կը ներկայացնէ
մեզ Ե դարը, զոր չեմ կարող զանց ընել։
Վասակ՝ ըսինք՝ նորոգեց իր ուխտը գրով.
բայց այդ ալ դեռ բաւական չեղաւ։ Որ-
պէս զի այդ գիրը ստանար մեծագոյն նը-
շանակութիւն մը, պէտք էր միանալ Ա-
ւետարանին, անոր ծոցը զետեղուիլ, ա-
նոր հետ մի մարմին կազմել, որով մաս-
նակից լինէր անոր դատողական զօրու-
թեան և ահաւորութեան (սստ, Դ, 4)։
Ուստի կեղծաւորն իսկ իր ձեռօք զայն
Աւետարանին զօդեց. «Կապէր զԱւետարա-
նին», կը յաւելու Եղիշէ (Գ)։ Սիւնեցւոյն
անակնկալ մէկ գիւտը չէր այս. այլ դար-
ձեալ ժամանակի սովորութեանց մասն։
Վասն զի Փարպեցին անոր կրկնութիւնը
կը յիշէ նաեւ Հայոց երկրորդ երդման
կամ «հաւատոյ ուխտին» առթիւ, զոր
գրեցին, կ'ըսէ, և «եդեալ ի սուրբ Աւե-
տարանին ՝երդման՝» այնպէս պահեցին
(ԼԲ)։ Երկու վկայութիւնք բացատրութեանց
տարբերութեամբ կը լրացնեն զիրար. և
խառնելով իրարու, կը հետեւցնենք՝ թէ
մագաղաթեայ գիրը կը դնէին Աւետարա-
նին մէջ. և որպէս զի բնաւ չընկնէր ու

կորնչէր, լարով մը կը կապէին զայն մատենին հետ։

Յիշեալ օրինակներէն կրնանք եզրակացնել՝ թէ այս սովորութիւնը տեղի կ'ունենար լոկ շատ կարեւոր և յատկապէս կրօնական խնդրոց մէջ։ Իսկ կրտսեր դարերուն անոր անյիշատակութիւնը նշան մ'է՝ թէ երկար տեւողութիւն չունեցաւ։

## Ը. ԿՆՔՈՒՄՆ ԵՐԴՄԱՆ

Ընկերական բարուց մէջ ամէն խոստումն կամ գիր՝ կը վաւերացուի ստորագրութեամբ մը։ Նախնեաց ստորագրութիւնը կնիքն էր, զոր իւրաքանչիւր իշխանաւոր՝ աշխարհիկ թէ եկեղեցական՝ փորագրուած ունէր իւր մատանւոյն վրայ, և զայն կը դրոշմէր ուր կարեւոր էր։ Այսպէս երդումն ալ շատ անգամ կը պահանջէր մատանւոյ գործածութիւնը, որ աւելի հարազատութիւն և ոյժ մը կ'ընծայէր անոր։ Եւ այնու որ երդումը կրնար լինել անգիր կամ գրաւոր, կնքման հանգամանքներն ալ կը զանազանէին իրարմէ։

1. – Կնքումն անգիր երգման։ — Մարդկային ձայնը չէր կարող անշուշտ կնիք ընդունիլ. հետեւաբար ենթակայ մը հարկաւոր էր անոր. և էր նոյն ինքն այն սրբութիւնը՝ որոյ վրայ կը հիմնուէր երգումը. և յատկապէս Աւետարանը։ Փարպեցին է՝ որ խօսելով Վարդանանց մասին, երկու անգամ կը կրկնէ այդ պարագայն։ Անոնց առաջին երդման առթիւ կը յիշէ նախ «զկնքեալ ամենեցուն... զսուրբ Աւետարանն ուխտին» (իէ)։ Ապա անոնց ի հայրենիս դարձէն վերջ՝ միւս բոլոր տանուտերքն ու սեպուհք ալ, որոնք նոյն երդման պահուն ներկայ չլինելով՝ «չեւ եւս էր կնքեալ զԱւետարանն՝ կնքէին» (նոյն, ԼԲ)․ և այդ մատեանը կը կոչուի միշտ «կնքեալ Աւետարան ուխտին» (նոյն, Լ)։

Բնականաբար հարց կը ծագի մեր մըտաց մէջ՝ թէ մատենին ո՞ր մասին վրայ կը դրոշմէին։ Արդեօք արտաքուստ մագաղաթեայ կամ կերպասեայ լայն կապ մը դնելով՝ զա՞յն կը կնքէին, թէ մատենին լուսանցներուն վրայ կը շարէին դրոշմներն իրարու մօտ, ինչպէս յետին դարերու ձեռագրաց եզերքը կը հանդիպինք երբեմն ստացողի կնքոյն։ Անհաւանական չի թուիր

երկրորդ ենթադրութիւնս, երբ նկատենք՝ թէ այդ երդմանց նուիրեալ Աւետարանք ուրիշ պաշտօն չունէին արդէն, բաց ի վկայ մնալէ (աստ, Դ, 3)։ Կ'ախորժիմ այնպէս համարիլ՝ թէ ամէն եկեղեցի ուր սովորութիւն էր երդնուլ (աստ, Գ, 1), — և այդ տաճարք գլխաւորներն էին անշուշտ, որոց մօտ դատարաններ կային, — ունէր յատուկ «Աւետարան երդման», որ բաց ի թերանացի ուխտերէն՝ կ'ընդունէր իւր վրայ նաեւ անսովոր առթից մէջ պահանջուած կնիքներն ալ։ Անշուշտ այսո՛ւ կարողացաւ Շապուհ ժամանակ մը վերջ ձեռք ձգել Տիզբոնի եկեղեցւոյն այն Աւետարանը՝ որոյ վրայ երդուած էր Արշակ (Փաւս. Դ, ժզ)։ Անսովոր ըսի անոր կընքումը. և արդարեւ մեք միայն Վարդանանց քով կը պատահինք այդ պարագային, որ առ առաւելն ցանցառ կամ հանդիսական կարեւոր առթից յատուկ սովորոյթ մը կրնայ ենթադրել տալ մեզ, և ոչ այլ ինչ։ Հետեւաբար մատենից յաճախ խանգարման և նորանոր ծախուց անպատեհութեան տեղի չէր մնար։ Թող որ գուցէ երդման Աւետարանի բովանդակութիւնն էր՝ չորս աւետարանիչներէն մին

միայն և կամ որ և է մասն. զի անոնց նշխարիկներն ալ հաւասարապէս յարգի էին հնոց, ինչպէս պիտի տեսնենք ուսումնասիրութեանս վերջին գլխոյն մէջ։

2. – **Կնքումն գրաւոր երդման։** — Այս աւելի դիւրին և շատ ալ սովորական՝ և նոյն իսկ ստիպողական էր ամէն դարերու մէջ. զի բնականապէս ստորագրութիւնն աւելի՛ կարեւոր էր գրին ներքեւ։ Այսպէս Վասակ «գրէր և կնքէր զերդումն» ուխտապահից առջեւ (Եղիշ. Գ)։ — Նոյն ինքն յետ պատերազմին «երդմունս կնքէր արքունի հրամանաւ և վկայութեամբ անձին իւրոյ», և կը յղէր՝ որսալու համար զՀայերը (անդ, Զ)։ — Վարդանանց հաւատոյ ուխտը նմանապէս «կնքեալ» կ'աւանդէ Փարպեցին նախարարաց «մատանեօք» (ԼԲ)։ — Աբասայ առ Ատրներսեհ և Աշոտոյ ու Սահակայ իրարու տուածներն ալ դարձեալ «կնքեալ» էին (Յհ. կթղ. Լ, Կ)։

Բայց հարկ է դիտել նախ՝ թէ այս գործը, գրել և կնքել, քրիստոնէութեան գիւտը չէր, որոյ համար սրբութեանց վրայ երդումը բանիւ՝ բաւական էր. այլ պարսկական ծագումն ունէր մեր մէջ, և աւելի

քաղաքական ձեւ մ'էր. վասն զի Եղիշէի քով կը կարդանք՝ թէ Ատրորմիզդ մարզպանն ալ ճիշդ նոյնպէս «երդմնոյն (գըրեալ՝) կնքէր և առաքէր ի կողմանս կողմանս», կոչելով ցրուած Հայերն իրենց բնակութիւնքը (յեղ. Է)։ Այս պատճառաւ ալ Վասակայ նմանօրինակ՝ այս ինքն իբր պարսկական մարզպան յղած երդմանց հետ որ և է սրբութիւն չկայ, այլ միայն «արքունի հրաման» և «վկայութիւն անձին իւրոյ». մինչդեռ անոր քրիստոնէակերպ երդումներէն անբաժան էին սրբութիւնք (աստ, Դ, 2, 6)։ Հաւանօրէն կային, սակայն չեն յիշուիր և ոչ Արասայ և Աշոտ արծրունւոյ գրաւոր ուխտից հետ (Ցհ. կթղ. Լ, ԼԸ)։

Երկրորդ դիտելու ենք՝ որ մինչդեռ Վարդանանց հաւատոյ ուխտին կը մասնակցին «ամենայն բազմութիւն զօրացն՝ ազատացն և անազատացն, հանդերձ... ամենայն տանուտերամբք և սեպհօք», անոր կնքումը սակայն կը կատարուի լոկ «մատանեօք ամենայն տանուտերացն Հայոց և աւագ սեպհացն» (Փրպ. ԼԲ)։ Ուրեմն միւսները, նոյն իսկ կրտսեր սեպուհք, չեն մասնակցիր կնքման։ Ինչո՞ւ.

անոր համար՝ որ կամ իրաւունք չունէին մեծամեծաց անուանց քով դրոշմելու իրենցն ալ, — ինչ որ հաւանական է, — և կամ մագաղաթին վրայ տեղւոյ անբաւականութիւնը չէր ներեր ամենուն կնիք դնել՝ բաց ի գլխաւորներէն։

-※-

## Թ. ՄԻՋՆՈՐԴՔ ԵՐԴՄԱՆ

Յարդ մեր թուած ձեւակերպութիւնք լրումն կը ստանային մասնակցութեամբ «միջնորդաց», ինչպէս կը կոչեն Յովհաննէս կթղ. (ԼԸ) և Ուռհայեցին (ԿԵ), որոնք պաշտօն ունէին՝ մատուցանել սրբութիւնքը, լսել երդումը, յաճախ պահանջել զայն, ընդունել նոյնը որ և է ձեւով, ու պահել զգուշութեամբ, չափով մը հսկելով նաեւ անոր գործադրութեանը։ Ինչպէս երդումն և իւր ամէն հանգամանքները կրօնական էին, միջնորդներն ալ կը լինէին միշտ կրօնից պաշտօնեայք՝ երեք աստիճանէ. այս ինքն՝ կաթողիկոս, եպիսկոպոս և երէց։ Չկայ առիթ՝ յորում սոնք ներկայ չլինին. — Նոյն իսկ եթէ երբեմն յայտնապէս չեն յիշուած. — և այս ապացոյց է՝

*թէ անհրաժեշտ էր անոնց գործակցութիւնը։ Դարձեալ՝ ոչ խառնիխուռն, այլ երգմնողաց կարեւորութեան համեմատ կը միջամտէր մէկ կամ միւս աստիճանաւորը։ Տեսնենք զանոնք առանձնաբար։*

1. – *Կաթողիկոսք։ — Սակաւ չեն դիպուածներն՝ ուր ասոնք միջնորդ յիշուին։ Սկսելով Մուշեղի օրինակէն, տեսանք արդէն՝ թէ մեծն Ներսէս ընդունեցաւ անոր երդումը նոյն իսկ իւր աջոյն վրայ* (*աստ*, Դ, 1)։ *Եւ ուշադրութեան արժանի է սա պարագայն, որ մինչդեռ այն տեղ սպարապետը կ'երդնուր թագաւորին ալ, նոյն ինքն Պապայ թելադրութեամբ կը կանխէ հայրապետին տուածը. և ուր զգալի է վերջնոյս առաւելութիւնն արքային վրայ սոյն գործիս մէջ։ — Վարդանանք Յազկերտի չարաշուք կոչին երթալու պահուն՝ երդուան «ի ձեռն Յովսեփու մեծի եպիսկոպոսի», որ էր պատերազմին մասնակից և նահատակեալ կաթողիկոսը* (*Եղիշ*. Գ)։ — *Արաս սպարապետ առ Աշոտներսեհ երդման գիրը «տայր ցհայրապետն մեծ» Գեւորգ, որ հաշտարար ու վկայ էր հոն՝ ըստ Յովհաննու պատմագրի* (Լ)։ — *Այս վերջին կաթո-*

ղիկոսխ միջամտութեամբն էր՝ որ արծրունին Աշոտ երդուաւ Հասանայ ազատութեան համար (Նոյն, ԼԸ)։ — Նոյն ինքն կ'աւանդէ՝ թէ Աշոտ Երկաթի առ Գեղարքունույ իշխանն տուած երդման պատրաստողն ալ ինք եղաւ. «Իմ իսկ, կ'ըսէ, ընկալեալ յարքայէ զնամակն, և տըւեալ առ Վասակ» (Նոյն, ԾԹ)։ — Անւոյ մատնչաց առ Գագիկ տուածին «միջնորդ» ու գործակից էր — թերեւս անգիտակցաբար — Պետրոս Գետադարձ, որ այդ դըժբախտ էջը թողուց իւր փայլուն կենսագրութեանը մէջ (Ուռհ. ԿԵ)։ — Վերջապէս Ռուբինեանց պսակման ժամանակ թէեւ ներկայ էին եպիսկոպոսունք և իշխանք, բայց «կաթողիկո՛սն տայ երդնուլ ընտրելոյն՝» կ'ըսէ կանոնը զոր տեսանք (աստ, Ա, 7)։

Հա՞րկ է անդրադարձնել՝ թէ բոլոր այս դիպուածոց մէջ հայրապետք գործ ունէին հզօրաց հետ, որոց կամքը դիւրամէտ չէր խոնարհելու որ և է երկրորդական իշխանութեան առջեւ, և կը կարօտէր հոգեւոր Գլխոյն գերագոյն ազդեցութեան։

2. — Եպիսկոպոսունք։ — Ասոնք կապուած իրենց վիճակաց հետ, համեմատաբար սակաւ կ'երեւին պատմական երդ-

մանց մէջ, — բաց ի դատաստանականէն՝ որոյ մասին քիչ յետոյ. — բայց սակայն պակաս չեն անոնց միջնորդութեան օրինակներ ևս։ Վարդանանք երբ իրենց երկրորդ ուխտը պիտի կատարէին, բերել տուին «եպիսկոպոսացն և երիցանց՝» երդման ծանօթ Աւետարանը (տես, Դ, 3). և յետ գրելու և կնքելու երդումը, «ետուն ցպատուական եպիսկոպոսն և ցաւագ քահանայութիւնն՝ որ էին անդ՝» պահելու (Փրպ. ԼԲ)։ — Սիւնեցի ուրացողն իւր մորթն ազատելու համար՝ «անկանէր ապաշխարութեամբ յոտս սուրբ եպիսկոպոսացն», որոց ակնարկութենէն կախուած էր իւր կեանքն ու մահը, և անոնց ու բոլորին առջեւ «կրկնէր և երեքկնէր զանսուտ երդումն» (Եղիշ. Գ)։

3. — Երիցունք[1]։ — Ասոնց բազմութիւնն ու ներկայութիւնն ամենուրեք՝ դիւրութիւն կ'ընծայէր աւելի յաճախ կատարելու սոյն պաշտօնը ։ Բաց անոցմէ՝ զորս տեսանք եպիսկոպոսաց հետ, կը

1. Այդ բառն հին լեզուի մէջ կը նշանակէր ժողովրդական քահանայ, և կապ չունէր ամուսնաւորութեան այժմեան գաղափարին հետ, ինչպէս ուրիշ առթիւ ապացուցած եմ (Բազմ. 1906, էջ 157)։

հանդիպինք և այլոց՝ հետագայ առիթներով։ Շապուհ որպէս զի առնուր Արշակայ երդումը, «ետուն հրաման ածել զերիցունս եկեղեցւոյն Տիպոնի». անո՛նք «բերին զԱւետարանն սուրբ», և իրենք իսկ «ետուն նմա զերդումն», այս ինքն երդմնեցուցին (Փաւս. Դ, ժզ, ծդ)։ — Վարդանանք առաջին անգամ երդնլով Աւետարանին վրայ, զայն «աւանդեցին», կ'ըսէ Փարպեցին, առանց իմացնելու թէ ո՛ւմ (ԻԷ). և զոր կը լրացնենք Եղիշեայ յաւելուածով, «քահանայութեանն» որ իրենց հետ էին [1] (Գ)։ — Մի և նոյն Աւետարանը դեսպանաց հետ Վարդանայ ետեւէն տարին երեք երիցունք, որպէս զի յիշեցնէին անոր նախկին երդումը և պահանջէին վերադարձը (Փրպ. Լ)։ Դիտելի է՝ որ աննշան անձինք չեն ադոնք. այլ «արս պատուականս», որ են Ղեւոնդ, Երեմիա և Խորէն (անդ)։ — Վասակ իւր

1. Երդման վրայ անվստահութիւնը՝ որ գոյացած էր միջին դարուն, պատճառ կը լինէր՝ որ երդմնող կողմանց երբեմն իրենք իսկ պահէին երդմնագրերը, ապահովելու համար կորուստէ կամ յափշտակութենէ։ Այսպէս Աշոտ և Սահակ զանոնք «տան իրերաց» (Յհ. կթ. Կ). և Աշոտ արծրունի իրենը յանձնեց Հասանի կնոջ (անդ, ԼԸ)։

կեղծաւոր երդումներն ու սրբութիւնքը կը յղէր միշտ « ի ձեռն սուտ քահանայիցն » (Եղիշ. Գ) կամ «խաբեբայ երիցամբքն որ ընդ նմայն էին» (անդ, Զ)։ Ինքն ալ այդպիսեաց արժանի էր։ — Վահանեանց երդման պահուն «մատուցեալ յառաջ քահանային՝ որում անուն Աթիկ », ու բանակին պաշտօնեայ, ներկայացուց անոնց Աւետարանը։ Սա եւս սոսկական մարդ մը չէր, այլ «այր բանիբուն բանիւ և խորհրդապահ սրտիւ, յերեւելի գեղջէն որ կոչի Բձնի» (Փրպ. ԿԶ)։

4. — Ինչո՞ւ եկեղեցականք։ — Այս հարցման բաւական պատասխանած չպիտի լինէի՝ մատնացոյց ընելով երդման կրօնականութիւնը, և կամ գոյութիւնը մի և նոյն ծրագրով նաեւ հեթանոսութեան մէջ, որ շատ բան ընծայած է քրիստոնէութեան։ Աղոր ներքին և աւելի կարեւոր պատճառ մը կար ըստ իս, որ հետեւեալն է։

ԺԲ դարէն յառաջ մեր նախնիք քաղաքային ատենական կազմակերպութիւն և յատուկ օրինագիրք ունեցած չեն, ինչպէս կար բիւզանդացւոց քով։ Մխիթար՝ որ առաջին հեղինակն եղաւ հայ դատաստա-

նագրոց, նոյնը կը վկայէ ըսելով. «Ջարմացեալ յաղագս այսորիկ լինէի՝ թէ զիա՞րդ յառաջնոց հարանցն մերոց ոչ կարգեցաւ[1]» այսպիսի գործ մը։ Անոր փոխարէն կային եկեղեցական կանոններ, որոց մէջ բովանդակուած էին բազմաթիւ դատաստանական խնդիրներ եւս, և որոնք Մխիթարայ գործոյն գլխաւոր աղբիւրն եղան։

Օրինագրոց պակասն արդիւնք էր աշխարհական ատենից ու դատաւորաց չըգոյութեան։ Այս պաշտօնն ալ սկիզբէն մինչեւ միջին դար յանձնուած էր եկեղեցականաց ու կրօնական ատենի։ Ուրիշ բացատրութեամբ, մեր նախնիք Եգիպտացւոց, Պարսից, Հրէից կամ միւս արեւելեայց, Առաքելոց[2], և տոհմային քրմական դրութիւնը պահեցին այս մասին մէջ, — որ միակ կէտը չէ այդ կարգի ժառանգու-

1. Ըստ ընթերցուածոյն Ս. Ղազարու 1184 թուականի օրինակին (Նխդր. Բ)։

2. Առաքելական դարուն իսկ հաստատուած էին եկեղեցական ատեաններ, որոց կը պատուիրէ երթալ Ս. Պաւղոս, փոխանակ արտաքնոց (Ա Կոր. Զ, 1–8). անոնց մէջ կային յանդիմանութիւն, սաստ (Բ Տիմ. Դ, 2), պատուհաս (Ա Տիմ. Ե, 1), սատանայի մատնել (Ա Կոր. Ե, 4–5. Ա Տիմ. Ա, 20), ապաշխարութեան խիստ կանոններ առաքելոց օրով և յետոյ։

թեանց, – կղերին սեպհականութիւն թող-լով դատաստանական իրաւունքը։ Բազ-մաթիւ վկայութիւններ կան զայս հաս-տատող, որոցմէ իբր օրինակ կը բաւա-կանանամ յիշել զոմանս միայն։

Փաւստոս կ՚ըսէ Լուսաւորչի աշակերտ Դանիէլ քորեպիսկոպոսի համար՝ թէ ժա-մանակ մը Եկեղեաց գաւառին «դատաւո-րութեանն» վրայ կարգուած էր (Գ, ժդ)։ — Վռամ՝ Սահակայ հակառակաթոռ ըը-նելով զՇմուէլ, անոր յանձնեց իրաւունքը « կալ ի վերայ... դատաստանաց՝ » ըստ Խորենացւոյն, որ է հսկել բոլոր դատա-վարութեանց, Սրբոյն թողլով ձեռնադրու-թեան մասը (Գ, կե)։ — Փարպեցին կը տրտնջէր առ Վահան Մամիկոնեան՝ թէ ժամանակի չարանախանձ կղերականք լքին զինք ի սպառ, չկարգելով և ոչ «յե-կեղեցւոյ դատաւորութիւնս » (Թղթ. 587)։ — Շահապիվանու ժողովոյն կանոնաց համեմատ՝ բուն դատաւորն էր « եպիսկո-պոսը », որուն պարտաւոր էին յանձնել երիցունք՝ իբրեւ անոր օժանդակներ՝ զյան-ցաւորը զոր գիտէին (կան. ի)։ — Մխ. Գոշի օրով և անոր Դատաստանագրոց մէջ դեռ այդ պաշտօնը կը վարեն երեք աս-

տիճանաւորք, որոց հետ աշխարհականք ալ կը բազմին. «Տեսանեմք, կ'ըսէ նա, զի այժմ ոմանք յեպիսկոպոսաց և ի վարդապետաց և ի քահանայից և ի գլխաւոր աշխարհականաց[1]... Թիւրեն զդատաստան» (Նխդր. Բ, 12)։ Այս բոլորին մէջ եպիսկոպոսն «առաջին դատաւոր» էր (Զ, 31)։ Իսկ հայրապետին համար կ'ըսէ՝ թէ «նա է Գլուխ դատաւորաց եկեղեցւոյ» (82), ճշդիւ համաձայն Խորենացւոյ գրածին։ Այսու միայն կրնանք մեկնել այն հզօր և արեւմտեայց մէջ անծանօթ գերիշխանութիւնը՝ զոր կը գործադրէին մեր կաթողիկոսունք ամբողջ ազգին, նախարարաց ու թագաւորին վրայ, թէ կրօնական և թէ քաղաքական ասպարիզի մէջ։ Միայն պատժական գործը, անպատեհ եկեղեցւոյ պաշտօնէից, կը յանձնուէր իւրաքանչիւր տեղւոյ աշխարհական իշխանին, ինչպէս կ'իմանանք Շահապիվանու ժողովին կանոններէն (Ի)։

Ի՞նչ կը հետեւի այդ բոլորէն։ Այս՝ թէ

1. Զուտ աշխարհիկ ատենի գրութիւնն ալ մտած էր Մխիթարայ ժամանակ մասնաւոր դատերու համար (Ե, 26). և զոր կը յիշատակէ Շնորհալին ևս (Ընդհր. 194–5).

*ըստ որում դատելու պաշտօն ունէին ե-կեղեցականք, այս պատճառաւ իսկ անոնց կը պատկանէր նաեւ երգումն ընդունել այն յանցաւորներէն՝ զորս կը դատէին. և այն՝ սրբավայրին մէջ ու սրբութեանց առջեւ, ինչպէս կը պահանջէր նոյն դա-տաւորաց վիճակը։ Ասոր համար ալ ա-նոնք ոչ միայն աստիճանով, այլ գիտու-թեամբ ու համբաւով եւս արժանաւոր պիտի լինէին այդ պատուոյն, ինչպէս տեսանք վերոյիշեալ պատմական օրինա-կաց մէջ։ Իբր հետեւանք իրենց այս պաշտաման՝ դատաստանական նոյն իրա-ւունքը տարածուեցաւ և այն երդմանց վրայ, որոնք թէեւ կապ չունէին ատենա-կան խնդրոց հետ, բայց սերտիւ զօդուած էին սրբութեանց՝ որոց պահողն ու մա-տուցող էին եկեղեցական դատաւորք. և սոյն իշխանութեամբ ալ կ'ընդունէին ու կը հովանաւորէին բոլոր երգումները։*

-☼-

## Ժ. ՍՏԵՐԴՄՆՈՒԹԻՒՆ

*Այսքան մեծամեծ պատրաստութիւնք և երգումն ահագին ընծայելու ջանքերը՝ զորս*

քննեցինք, արդեօք կը բաւէ՞ն այնպէս ընել՝ որ երդմնողք ճշմարտութիւնը չզոհէին երբեմն իրենց անարգ շահուց։ Դըժբախտաբար ոչ։ Չարութիւնը ոչ մի բանով և ոչ մի ժամանակ կարելի է արմատախիլ ընել ընկերութենէն. այլ միայն սանձել զայն՝ ուր և որքան հնար է։ Եւ կիրթ ու խղճամիտ հոգիներուն քով պիտի գտնուէին միշտ անկիրթներն ալ, որոնք չզգային իրենց վրայ՝ հասարակաց բարոյականի սկզբունքներն յարգելու պարտաւորութիւնը. և արտաքսապէս միայն հպատակելով անոնց՝ առ երկիւղի կամ կեղծաւորութեան, ներքսապէս խաբէին ընկերութիւնը։

Ստերդմնութիւնք տեղի ունէին գլխաւորապէս դատաստանական խնդրոց առթիւ, — չհաշուելով ընկերական յարաբերութեանց մէջ յախուռն կատարուածները՝ զորս դասեցինք Անկանոն երդմանց կարգին։ — Այս երկուքը խառն կը յիշատակէ Մանդակունին, երբ կ՚ըսէ՝ թէ սատանայն ամենուն սովրեցուց «երդմունս ստուս ի հրապարակս, ի վաճառս, ի տունս, յեկեղեցիս» (115). այս վերջինք են ատենական երդմունքը (տես, գ. 1),

*որոնք հարկաւ ծանրագոյն էին իրաւաբանօրէն, այն աւելի կամ նուազ վնասուց պատճառաւ՝ որոց իբր հետեւանք կ'ենթարկուէր զրկեալ կողմը։*

*Պատիժք։ — Ստութեան յայտնութեանը պարագային օրէնքը խստիւ կը պատուհասէր զայն, ինչպէս կ'իմացնէ Ցաճախապատումն իւր հետագայ բացատրութեամբ. «Միշտ սպառնալիք իշխանաց և դատաւորաց առ անխտիրսն ի չարիս, առ սուտս և երդմնաստս, նենգաւորս, գողս, սպանողս» և այլն, «զորս բանտիւք և երկաթի կապանօք և պէսպէս տանջանօք խոշտանգեն և մահ ի վերայ ածեն» (Ը, 74)։ Թէ «երդմնաստք» այդ պատիժներէն ո՛ւմ կ'ենթարկուէին՝ յայտնի չէ։ Ցամենայն դէպս անտարակոյս է՝ թէ ծանրագոյն յանցաւորաց կարգին կը պատկանէին անոնք Ե դարէն իսկ*[1]*։*

*Բնական պիտի լինէր խորհիլ՝ թէ անոնց պատժոյն սաստկութեանը մէջ զանազանութիւն մը լինէր, ստութեան պատ-*

1. *Հռովմէական օրէնքը կը վատահամբաւէր ստերդումը. և մահուամբ կը պատժէր՝ եթէ իւր ստութիւնն անմեղի կորստեան պատճառ լինէր։ Իրաւացի չէ՞ նոյն պարագային համար եւս առնուլ մեր մատենագրին «մահ ի վերայ ածեն» խօսքն ալ։*

ճառած վնասուն համեմատ։ Ըստ հակառակն Մխիթար Գոշ, որ ջանացած է նոյն իսկ հնոց պատուհասները մեղմել (56), տակաւին բաւական ծանր պատիժներ կը սահմանէ ստերդմանց, — հարկաւ ոչ քրէական խնդրոց մէջ, — և ամենուն ալ հաւասար ժամանակով կամ չափով. «Եթէ ստութեամբ իցէ երդումն, կ'ըսէ,... հինգ ամ ապաշխարեսցէ» անխտիր։ Ուրեմն մեղմացուցիչ պարագայ չկայ յաչս իրեն։ Բաց աստի՝ եթէ երդումն էր ընչից համար՝ «որ սակաւ իցէ և ոչ կարի բազում», իւր մեղաց այդ պատճառը ձեռքէն առնլով՝ «աղքատաց տալ հրամայեսցեն» (57)։ — Ուշագրաւ է Մխիթարայ ուրիշ մէկ կանոնն ալ։ Եթէ կրօնաւոր կամ երդման ա՛յլ անընդունակներ (տես, Բ, 2) լինին սուտ երդմնողք, և այն՝ անգիտակցաբար և ակամայ, «զապաշխարութիւնն, կ'ըսէ, նոքա պահեսցեն՝ վասն որոց երդուան». ըստ որում անոնց վկայութեան վրայ միջամուխ եղան նոյն գործին։ Եւ թէ գիտութեամբ է՝ երդմնո՛ղք պիտի ապաշխարեն (58)։ Իսկ ապաշխարութիւնը կը սահմանէ՝ բեմին ներքեւ կամ տաճարէն դուրս կանգնիլ, նայելով յանցաւորին

*զղջման աստիճանին, որոյ համեմատ կարելի է նաեւ ժամանակն ալ երկարել կամ համառօտել*[1] *(անդ)։*

*Այդ պատիժներն էին ըստ արտաքին ատենի։ Իսկ ըստ ներքնոյն՝ դիտել կու տայ Զաքարիա Ծործորեցին, թէ « սուտ երդնուլ» մեղք է, և «դատապարտի» յԱստուծոյ (Թուղթ). հարկաւ երբ անզեղջ մնայ և չքաւէ։ Նոյնը կը հաստատէ Տաթեւացին ալ պատճառաբանեալ լեզուով մը. « ԶԱստուած ի սուտ իրաց վերայ կոչել՝ մեծ հայհոյութիւն է և անթողլի մեղք. զի զԱստուծոյ անունն պատրուակ դնէ, և զսուտն ճշմարիտ երեւեցուցանէ » (հտ. ձմր. 223). և կը յաւելու՝ թէ այնպիսին քաւութիւն չունի՝ եթէ ոչ «ծանր ապաշխարութեամբ վճարեսցէ» (անդ, 16)։*

*

## ԺԱ. ԵՐԴՄՆԱԶԱՆՑՈՒԹԻՒՆ

*Եթէ չարութիւնը ստրդելով մարդուն սրտէն ներս, կարող էր սուտ երդնուլ տալ անոր, անկարելի չպիտի լինէր մղել*

1. *Աթանասի ընծայուած կանոնք սաերդումը քահանայութեան անարժան ցոյց կու տան նոյն իսկ եթէ առ*

զայն նաեւ առ ոտն կոխելու իւր հաճութեամբ կամ տհաճութեամբ տուած երդումը. Թէպէտեւ ամենածանր յանցանք համարուէր այդ բանը բոլոր հեթանոս ու քրիստոնեայ ազգաց մէջ։ Հարկաւ հաւասար չափով չէր գործուեր մեր քով այս զեղծումն ամէն ժամանակ։ Այն շրջանին՝ ուր աւելի երկիւղածութիւն կար հանդէպ կրօնից, ինչպէս զոր օրինակ մեզ քաջածանօթ Ե դարուն (աստ Դ, 4), երդմունքն ալ աւելի ամուր էին ողջամիտ հաւատացելոց սրտին մէջ։ Թէեւ մի և նոյն ժամանակ իսկ բողբոջէին Վասակայ և իրեն ձայնակից տասն իշխանաց նման վատ հոգիներ ալ, որ անխիղճ անցնէին իրենց ուխտին վրայէն (Եղիշ. Դ)։ Եւ ասոնք բացառութիւն չեն այդ դարուն. Մանդակունւոյն սուր սլաքաց նպատակ են ուրիշ «երդմնահարք և երդմնակերք» եւս (112)։

Աղոնք վերջապէս առանձին դասակարգ մ'էին՝ կրօնիւք կամ վարուք ուրացողաց, որոց հետ չէր շփոթուեր ուղղամիտ մե-

հարկի լինի սուտը. «Եթէ առ վշտի նեղութեան ուրուք լինի սուտ երդնուլ քահանայի, և ապա խոստովան լինի և ապաշխարէ մեծաւ զղջմամբ և բազում աշխատութեամբ, լինի՞ քահանայութեան արժանի՝ թէ ոչ. — Պխ. Չէ արժանի» (ԽԸ)։

ծամանութիւնը։ Ընդ հակառակն երդմնազանցութիւնն աւելի տարածուն և հանրային հիւանդութեան մը կը վերածուի այն շրջաններուն, ուր Հայաստան կորուսած էր անկախութիւնը։ Մեր իշխանք այդ ժամանակ սերտագոյն յարնչութեան մը կը մտնէին օտար պետութեանց կամ բռնաւորաց հետ. մանաւանդ չքրիստոնէից։ Եւ թէպէտ շատ դիւրագնի վաճառէին անոնց ազգային ազատութիւնը, բայց կ'ախորժէին ու կը ձկտէին միշտ պահել անձնականը։ Այսու անդադար նիզակակիցներ կը փոփոխէին, յարելով անոնց՝ որ լաւ եւս կ'ապահովէին իրենց իրաւունքները։ Եւ որովհետեւ այդ մերձեցմանց մէջ անպակաս էին երդմունք, անոնց յաճախ խզումներէն ստէպ ալ երդմնադրժումներ կը հետեւէին։ Այսպէս երդումն և անոր զանցառութիւնն անարժան՝ բայց պիտանի՝ որով և ընտրելի միջոց մը կը դառնան տկարին ձեռաց մէջ։ Թող նաեւ դրացի ազգաց չար օրինակը, որոնք այս մասին Հայերէն աւելի պարծելու իրաւունք չունէին. դրժանքն արաբացի ոստիկանաց նախամեծար զէնքն էր նուաճելու մեր իշխանները, և անոր գլխաւոր ուսուցիչն

եղան մերոց։ Իսկ ի՞նչ բան կրնար խափանել օտարաց հանդէպ կիրարկուած յոռի վարժութեան մը մուտքը նաեւ ազգայնոց հետ յարաբերութեանց մէջ։

Եթէ շահը կը թեթեւացնէր երդման ծանրութիւնը մեր նախարարաց, բայց ոչ և այն ազնուական հոգիներուն՝ որոնք ժառանգութեամբ կը պահէին հին հարց բարոյականի բարձրութիւնը։ Սակաւաթիւ, սակայն կային և այսպիսիք։ Ասոցմէ էր Շնորհալին, որ կը դատապարտէր իւր ժամանակի իշխանաց դրժումները, գրելով անոնց։ Եթէ ծանր հարկի մը համար երդնուք, կ'ըսէ, «մի՛ ոք մեղիցէ զանբողլի յանցանան՝ ուրանալով զերդմունս և երդմնազանց լինելով»։ Չարագոյն կը համարի զայս՝ որ կամաւոր է, քան մահուան երկիւղէն կատարուած ուրացութիւնը։ Ոչ միայն առ հաւատակիցս կը պատուիրէ ուխտապահ լինել, «այլ և առ այլազգիս. և մանաւանդ առ նոսա առաւել», որպէս զի քրիստոնէութիւնը չհայհոյեն։ Անոնց՝ որ կ'առարկէին՝ թէ «վասն զի նոքա ստեն երդմանցն որ առ մեզ, պարտ է զի և մեք առ նոսա զնոյնս արասցուք», կը դիմադրէ, պատասխանելով՝

*թէ «չէ մեղս երդումն և նոցայն հաւա-սար. զի մեղս առ ճշմարտութիւնն է, և նոցայն ոչ նոյնպիսի» (Ընդհ. 192-4)։ Եւ հայ եկեղեցւոյ մէջ ծանօթ հին կանոնք ամենախիստ պատիժներ կը սահմանեն անոնց համար[1]։ Երդմնազանցութեանց անխտիր յաճախութիւնը չէ՞ր արդէն՝ որ Ա. Բաժակի գործածութեան նման ծայրայեղ միջոցներու կը մղէր զՀայս իրարու մէջ իսկ (տես, Դ, 10)։*

*Օրինակներ և բարքեր։ — Ասոցմէ մի քանին լաւագոյնս պիտի պատկերացնեն մեզ այլեւայլ դարերու զգացումներն ու հոգեբանութիւնը։ Տեսնենք ուրեմն զանոնք պատմական կարգաւ։*

*Արշակ, որոյ տոհմին քրիստոնէութիւնը կը կայանար լոկ քրիստոնեայ կոչուելուն մէջ, առ Շապուհ տուած հաւատարմական*

1. *Այդ մասին Բարսղի անուանեալ կանոնաց մէջ կը կարդանք. «Եթէ ոք երդմնախոր զտանիցի, տասն ամ առանց հաղորդութեան կացցէ. հինգ ամ լալով և արտասուօք, և չորս ամ առաջի անկանիլ ժողովրդեանն, զտարի մի ընդ այլսն կացցէ, և ապա հաղորդեսցի» (Լ)։ Իսկ նոյն Հօր կեղծ Գ կանոններէն միոյն համեմատ՝ «առ հեթանոսս կամ առ հաւատացեալս» երդմամբ տրուած խաղաղական դաշանց որ և է կերպով դրժմունք՝ «հաւասար են այնոցիկ որ ուրանան զՔրիստոս. պարտ է նոցա զամենայն ժամանակս ապաշխարել, զի կրկին ընկալցին զապանողացն դատաստան» (Մկխ)։*

երդմանը զոր տեսանք՝ դրժեց ու փախաւ։ Շանթացաւ արքայն, կ'ըսէ Փաւստոս. երդուաւ իւր աստուածոց վրայ, թէ «ոչ միում մարդոյ՝ որ յայդմ օրէնս քրիստոնէութեան է՝ ոչ տամ ապրել»։ Եւ գործադրեց ալ սպառնալիքն անոնց վրայ՝ զորս կրցաւ ձեռք ձգել. այս ինքն փախըստականը երդմնեցնող երիցունքը, որոց գլխաւորն էր Մարի, հանդերձ ուրիշ պաշտօնակցօք՝ ընդ ամէնն եօթանասուն հոգի, զորս փողոտել տուաւ փոսի մը մէջ, համարելով զանոնք խաբէակից Արշակայ։ Ի զուր փորձեց Մարի ամոքել պարսկին խժդժութիւնն իւր մաքուր հաւատոց միջնորդութեամբ, ըսելով. «Մեք արդարութեամբ տուաք նմա զերդումն. բայց եթէ նա ստեաց, նոյն Աւետարանն (որոյ վրայ երդուաւ՝) ածէ զնա առ ոտս ձեր»։ Շապուհ զԱւետարանն ալ պատժեց՝ որ չէր խափանած երդմնազանցութիւնը. կապել տուաւ զայն «երկաթի սարեօք» կամ «շղթայիւք», և իւր մատանեաւ կնքելով՝ զգուշութեամբ բանտեց արքունի գանձատան մէջ։ ժամանակ անցաւ. Արշակ կրկին ընկաւ թշնամւոյն ծուղակին մէջ. այն տեղ յիշեց Շապուհ՝ թէ Աւետարանը կա-

տարեց իւր պարտքը. և արդարացուց ըզՄարի։ Ու երդմնադրուժ Արշակունին գնաց քաւելու իւր մեղքը Խուժաստանի Անյուշ կոչուած բերդին մոռացութեանը մէջ, ուր օր մ'ալ դանակով մը խզեց իւր անմխիթար կենաց թելը (Փաւս. Դ, ժզ, ծդ)։

Վարդանանք քարկոծում մը կատարեցին՝ որ շատ կարեւոր պարագայ մ'է մեր խնդրոյն համար։ Հազիւ դարձած անոնք Պարսկաստանէն, կը պատմէ Եղիշէ, երբ շուարած կը սպասէին, գիշեր մը յանկարծ եպիսկոպոսունք Աւետարան ի ձեռին մտան սպարապետին բնակարանը, ուր հաւաքուած կային ուրիշ իշխաններ ևս, և պահանջեցին Վասակայ և մոգերու անկարգութեանց առաջքն առնել։ Ներքին ուժով մ'ոգեւորուած զօրականք, ոտքի ելան համարձակ, վկայեցին՝ թէ «հաստատուն կամք յուխտի սուրբ Աւետարանիս՝» պաշտպանելու Եկեղեցին Պարսից դէմ, ու խնդրեցին աստուածային օգնութիւնն՝ իրենց երդման գործադրութեանը համար։ Անոնց մէջ կար նախարար մը, — Զանգաղան կոչուած փարպեցիէն, — «որ էր ի նոցա խորհրդի», այս ինքն կանխաւ ուխտակից, և որ այն տեղ «ոչ

միաբանեաց ընդ նոսա ի մեծ վկայութիւնն». պարզ ըսել՝ ինք զինքը երդմնազանց ցոյց տուաւ։ Եւ իբր հետեւանք՝ «անդէն առժամայն ի նոցունց ի տեղւոջն քարկոծեցաւ». ի տես որոյ սարսափեցան բոլորը, և «տեսողացն երիկամունքն դողային» (Եղիշ. Գ)։ Չենք կարող եզրակացնել՝ թէ որ և է երդմնազանցութիւն մահուամբ կը պատժուէր։ Բայց ծանր պարագայից մէջ՝ ուր շատերու կամ հասարակաց վնաս կար, ինչպէս է ներկայս, չէին խնայեր սպանութիւնը։ Զայս Վասակ ալ լաւ գիտէր. անոր համար երբ ուխտադրուժ բռնուեցաւ նախարարներէն, պաղատագին կը թախանձէր՝ զի «մի՛ նոքա մարդկաբար սատակեսցեն զնա» (անդ)։

Այսպիսի առթից մէջ Եկեղեցին ալ ունէր իւր դերը, որ գեղեցիկ կերպով կը հանդիսանայ Աշոտ արծրունւոյ օրինակին մէջ։ Սա յետ իւր երդման՝ զոր տուաւ այն դէպքը պատմող Յովհաննէս կաթողիկոսին՝ արձակելու զՀասան, բիւզանդական հայացած խժդժութեամբ մը փորեց երիտասարդին գեղեցիկ աչերը։ Ի՞նչ ընէր «դատաւորաց գլուխը»։ Իւր աստիճանին վայել վրէժխնդրութեամբ մը բանադրեց

զայն. «Իսկ իմ, կ՚ըսէ, զաւետարանական իշխանութիւն ի գործ արկեալ, և ջանիւ սահմանականաւ կայսեր զիշխանն, որդուում թախծանօք անցեալ գնացի»։ Եւ այլ եւս չտեսաւ անոր երեսը։ Սամուելեան բաժանո՛ւմ մը Սաւուղէ։ — Խնդիրն ադով չվերջացաւ. յառաջ տանելով պատմիչը՝ կը խորհրդածէ. «Զի որք երդմանց օրինաց և միջնորդաց հեստեալք և դիւրափոփոխք գտանին,... այնպիսիքն մահու անձանց ուխթ գտեալք՝ ոչ կարեն հաստատուն կեանս իւրեանց ստանալ», անոր համար վատշուէրն Աշոտ տարի մը վերջ յանկարծուստ զրկեցաւ իւր քաղցր արեւէն (ԼԸ)։

Նոյն հայրապետն ի հանդէս կու գայ ուրիշ նման առթի մը մէջ ալ։ Աշոտ Երկաթ՝ հակառակ տուած երդմանը չդըպչելու Վասակայ, չարախօսաց թելադրութեամբ բռնեց զայն ու շղթայակապ պահեց Կայեան ամրոցին մէջ, գրաւելով անոր երկիրը։ Իսկոյն Աշոտոյ քով վազեց արիասիրտ կաթողիկոսը. և «սաստկագոյն բան յանդիմանութեան, կ՚ըսէ, ի վերայ անեալ թագաւորին, պաշարեցի զնա կըշտամբութեամբ մեծաւ՝ վասն ստելոյ ուխ-

տին երդման»։ Երկաթը մոմի պէս կակղացաւ Եկեղեցւոյ գլխոյն առջեւ. բայց իւր կասկածը չփարատեցաւ, ու փորձեց չքմեղել իւր ըրածը. ի վերջոյ ակամայ խոստացաւ արձակել իշխանը, թողլով զՑովհաննէս սպասողական վիճակի մէջ (ԾԹ)։ — Արդար լինելու համար պէտք է ըսել՝ թէ Աշոտոյ այդ գործը երդման արհամարհութիւն մը չէր, այլ բանտարկելոյն մասին անճշդօրէն կասկածուած անհաւատարմութեան արդիւնք։ Յազրատունին ընդ հակառակն անկեղծ երդմնապահ մ'էր նկարագրով՝ որ շատ պայծառ կը ցոլանայ հետագայ օրինակին մէջ։

Անոր աները դրժեց իւր տուած հաշտական երդման ու սկսաւ ասպատակել փեսային սահմանները։ Աշոտ խաղաց անոր դէմ. և եպիսկոպոս մը պատգամաւոր յղեց՝ բողոքելով իշխանին անիրաւ վարման ու երդմնազանցութեանը դէմ։ Սահակ արհամարհեց պատգամաւորը, յառաջ քալեց, և պաշարեց զԹագաւորը բլրակի մը վրայ՝ ուր ապաստանած էր սակաւաձեռն գնդով։ Յազրատունին տեսաւ՝ որ կուին անխուսափելի էր. իսկ իւր երդո՞ւմը։ Գեղեցիկ ցոյց մ'ըրաւ իւր երկիւղածութեանը՝ զոր

*ունէր առ այն։ Հոն իսկ՝ թշնամւոյն դիմաց, կ՚ըսէ Յովհաննէս կաթողիկոս, «տարածեալ գյետկար երդմանն իշխանին առաջի երեսաց Աստուծոյ[1]», այս ինքն երկու ձեռներովը բանալով անոր կնքած մագաղաթը զոր քովը կը պահէր, և բարձրացնելով դէպ երկինք, ըսաւ. «Եթէ ես ինչ սխալեցի կամ ստեցի այսմիկ երդման, հատո՛, Տէր Աստուած, զվնաս ստութեան իմոյ ի գլուխ իմ. և եթէ իշխանն ստունգանեաց սմա, ի նա հատուցեալ զվնաս իւր՝ փրկեա զիս ի տարապարտ մահուանէս՝ զոր նիւթեալ ածեալ են ի վերայ իմ»։ Սովոր էր նա միշտ իւր առջեւէն խաչ մը շրջեցնել՝ բիւզանդական կայսերաց նմանողութեամբ. արդ՝ Սահակայ երդմնագիրն առաւ կապեց վառին կամ «ի գրաստս[2] խաչին սրբոյ՝» որոյ վրայ կնքուած էր իրենց ուխտը. և անոր յանձ-*

1. *Կը յիշեցնէ Հրէից Եզեկիա թագաւորին գործը, որ Սենեքերիմայ սպառնական հրովարտակը «տարածեաց առաջի Տեառն» տաճարին մէջ, և աղօթեց փրկել զինքն ու ժողովուրդն անոր ձեռքէն* (Եսայի, ԼԷ, 14–20)։

2. *Այդպէս է Երուսաղեմեան տպագրին մէջ՝ զոր կը գործածեմ. իսկ Ս. Ղազարու երեք նոտր ու նոր գըրչագրերէն մին ունի «ի գրաստ», և երկուքը «գրաստս»։ Այս ընթերցուածն աղաւաղն է դասական «գրաստ» ձեւին, որ կը նշանակէ զգեստ, Ս. Գրոց գրչագրաց մէջ*

նելով աներոջ երդմնազանցութեան վրէժը լուծել, կանգնեց զայն իւր զօրաց առջեւ, յարձակեցաւ զարկաւ երկաթի բազկովը նենգաւորին բանակը, ձերբակալեց զՍահակ իւր Գրիգոր որդւով. և կուրացնելով բանտեց զանոնք, որպէս զի մի՛ գուցէ կրկին փախչելով՝ տագնապ հասցնէին իրենն. որուն սակայն չհաճեցաւ պատմիչ կաթողիկոսը (կ)։

*

## ԺԲ. ԵՐԴՄՆԱՍԽԱԼ

Ջերմ կրօնասիրութիւնը կամ բարեմըտութիւնն երբեմն անխորհրդաբար երդումներ ընել կու տար հաւատացելոց առ Աստուած կամ առ մարդիկ, որոց պահպանութիւնն իրենց կարողութենէն վեր էր, ունենալով անյաղթելի կամ դժուարաւնուաճելի խոչընդոտներ. և կամ նախկին եռանդեան մարիլէն վերջ՝ յոյժ ծանր էր իրենց ուխտին շարունակութիւնը։ Այսպի-

գործածուած նոյն աղճատ ձեւով եւս (Հրատ. Ջօհրպ. Բ Թագ. Ժ, 4), և փաւստոսէն «դրաստ՝» նոյն իմաստով (Ե, գ). և որ մեր պատմագրին քով կը նշանակէ խաչին կտաւը, Տաթեւացիէն յիշուած և կոչուած համանշաբար նաեւ «զգեստ» կամ «վարշամակ» (Հրց. Ժ, Ե)։

*մէջ կ'ըսուէին երդմնաստեղ. կոչում և վիճակ՝ որոց հանդիպած եմ տօնմային մատենագրութենէն Մաշտոցի մէջ միայն. և որ ինքնին կու տայ անոնց սահմանը, «զմարդոյ բնութիւնս փոփոխական և տըկար» կոչելով աղօթից մէջ, և խնդրելով ներել որոց «յանցգնեցան յերդումն շաղախի՛» զոր չպիտի պահէին։*

*Զաք. Ծործորեցին խիստ և աններող է այսպիսեաց դէմ. և կ'ըսէ՝ թէ «ուխտազանց լինել ի բարոյ (խոստացելոյ) առ Աստուած՝... դատապարտի» (Թուղթ)։ Հաւանօրէն նպատակն էր խափանել սոյնպիսի դիպուածոց յաճախութիւնը, որ զեղծման կրնար տանիլ կամ տարած էր։ — Ոչ նոյնպէս և Եկեղեցին, որ աւելի զիջող ու գթած էր մարդկային տկարութեան, երբ անոր մէջ կանխեալ չարութիւն չկար. և պաշտօնապէս ալ կ'ազատէր ստոյգ երդմնաստեղներն իրենց անհանդուրժելի պարտականութենէն։ Ասո՛ր համար շինուած է Մաշտոցին կանոնը, որ շատ հին է, գըտուելով ԺԱ դարու[1] երիցագոյն օրինակին*

1. *Ըստ իմ հետեւութեան՝ զոր հանած եմ անոր քննութենէն* (*Բազմ.* 1906, *էջ* 155), *հակառակ այլոց Թ դարու ընծայելուն. և որոյ ուրիշ մէկ ապացոյցն է ա-*

*մէջ ալ՝ պահուած ի Ս. Ղազար, սոյն վերնագրով. «Աղաւթք ի վերայ երդմնասխալաց[1]»։*

*Շատ պարզ պաշտօն մ'է, որոյ հետ որ և է արարողութիւն չեն նշանակեր իմ քննած հին ու նոր գրչագիրք։ Երդմնահարը կու գար քահանային առջեւ. և նա կը մատուցանէր հետեւեալ համառօտ աղօթքը. «Աստուած՝ որ զմարդոյ բնութիւնս փոփոխական եւ տկար գիտես, եւ զառ ի մտածութենէ մերմէ խորհուրդս ճշմարտապէս ճանաչես՝ զառ ի խաբէութեանց մերոց եղեալս, որ անոխակալդ ես, արժանաւորեայ թողութեան՝ որք յանդգնեցան յերդումն շաղախիլ. քանզի դու միայն գիտես զգաղտնիս սրտից մերոց։ Խնդրեմք ի քէն՝ թողութիւն սոցա եւ մեզ գտանել քո անճառելի բարերարութեամբդ։ Քանզի աւրհնեալ է անուն քո, եւ փառաւորեալ*

*նոր մէջ յիշուած արգելք մը, որ կապ ունի Ժ դարու դիպուածի մը հետ, զոր պիտի յիշեմ գրութեանս վերջին մասին մէջ (Դ)։ Իմ վկայութիւնքս այդ օրինակէն կ'առնում միշտ հնութեանը համար, թէեւ նոյնպէս կամ նման լինին անոնք յետնագոյն օրինակաց մէջ ալ։*

1. *«Երդմնասխալաց» բառն յետոյ կը փոխուի «երդմնահարաց», ինչպէս կը կարդամ Վանացս* 1216, 1345, 1436, 1450, *և այլ տարիներու օրինակաց մէջ յաջորդաբար։*

*Թագաւորութիւն Հաւր եւ Որդոյ եւ Հո-գոյդ սրբոյ՝ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս. ամէն»։*

*Այսու ազատած էր հաւատացեալն իւր երդմանէն, և կրնար առանց խղճի ապրիլ։*

# ՀԱՅ ԵՒ ՕՏԱՐ ԵՐԳՄՈՒՆՔ

Արեգական տակ նոր բան չկայ, ըսած է Հրէից իմաստունը։ Մարդը, ողջամիտ մարդը, սկսեալ իւր ընկած վիճակէն մինչեւ քաղաքակրթութեան բարձրագոյն աստիճանին վրայ, ունեցած է միշտ մի և նոյն հիմնական սկզբունքները, մի և նոյն կրօնական ընդաբոյս զգացումները. և անոնց արտայայտութեան գլխաւոր ձեւերն ալ փոքր ի շատէ նոյն եղած են ամէն ժամանակ և ամէն ցեղերու մէջ։ Քաղաքակրթութիւնը նրբացուց, և քրիստոնէութիւնն ազնուացուց ու կատարելագործեց զանոնք։

Նոյնը կը տեսնենք և երգման սովորութեանց մէջ։ Ինչ որ տոհմային բարուց քննութիւնը մեր առջեւ դրաւ ցարդ, մեր լոկ սեպհականութիւնը չէին, այլ մեծագոյն մասամբ կային հանուր մարդկութեան մէջ ալ, որոցմէ ժառանգած էին մեր նախնիք։ Այդ ժառանգման մէջ իրենց բաժինն

ունեցած են ներքին բնազդն ու միտքը, դրացի զօրաւոր ազգեր, հեթանոս ու քրիստոնեայ կրօնները, Ս. Գիրքը, և տոհմային կենցաղավարութեան եղանակը։ Այդ ազդակաց իւրաքանչիւրին որոշ բաժինը սահմանել՝ դիւրին գործ չէ. և ոչ ալ՝ թէ արտաքինքն ուղղակի՞ թէ միջնորդաւ ներգործեր են։ Մանաւանդ որ մեր պատմութեան առաջին շրջանները շատ մթին են տակաւին, որոց լուսաւորութենէն կախուած է շատ խնդրոց լուծումը։ Այս պարագային մէջ պիտի շատանամ երդմնական ձեւոց համեմատութեամբ միայն, նիւթ առնլով որչափ ինչ ծանօթ է ինձ։ Զպիտի ցուցնեմ օտարաց բոլոր սովորոյթները, ինչ որ կը հեռացնէր զիս զուգակշռի ծրագրէն. այլ զանոնք միայն՝ որ նմանութեամբ կամ մերձաւորութեամբ աղերս ունին մերոց հետ։

Ա. — Երդումն։ — Աշխատութեանս սկիզբը (էջ 3) նկատեցինք աւետարանական արգելքը երդմնելու, ինչպէս և Ս. Հարց ոմանց խօսքերը, որոնք այդ պա-

տուէրը կ'իմանային որ և է երդման դէմ, նոյն իսկ օրինաւորին։ Ադոնց վրայ կարող էի յաւելուլ ուրիշ շատերն ալ, սկըսեալ երիցագոյներէն, ինչպէս Երանոս, Կղեմէս աղեքսանդրացի, Տերտուղիանոս, Հերոնիմոս և այլք, որոնք ըստ տառին կ'առնուին Յիսուսի արգելքը, որ հետեւեալն է իւր ամբողջութեամբ. «Ասացաւ առաջնոցն, մի՛ երդնուցուս սուտ, բայց հատուսցես Տեառն զերդմունս քո։ Այլ ես ասեմ ձեզ՝ ամենևին մի՛ երդնուլ, մի՛ յերկինս՝ զի աթոռ է Աստուծոյ, և մի՛ յերկիր՝ զի պատուանդան է ոտից նորա, և մի՛ յԵրուսաղէմ՝ զի քաղաք է մեծի արքայի. և մի՛ ի գլուխ քո երդնուցուս...։ Այլ եղիցի ձեր բան՝ այոն այո և ոչն ոչ, զի աւելին քան զայն ի չարէն է» (Մտթ. Ե, 33–37)։ Յակոբոս առաքեալ նոյնը կրկնեց՝ ըսելով. «Եղբարք իմ, մի՛ երդնուցուք, մի՛ յերկինս, մի՛ յերկիր, մի՛ յայլ ինչ երդումն. այլ եղիցի ձեր այոյն՝ այո, և ոչն՝ ոչ» (Ե, 12)։ Քրիստոնեայ մեկնիչք սակայն թէ այս աւետարանական պատուէրը և թէ Ս. Հարց խօսքերն առնուլ ուզեցին սովորական խօսակցութեանց մէջ կատարուած երդմանց կամ երդման-

հարութեան դէմ [1], նկատելով որ օրինաւորը ներուած հին օրինաց մէջ, պատճառ մը չկար աններելի իմանալու նորին մէջ. և թէ Պաւղոս յիշելով Աստուծոյ երդումն առ Աբրահամ, և մարդոց ալ սովորութիւնը, չի պարսաւեր զայն, որով կը հաստատէ (Եբր. Զ, 13–18)։ Եւ ինքն իսկ առաքեալն յաճախ երդման ձեւեր կը գործածէ, «վկայ» կոչելով զԱստուած (Հռովմ. Ա, 9. Բ Կոր. Ա, 23. Փիլիպ. Ա, 8)։

Թէ արդեօք Աւետարանի արգելման և Հարց իմացման մէջ ստուգիւ լռելեայն զանազանութիւն կա՞յ. արդեօք քրիստոնէութիւնը տիրող սովորութենէն չհետեւցո՞ւց զայդ. կամ թէ Պաւղոսի երդմունքն ի զօրացումն իւր վարդապետութեան՝ կը յարմարի՞ն մեր պարագային, և կը մեկնե՞ն ու կ'ամոքե՞ն միւս արգելիչ պատուիրանները։ Հարցումներ են՝ որոց հեշտ չէ պատասխանել։ Կէտ մը կայ սակայն զոր մոռնալու չենք. Եկեղեցին արդարեւ կրնար մեղմել ինչ ինչ աւետարանական օրէնք-

1. Vigouroux, Dict. de la Bible. – Jurement. — Bergier, Dict. de Théo. II. 467. — Goschler, Dict. encycl. XXII, 12.

ներ՝ որոնք վարդապետութեան ոգւոյն չէին մնասեր, առաջնորդուելով հարկէն և ընկերութեան ընթացքէն։ Եւ այսու պիտի չխափանէր զմեզ՝ խուզարկելու նոյն օրինաց նախկին միտքը։ Այս տեսակետիս մէջ շօշափելով խնդիրը, անտեղի չպիտի լինէր ամբողջ իմաստով առնուլ աւետարանական արգելքը, երբ նկատէինք նախ՝ որ Յիսուս ցոյց տալով միանգամայն հին օրինաց անկանոն և օրինաւոր երդումները, «Մի՛ երդնուցուս սուտ, բայց հատուսցես տեառն զերդմունս քո», անխտրաբար երկուքին դէմ ալ կը կանգնէ իւր պատուէրը, «Այլ ես ասեմ ձեզ ամենեւին մի՛ երդնուլ»։ Երկրորդ՝ որ այդ գաղափարն ոչ լոկ փրկչական կամ առաքելական, այլ աւելի ընդարձակ էր և ծանօթ՝ Յիսուսի ոչ հաւատացեալ ժամանակակցաց եւս։ Այսոցմէ էին Եսսենեան հրեայք, շատ մասամբք մերձաւոր քրիստոնէութեան, որոնք բացարձակապէս կ՚արգելուին երդնուլ, բաց ի մէկ առթէ, որ է իրենց աղանդոյն անդամակցելու պահուն միայն (Վիգուր. անդ). երդումն իրենց համար հակառակ էր առաքինութեան և նախատինք Աստուծոյ դէմ[1]։ Ա-

1. Goschler, VIII, 75.

ւելին կայ. Հեթանոս իմաստասէրք ալ, որոնք բնական ողջմտութեամբ կը դատէին բարոյական խնդիրները, այս մասին կատարելապէս համաձայն էին Աւետարանին, Հարց ու Եսսենեանց։ Պիթագոր կռուեցաւ երդմնելու սովորութեան դէմ, նոյն իսկ հարկաւոր գործոց մէջ. իւր աշակերտք լաւագոյն կը համարէին դատ մը կորուսանել՝ քան թէ շահիլ երդմամբ։ Իրենց դպրոցին առածն էր՝ «Մի՛ երդնուր»։ Մենանդր՝ աշակերտ Թէոփրաստի՝ նոյն գաղափարը կը յայտնէ. «Արգիլէ՛ երդնուլ բարի թէ չար դատերու համար [1]»։

Վերջապէս ի՞նչ է երդումը. ապացոյց՝ թէ երդմնողին ճշմարտախօսութիւնը կասկածելի է. թէ նա կարող է և ստել, որմէ իբր նախապահեստ կը պահանջուի երդումը։ Բայց այս բանս նախատինք մ'է անոր. և ոչ շատ վայելուչ նաեւ նկատմամբ Աստուծոյ՝ որ այդպիսւոյն վկայ կը կոչուի, և որոյ սուրբ անունը կ'ենթարկուի երդմնողին հնարաւոր չարաչար գործածութեան։ Այսպէս չէին ուզեր Յիսուս և ի-

1. Daremberg, Dict. des Antiq. - Jusjurandum, 769.

մասստասէրք զմարդը. այլ այնպիսի՝ որ իւր վկայութիւնը ճշմարիտ միայն լինի և անկարօտ երդման փորձին. «Եղիցի ձեր բան այոյն՝ այո, և ոչն՝ ոչ». յայսմ է կատարելութիւնը։ Իսկ երդումը՝ որ կրնայ նախատինք բերել Աստուծոյ, «ի չարէն է»։

Ուրեմն մեր Հարք չէին խաբուեր, երբ աւետարանական արգելքը բացարձակ իմաստով կ՚առնուին, և համամիտ կը հանդիսանային նոյն պատուերին, ինչպէս տեսանք (էջ 3-4, 13-5)։

**Բ. — Երդմնահարութիւն։** — Մէկ ծայրայեղութենէն յաճախ ուրիշ մը կը ծնանի։ Երդման արգելքն հաւանօրէն պտուղն էր այն զեղծմանց՝ որոց ենթարկուած էր այդ նուիրական գործն առ հասարակ ամէն ազգաց մէջ, ինչպէս էր և մեր քով, թէեւ օտարներ չկարենային մրցիլ մեզ հետ, դատելով գոնէ մեր ունեցած վկայութիւններէն։ Եւ եթէ ոմանք ուզեցին բոլորովին խափանել զայն, եղան ալ՝ որ փորձեցին չափ ու սահման դնել անոր, նման մեր Հարց պարսաւելով երդմնահարութիւնը։

Սինէական տասնաբանեայ օրինաց մին էր՝ Աստուծոյ անունը չառնուլ «ի վերայ

սնոտեաց» (Ելք, Ի, 7)։ Ո՛րքան գեղեցիկ պիտի լինէր՝ եթէ ամէն հրեայ պահէր այդ պատուիրանը. ընդ հակառակն ժողովողն իւր օրով կը տեսնէր թէ զանցառուն և թէ պահողը. «որ երդնուն և որ յերդմանէն երկուցեալ է» (Թ, 2)։ Աւելի երկարօրէն կը խօսի Սիրաք, ըսելով. «Մի՛ ընտելացուցաներ զբերան քո ընդ երդումն, և անուանակոչութեան Սրբոյն մի՛ սովորիր»։ Գիտէ և անոր չար հետեւանքները. «Որ երդնուցուն և անուանիցէ հանապազ՝ ի մեղաց ոչ սրբեսցի. այր շատերդումն լցցի անօրէնութեամբ, և ոչ ի բացեայ լիցին ի տանէ նորա հարուածք . . . ։ Եւ եթէ վայրապար ինչ երդուաւ՝ ոչ արդարասցի. զի լցցի տանջանօք տուն նորա» (ԻԳ, 11-14)։ Եւ ցոյց կու տայ՝ մեր Մանդակունւոյն ի տես այնպիսեաց զզուած քստմունքը՝ երբ կ'ըսէ. «Խօսք շատերդմանց ծառ կացուցանէ զհերս» (ԻԷ, 15)։

Հարկաւ նոյնպէս պիտի խորհէր յոյն ողջամիտ իմաստասէրն ալ, առանց կարօտելու հրէական թելադրութեան։ Պղատոն կը զգուշացնէր երդմնեցնել դատեալները, որ մի՛ գուցէ ստերդմնութեան մէջ

ընկնէին. և Աստուծոյ դէմ անարգութիւն կը համարէր անդէպ երդումը (Ցդգ. Օր. ԺԲ, 948)։ — Հնդկաց օրէնսդիրը Մանու[1], զոր ուշադրութեամբ քննած եմ, նոյն հոգին և սկզբունքն ունի. «Ողջամիտ մարդը, կ՚ըսէ, թող բնաւ չերդնու ի զուր, կամ նոյն իսկ չնչին բանի համար, վասն զի զուր երդնողը կորուսուած է միւս և այս աշխարհին մէջ» (Ը, 111)։

**Գ. — Առիթք երդման։** — Երդման ընդդիմացողք եթէ որակով բարձր, բայց թուով շատ տկար էին ընդհանուր մարդկութեան մէջ, որ աւելի դիւրաւ կը հպատակէր սովորութեան քան թէ բարոյական նրբազնին ու տեսական սկզբանց։ Ուստի և երդման սովորոյթն աւելի զօրաւոր հանդիսացաւ միշտ, և այդու իբր օրինաւոր ալ ընդունուեցաւ ամէն ազգերէ։ Եթէ քրիստոնէութիւնը չափով կը գործածէր զայն, ուրիշ կրօնից մէջ ընդ հակառակն շատ աւելի ընդարձակ էր անոր սահմանը։ Հետեւաբար շատ երդմունք՝ որ մեր քով անպատեհ և անկանոն էին, այլոց համար օրինական կը համարուէին։

1. Pauthier, Les Livres sacrés de l'Orient, 331.

1. – *Կենցաղավարութեան մէջ*։ — *Հրէից քով ամենէն աւելի յաճախեալ էին երդմունք, սկսեալ Նահապետաց օրերէն։ Աբրահամ երդմնեցոյց իւր ծառայն՝ երթալ կին բերել Իսահակայ իւր ազգականներէն* (*Ծննդ*. ԻԴ, 2–9)։ *Եսաւ երդմամբ փոխանակեց անդրանկութիւնն Յակոբայ ոսպնաթանին հետ* (*անդ*, ԻԵ, 33)։ *Յակոբ երդում պահանջեց Յովսեփէն՝ քանանացւոց երկրին մէջ թաղել զինք* (*անդ*, ԽԷ, 29–31)։ *Յովսէփ երդմամբ խոստում առաւ իւր տոհմէն՝ իրենց հետ Եգիպտոսէն հանել իւր ոսկերոտին ալ* (*անդ*, 29)։ *Աքաաբ երդմնեցոյց զՄիքիա մարգարէ՝ անկեղծութեամբ պատմել Աստուծոյ հրամանը* (*Գ Թագ*. ԻԲ, 16)։ *Միքայի մայրն համոզելու համար որդին՝ թէ անորմէ ստացած դրամը պահած է, երդումն ըրաւ* (*Դատ*. ԺԷ, 2)։ *Սաւուղ վհուկ կնոջ երդուաւ՝ որ ոչ մի վնաս չպիտի հասնէր իրեն՝ կոչելուն համար Սամուելի հոգին* (*Ա Թագ*. ԻԸ, 10)։ *Աբենների մահուան վրայ Դաւիթ երդուաւ մինչեւ երեկոյ չճաշակել* (*Բ Թագ*. Բ, 35)։ *Նոյն ինքն երդում տուաւ Բերսաբէի՝ թէ անոր որդին Սողոմոն պիտի յաջորդէր իրեն* (*Գ Թագ*.

Ա, 29)։ Ադոնիայի խնդրանաց վրայ՝ կին առնելու զԱբիսակ, եղբայրը Սողոմոն երդուաւ սպաննել զայն (անդ, Բ, 23)։ Սեդեկիա երդմամբ խոստացաւ Երեմիայի՝ չսպաննել զայն երբ պատմէ Աստուծոյ կամքը (Երմ. ԼԸ, 16)։ Եւ Հերովդէս՝ տալ իւր պարանցիկ եղբօրդստեր ինչ որ ուզէ (Մտթ. ԺԴ, 7–9)։ Միով բանիւ՝ անոնց թէ կարեւոր և թէ ամենէն աննշան գործոց մէջ ալ անպակաս է երդումը, գրեթէ ինչպէս մեր քով (սստ, 6–8, 16–27)։

Սոյնպիսի առիթներ աւելի սակաւ, բայց ծանօթ են ուրիշ ազգաց մէջ ալ։ Զոր օրինակ՝ Հռովմայեցիք աշխարհագրին մէջ երդմամբ կը հաստատէին իրենց յօժարակամ ամուսնութիւնն իրենց կանանց հետ, և սեպհական ստացուածոց արժողութիւնը (Դարեմբ. Գ, 771)։ Ժառանգները երդում կու տային իրենց հարց կամքը գործադրելու ճշդով (անդ, 772)։ Երդման կը դիմէին նաեւ երբ կը խոստանային բան մը նուիրել, կամ չվաճառել ուրիշի, և կամ երբ վաճառում մը կ'ընէին (անդ, 771)։ — Յոյներն ալ մի և նոյն սովորոյթներն ունէին . երդումը կը մտնէր և անոնց ժառանգու-

թեանց բաժանման մէջ, փոխատուութեանց ու վարձակալութեան մուրհակաց, առեւտրական պայմանագրութեանց, և հանրային շինուածական յանձնառութեանց մէջ։ Նոյն իսկ սովորական վաճառորդներ երդմամբ կը խաբէին գնորդները, որոց դէմ Պղատոն այնքան կը սրտմտէր, որ կ'ուզէր պատժով չափ խափանել երդումը գործառնութեանց մէջ (անդ, 767-768)։ Կատարեալ նմանութիւն մեր Ե դարու վաճառականաց (աստ, 7), որոցմէ կային Շնորհալւոյն օրով ալ, «սուտ երդմամբ զռամիկսն և զտգէտսն խաբելով» (Ընդհ. 201). ինչպէս և Տաթեւացւոյն ժամանակ, «սովորեալ հանապազ կոչէ զանունն Աստուծոյ ի վերայ ամենայն սուտ բանի. ի յառ, ի տուր, ի գինեվաճառ, ի չափ, ի կշիռ, և յայլն ամենայն» (Քրզ. ձմր. 16)։

Մանուի օրէնքը՝ որ կը չափաւորէ երդման առիթները, չար չի համարիր զայն՝ երբ կատարուի ամուսնութեան խնդրուած աղջկան մը հետ, զոհելի կովի մը սնուցման և նոյն նպատակաւ այրելի նիւթոց, կամ բրահմանի մ'ազատութեան համար (Ը, 112)։ — Ղուրանը[1], զոր նոյնպէս ա-

1. Pauthier, վերոյիշեալ հաւաքածոյին մէջ, 539։

*ուանձին քննութեան նիւթ ըրի, կ՚աւանդէ իւր ժամանակի ոչ մահմետական Արաբաց համար՝ թէ «կ՚երդնուն յանուն Աստուծոյ՝ թէ այն ինչ բանը չեն ըսած» (Թ, 75)․ իբր թեթեւ և անպատեհ երդումն։*

2․ — *Դատաստանի մէջ։ — Ինչպէս մեզ, բոլոր ազգերն ալ սովորութիւն ըրած էին երդնուլ ատենի մէջ։ Մովսիսական օրէնքը սահմանած է՝ թէ ո՛ր պարագային կը լինէր Հրէից քով․ երբ ականատես չկար ամբաստանութեան, ինչպէս տեսանք արդէն մեր մէջ ալ (աստ, 17)։ Այսպէս երբ մէկը դրամ, կարասի կամ անասուն մը կը յանձնէր իւր ընկերոջ ի պահեստ, և որ և է արկածով կորսուէր, «և ոչ ոք գիտացէ», աւանդառուն երդմամբ պիտի հաստատէր իւր անմեղութիւնը (Ելք, ԻԲ, 7–11)։ Նմանապէս երբ այր մը կասկածէր իւր կնոջ հաւատարմութեան վրայ, «և վկայ ոչ գուցէ զնմանէ», անիծից երդման կ՚ենթարկէին զայն (Թիւք, Ե, 11–31)։ — Նոյնպէս էր Հռովմայեցւոց մէջ ալ․ ամէն դատաստանական վէճ երդմամբ կ՚աւարտէր։ Նոյն իսկ վիճող կողմանց դեռ դատարան չգնացած, կարող էին երդմամբ լուծել խնդիրը և խնայել մինչեւ*

*ծախսերը (Դարեմբ. Գ, 773)։ — Մանուի օրէնքը նմանապէս երդում կը սահմանէ երբ «վկայք չկան», որով «դատաւորը չէ կարող կատարելապէս ճանչնալ՝ թէ երկու հակառակորդ կողմերէն ո՛ւմ է ճշմարտութիւնը» (Ը, 109)։ — Վերջապէս նոյն հիմն է և Ղուրանին մէջ. « Անոնք, կ'ըսէ, որ կ'ամբաստանեն իրենց կանայքը, և իրենցմէ զատ վկայ չունին, չորս անգամ պիտի երդնուն Աստուծոյ առջեւ՝ թէ ճշմարիտ կ'ըսեն», և հինգերորդին պիտի տան անիծից երդումը (ԻԴ, 6, 7)։ Բայց կինը պատժէ կ'ազատէ՝ եթէ նոյնչափ և նոյն ձեւով ինքն ալ երդնու՝ թէ ամուսինը կը ստէ (անդ, 8, 9). վասն զի ասով անորոշ վիճակ մը կը գոյանար։*

3. — *Կրօնից համար։ — Հրէից մէջ շատ յաճախ կը պատահին՝ աստուածային օրինաց պահպանութեան համար տըրուած երդմանց։ Դաւիթ կ'ըսէ Սաղմոսաց մէջ. «Երդուայ և հաստատեցի՝ զի պահեցից զամենայն իրաւունս արդարութեան քո» (ՃԺԸ, 106). թէ երբ՝ յայտնի չէ։ Ասա թագաւորն երդում պահանջեց Յուդայի և Բենիամինի ցեղերէն՝ հաւատարմաբար ծառայելու Աստուծոյ և սպան-*

նելու ով որ չդառնար առ Աստուած (Բ Մնաց. ԺԵ, 12–15)։ Նոյն ուխտը կատարեցին Հրեայք Նեեմեայ օրով ալ (Թ–Ժ)։ Բենիամինի ցեղն ոճիր մը գործեց յանձին ղեւտացւոյ մը հարճին. Իսրայելացիք միացան՝ կոտորեցին անոցմէ շատեր, և երդուան հարս չտալ անոնց այնուհետեւ (Դատ. ԻԱ, 1)։ Եզր երդմնեցոյց Հրէից իշխաններն՝ արձակել իրենց այլազգի կանայքը, զոր առած էին հակառակ օրինաց (Ա Եզր. Ը, 97)։ Նեեմի եւս երդում պահանջեց անոցմէ՝ ամուսնութիւն չկնքել հեթանոսաց հետ (ԺԳ, 25), և Հրէից կալուածները փրկանաւորել անոցմէ (Ե, 12)։ — Յունաց մէջ երբ պատանին չափահաս կը լինէր, կ'երդնուր չանպատուել իւր զէնքերը, չլքանել պատերազմակիցը, կռուել իւր աստուածոց ու տան, և հայրենեաց մեծութեան համար, և մեծարել հարց կրօնքը (Դարեմբ. Բ, 624–5)։ — Ո՞չ ապաքէն այս բոլորը կը յիշեցնեն Վարդանանց ու Վահանեանց երդմունքը (անդ, 17–20)։

4. – Դաշանց մէջ։ — Ազգաց կամ անհատից միջեւ երդմամբ կնքուած համաձայնութիւնք շատ յաճախեալ էին ինչ-

պէս մեր (տես, 20–2), նոյնպէս ուրիշ ազգաց քով ալ։ Հրէից նահապետն Աբրահամ և Գերարայի թագաւորն Աբիմելէք՝ խաղաղութեան երդում տուին իրարու (Ծնդ. ԻԱ, 23). նոյնպէս ըրին Իսահակ և նոյն Աբիմելէք (անդ, ԻԶ, 30), և Նաքովր ու Յակոբ (անդ, ԼԱ, 51–54)։ Յեսուայ օրով Հրէից իշխանք գաբաւոնացւոց երդուան չկոտորել զանոնք (Յես. Թ, 15)։ Յովնաթան ու Դաւիթ յաւերժական հաւատարմութիւն երդուան իրարու (Ա Թագ. Ի, 42)։ Եւ Նաբուքոդոնոսոր թագաւորեցընելով զՍեդեկիա՝ հաւատարմական երդումն առաւ անորմէ (Բ Մնաց. ԼԶ, 13)։ — Յոյն պետութիւնք Տրոյիոյ վրայ երթալու ժամանակ երդմամբ ուխտեցին իրարու չդառնալ՝ մինչեւ որ զայն չկործանեն (Իլիակ. Բ. 286–8, 339)։ Ամփիկտիոնեան կամ Ելլադական ատենի անդամք ժողովի չմըտած՝ կ'երդնուին չվնասել իրենց պաշտօնակցաց, իրենց քաղաքաց վնասողաց դէմ պատերազմիլ, վրէժ խնդրել Դեղփիսի մեհենին կողոպտողներէն (Ռոլէն, Հնախ. Բ, 574)։ Եւ վերջապէս հելլենաց բոլոր դաշինքները սովորաբար փոխադարձ երդմամբ կ'ամրապնդէին (Դարեմբ. Բ, 1208)։

— Հռովմայեցիք չէին զանազանիր Յոյներէն այս մասին։ Կիկերոն կը յիշատակէ «զինակցութիւնքն ու դաշինքը՝ յորում կը կապենք զմեզ երդմամբ, նոյն իսկ մեր թշնամեաց հետ» (Յղգ. Պշտ. Գ, լա). և Տիտոս Լիւիոս աղոր երդմնաձեւն ալ կ'աւանդէ (Դարեմբ. Գ, 770)։ — Ղուրանին ալ ընդունելի են «դաշնակցական երդմունք» մահմետականաց և այլակրօնից մէջ իսկ (Թ, 7–12), կոչուած նաեւ «հաւատարմութեան երդումն», զոր տուողք իբրեւ թէ «կը մատուցանեն Աստուծոյ» (ԽԸ, 10)։

5. – Հաշտութեան երդումն։ — Այնչափ շատ են ասոր օրինակներն այլոց քով, որչափ մեր (աստ, 22–3)։ Հրէից մէջ. Սաւուղ թշնամի և հետամուտ Դաւթի, հաւանելով Յովնաթանայ աղաչանաց՝ երդուաւ այլ եւս չսպաննել զայն (Ա Թագ. ԺԹ, 6)։ Սեմէի նոյն երդումն ստացաւ Դաւթէ՝ զոր նախատած էր (Բ Թագ. ԺԹ, 23)։ Սաւուղ պահանջեց Դաւթէ երդում՝ խնայելու իւր տան՝ երբ թագաւորէ (Ա Թագ. ԻԴ, 22)։ Յետ պատերազմի մը՝ պարտեալ-այլազգիք երդուան Դաւթի այլ եւս զէնք չառնուլ իրարու դէմ (Բ Թագ.

ԻԱ, 17)։ *Հրէից իշխանք ամրացած բերդերու մէջ, երդումն ընդունեցան Անտիոքոսէ և անոր իշխաններէն, և ապա դուրս ելան* (Ա *Մակ.* Զ, 61)։ *Նոյն պայմանաւ Ոնիա եւս անձնատուր եղաւ Անդրոնիկոսի* (Բ *Մակ.* Դ, 34). *Ճիշդ մեր Հասանայ և Սմբատայ պարագայն* (*աստ*, 66)։ — *Յունաց մէջ ալ կը տեսնուին նոյնպիսի երդմունք թէ անհատից և թէ քաղաքական կուսակցութեանց միջեւ. Աքիլլեւս և Ագամեմնոն, Ոդիսեւս և իւր սպանելոց ազգականք, Հերակլէս և Նեղէոսի որդիք՝ երդմամբ հարթեցին իրենց վէճերը. Թեսէոս և Պիրիթոյոս անեղծ բարեկամութիւն երդուան իրարու* (*Դարեմբ.* Գ, 767)։ *Թեսպացիք, Միտիլենացիք, Մեգարացիք և Աթենացիք՝ իրենց կուսակցական ներքին պայքարներուն վերջ տուին երդմամբ. Նոյնպէս աւարտեցան դաշնակից քաղաքաց մէջ պատահածներն ալ, ինչպէս Աթենացւոց ու Քաղկիդացւոց, Մագնիսացւոց և Զմիւռնացւոց մէջ, և այլն* (*անդ*, 753–4)։

6. – *Հպատակութեան երդմունք*։ — *Կրնանք բաժնել զանոնք երեք դասակարգի*։ *ա*, *Հպատակաց առ իշխանս տուածը*։ *Տեսանք մեր Բագրատունեաց ընդունած*

երդումն իրենց օծման ժամանակ. և ըստ թէ Արշակունեացն անյայտ է (աստ, 25)։ Փաւստոս կը պատմէ՝ թէ ուրացողն Մեհրուժան յարելով Շապհոյ, «դնէր ընդ նմա ուխտ երդմամբ՝ զի յաւիտեան ծառայ լիցի նմա» (Դ, իգ)։ Արդեօք մեր նախարարք նոյնպէս չէի՞ն ըներ իրենց բնիկ թագաւորին ալ. — Թէև Փաւստոս նոյնը չաւանդէ Շապհոյ՛յարող միւս հայ իշխանաց մասին ևս (Դ, ծ)։ — Բայց գոնէ Պարսից սովորութեան համար բաւական ապացոյց է այդ։ Նոյնը ծանօթ է ուրիշ հին ազգաց մէջ ալ։ — Հրէից թագաւորաց տրուածը կը յիշէ ժողովողը (Ը, 2)։ Յովիդայէ քահանայն երդնուլ տուաւ ժողովրդեան՝ Յովաս արքային (Դ Թագ. ԺԱ, 4)։ Նոյնպէս վարուեցան նաև Գոթողիայի հետ, երբ իշխան կարգեցաւ Բաբելացւոց կողմանէ (անդ, ԻԵ, 24)։ — Յունաց հին բռնաւորք կամ թագաւորք ալ հնազանդութեան երդում կ՚ընդունէին իրենց հըպատակներէն ։ Սպարտացւոց զինուորք նոյնը կու տային իրենց թագաւորին. և աթենացի զինուորք՝ Երեսուն իշխանաց (Դարեմբ. Գ, 754)։ — Հռովմայեցւոց քով ևս կը յիշուի նոյնը. սամնիացի զինուորք

կ՚երդնուին պատերազմի երթալ ուր և տանին զօրագլուխք. չփախչիլ անկից, և փախստական ընկերն սպաննել (Ռուլէն, Պատմ. Հռմ. Բ, 93)։ — Ղուրանն ալ մի և նոյնը կը հաստատէ, ըսելով մարգարէին. «Անոնք (հաւատացեալք) երդուան յանուն Աստուծոյ՝ երդմանց ամենէն մեծաշուքը, որ եթէ դու հրամայես իրենց դիմել ի մարտ՝ պիտի ընեն». թէ և այս քանիս համար երդումն աւելորդ կը համարի (ԻԴ, 53)։ — Այս զինուորական երդման համեմատութիւնն եւս կատարեալ է մեր և օտարաց մէջ. հայ զինուորք ալ հնազանդութեան երդումն կու տային մեր իշխանաց՝ ըստ Շնորհալւոյն, որ կը յորդորէ զանոնք չզեղծանիլ իրենց իշխանութեամբ և երդմնազանցութեան պատճառ չտալ անոնց (Ընդհ. 191–2)։

բ. Տեսանք մեր Ռուբինեանց երդումն՝ օրինաց պահպանութեան վրայ (աստ, 26)։ Լաւ, աղոր օրինակները կան նաեւ Յունաց քով։ Աթենացի ատենակալք կ՚երդնուին վարիլ ըստ օրինաց, պաշտպանել ժողովրդեան իրաւունքները, մերժել իրենց տրուած պարգեւները, անաչառութեամբ դատել ։ Աթենացւոց ժողովոյն անդամք

նոյնպէս երդում կու տային իրենց պարտուց հաւատարիմ կատարման համար (Դարեմբ. Գ, 755–6)։ Ոչ միայն իշխանաւորք, այլ բոլոր աթենացի զինուորք և քաղաքացիք եւս պետական օրինաց պահպանութեան վրայ կ'երդնուին (նոյն, Գ, 753)։ Նմանապէս չափահասութեան մտնող ամէն յոյն երդմամբ կը խոստանար ի մէջ այլոց՝ հպատակիլ դատաւորաց, ժողովրդեան սահմանած ու սահմանելի օրինաց (նոյն, Բ, 625)։ — Հռովմայեցւոց մէջ նոյնը կը տեսնենք. ատենակալք պարտաւոր էին իրենց ընտրութեան առթիւ հաւատարմութիւն երդնուլ օրինաց, իսկ միապետութեան օրով՝ կայսեր վեհոց (Դարեմբ. Գ, 770, 771)։ Նոյն երդումը կու տային և հիւպատոսք[1], համարակալք. ծերակուտականք՝ երբ խնդրոյ մը համար քուէարկութիւն պիտի լինէր (անդ, 771). դատաւորք ամէն դատի սկիզբը կ'երդնուին ճշմարտութիւնը փնտռել և յարգել օրէնքը (անդ, 775)։ — Այս գաղափարն ու ձեւը, այս ինքն գերագոյն իշխանութիւն համարել օրէնքը և անոր երդնուլ, քաղաքակիրթ ազ-

1. Darsy, Dict. gén. de Biogr... – Serment.

*գաց միայն յատուկ էր, ինչպէս կը տեսնենք։*

*գ. Պայմանական կամ փոխադարձ երդում մ'ալ կար Յունաց մէջ, որ արդիւնք էր իշխանութեան լաւագոյն ըմբռնողութեան, և ապահովութիւն հասարակաց իրաւանց՝ բռնապետական ոտնձգութեանց երեսէն։ Մինչդեռ սպարտացի թագաւորք կ'երդնուին կառավարել ըստ կարգեալ օրինաց, քաղաքն ալ երդում կու տար հաստատուն պահել թագաւորութիւնը՝ ցորչափ իշխեցողք հաւատարիմ մնան իրենց ուխտին։ Նոյնպէս կ'ընէին Եպիրոսի թագաւորք, Աթենայ արքոնտք և այլք (անդ, 754)։ Պերգամոսի թագաւորք ևս ընդունելով զօրաց հպատակութեան երդումը, ապա և իրենք կ'երդնուին իրենց պարտաւորութեանց վրայ (անդ)։ — Եթէ լսենք Դարդելի, մինչդեռ մեր Ռուբինեանք կ'երդնուին օրինաց վրայ, ժողովուրդն ալ կը շարունակէր արքային երդնուլ, որ սակայն կրնայ սովորական չլինել, ըստ որում չէ յիշուած թագաւորօրհնէից մէջ. այսպէս Լեւոն Ե հազիւ ընտրուած, Հայք «կամէին առժամայն տալ նմա և ուխտս հաւատարմութեան» (Հդ). և որ յետաձր-*

*գուելով՝ տուին ապա Սսոյ պաշարման պահուն, — եթէ սա երկրորդ դիպուած մը չէր, — երդնլով «լինել բարի և հաւատարիմ», և քրիստոնէաբար ապրիլ, ինչ որ նախ թագաւորն ուխտեց և ապա ազգը (անդ, ՂԴ)։*

*Դ. — Երդմնողք։* — 1. *Տեսանք՝ թէ այլազան կրօնից պատկանողք իրարու երդում կու տային իւրաքանչիւրն իւր կրօնից համեմատ (անդ,* 27)*։ Նոյն էր նաև Հրէից համար ալ, որոց արգելուած էր երդնուլ ուրիշ աստուածոց վրայ՝ բաց ի Եհովայէն, ինչպէս պիտի տեսնենք յետոյ. հակառակ պարագային կռապաշտ կը համարուէին։ Այսպէս Նաբուքոդոնոսոր ըզՍեդեկիա երդմնեցուց «յԱստուած իւր», ոչ եթէ Բաբելոնի կռոց վրայ (Բ Մնաց.* ԼԶ, 13)։

2. *Հասակի խնդիրն Յունաց մէջ կը զանազանէր. Մխ. Գոշի անպայման արգելքը տղայոց մասին (անդ,* 29) *մեղմ էր անոնց մէջ, որոց տղայք կրնային երդնուլ երբ շահու վերաբերեալ էր վէճը (Դարեմբ. Գ,* 773)*։* — *Աւելի բարդ էր սեռի խնդիրը։ Յունաց քով կանայք ճիշդ տղայոց դիրքն ունէին (անդ). միայն քանի*

մ՚առթից մէջ կարող չէին երդնուլ. իսկ անոցմէ դուրս պարտաւոր էին անոնց փոխան երդում տալ իրենց ամուսինք (անդ, 766)։ Հրէուհիք կ՚երդնուին երբ կասկած ծագէր իրենց հաւատարմութեան վրայ, ինչպէս վերեւ ալ տեսանք։ Նոյնպէս երբ ուզէին տրամադրել ընչից վրայ, պայմանաւ որ իրենց հարք կամ ամուսինք հաւան լինէին. հակառակ պարագային երդումը չէր զօրեր. մինչդեռ անջրելի էր այն՝ երբ երդմնողն այրի էր կամ արձակուած (Թւք, Լ, 4–16)։ Հետեւաբար հայ կանանց երդմնելու իրաւունքն աւելի ընդարձակ էր (աստ, 29)։ — Վիճակն ալ երբեմն խտրականութեան պատճառ էր. ի Հռովմ՝ Արամազդայ քրմապետին արգելուած էր երդնուլ. անոր համար իւր կողմէն ուրիշ մը պիտի ընէր նոյնը՝ եթէ հարկ լինէր (Դարեմբ. Գ, 770)։ Այս կրօնից պաշտօնէին, ինչպէս և երդմնելու անյարմար Հելլենուհեաց արգելքն ու փոխանակութիւնն՝ ո՞չ ապաքէն նախանկար օրինակն է մեր մէջ տեսնուած համանման օրինաց (աստ, 30)։

3. Գալով դատաստանին, Յոյնք կ՚երդմնեցնէին մերթ վիճող կողմանց մին միայն,

և մերթ երկուքն ալ. բայց աւելի յաճախ՝ ամբաստանեալը. և այս զանազանութիւնը կախումն ունէր երդմնողին նոյն խնդրոյն մէջ ունեցած հանգամանքէն (Դարեմբ. Գ, 763), ոչ եթէ թողուելով լոկ դատախազին կամ առաւել ճշմարտախօսին, ինչպէս էր մեր մէջ (աստ, 30)։ — Հռովմայեցիք ի սկզբան կ'երդմնեցնէին ամբաստանեալը, որ սակայն կարող էր նոյն գործը թողուլ և չարախօսին (Նոյն, Գ, 773)։ Իսկ դատաստանական կազմակերպութենէն վերջ երդումն ազատ էր, և ինչ ինչ երկրորդական խնդրոց մէջ կը թողուէր մէկ կամ միւս կողման, մինչդեռ դրամական և այլ կարեւոր խնդրոց մէջ ստիպողական էր և յատուկ ամբաստանելոյն (անդ, 774–5)։ — Մովսիսական օրէնքը կ'երդմնեցնէր անհաւատարմութեամբ ամբաստանեալ կինն իսկ. և Ղուրանին համեմատ՝ նախ դատախազ այրը կ'երդնուր, ապա կինը, ինչպէս տեսանք վերեւ։ — Հին գերման օրէնքը կու տար երդումը գլխաւորապէս ամբաստանելոյն, պաշտպանելու համար իւր անձը։ Կը միջամտէին անոր ազգականներէն ազատ և անստգիւտ ծանուցուած մարդիկ եւս, որոնք երդմամբ կը հաստա-

տէին անոր տուածին ճշմարտութիւնը, և կը կոչուէին երդմնակիցք (Գոշլ. ԻԲ, 27)։ Այս պարագայն անծանօթ է մեր և այլոց քով։ — Վերջապէս կար վկայից երդումն ալ, յիշուած Հրէից մէջ միայն՝ իբրեւ սովորական բան մը (Ղեւտ. Ե, 1. Առակք, ԻԹ, 24), մինչդեռ անծանօթ է ուրիշ ազգաց. թէեւ գերմանական երդմնակցութիւնը կարենայ նոյնանալ ասոր հետ։

**Ե. — Տեղիք երդման։** — 1. Տեսանք մեր մէջ իբրեւ առաջին վայր դատաստանական երդման՝ եկեղեցին (աստ, 31)։ Նոյնն ուրիշ քրիստոնէից ալ սեպհական կ'երեւի. գոնէ Գերմանացիք Ը դարուն արդէն օրինապէս հետեւող են սոյն սովորութեան (Գոշլ. անդ)։ — Սակայն ասոր ծագումն աւելի հին է, Աւետարանէն ալ հին։ Մովսիսական օրինաց համեմատ ինչ ինչ երդմունք կը տրուէին «վկայութեան խորանին» մէջ, որ էր ժամանակի սրբավայրը, ինչպէս կասկածելի կանանց երդումը (Թիւք, Ե, 15-17...)։ Նոյնպէս՝ ստացուած աւանդը գողցնողը պիտի երթար «առաջի Աստուծոյ» երդնուլ իւր անմեղութեան համար (Ելք, ԻԲ, 8)։ Յետոյ Երուսաղեմի մէջ տաճարին դրան առջեւ կը

դատէին, ուստի հարկաւ հոն ալ կ'երդմնցնէին յանցաւորները (Երեմ. ԻԶ, 10–11)։ Եւ Յովիդայէ տաճարին մէջ երդմնեցուց Հրեայքը հնազանդիլ Յովասայ (Դ Թագ. ԺԱ, 4), ինչպէս Հայք կ'ուխտէին իրենց թագաւորին (աստ, 32)։ — Ինծ այնպէս կը թուի՝ թէ քրիստոնէութիւնն ու հրէութիւնն այդ սովորութիւնը հեթանոսութենէ առին, որոց քով ալ համեմատաբար հնագոյն դարուց՝ նոր էր այն[1]. և որոնք կ'երդնուին մեհենաց մէջ կամ բագնաց վրայ։ Մեզմէ իսկ սկսինք քննել։ Տակիտոս կը պատմէ՝ թէ մեզ դրացի և յաճախ իշխեցող Պարթեւք երդում կու տային «ի վերայ դիցն բագնաց» (ԺԱ, բ)։ Նկատելով անոնց ու մեր մերձաւորութիւնը սահմանակցութեամբ, ազգականութեամբ և «նմանակցութեամբ բարուց», զոր կը շեշտէ նոյն պատմիչը (ԺԳ, լե), անտեղի չպիտի լինի հետեւցնել՝ թէ Հայք ալ Լուսաւորչէն յառաջ նոյնպէս կ'երդնուին։ — Նոյնը կը տեսնենք ուրիշ ազգաց մէջ ալ. ո՞վ չգիտէ Աննիբաղայ Հռովմայեցւոց դէմ հանրածանօթ երդումը, կանգնած

1. Dict. des Moeurs. - Serment. — Nuova Encicl. - Giuramento.

բագնին առջեւ և ձեռնը դրած զոհին վրայ։ Զափահաս Հելլէնք կ'երդնուին Ակրոպոլի կողին զետեղուած Ագլաւրի տաճարին մէջ (Դարեմբ. Բ, 624). և քրմուհիք՝ Ապողոնի մեհենին մէջ (անդ, Գ, 758)։ Նոյնպէս յԱյենոս կալուածոց գնման երդմունք կը կատարուէին սեղանին առջեւ (անդ, 768)։ — Սամնիացիք կ'երդմնեցնէին իրենց զինուորները սեղանոց քով, որոց վրայ զոհեր կային (Ռոլէն, Պատմ. Հռ. Բ, 93)։ Ենէականին մէջ Ենէաս ու Լատինոս կ'երդնուն նոյնպէս բագնի մը քով (ԺԲ, 176), որոյ մէջ կը տեսնենք հռովմէական սովորութիւնը՝ երդմնելու առտնին կամ որ և է աստուծոյ մը սեղանին վրայ (Դարեմբ. Գ, 771)։ Եւ Հռովմայեցի նորընտիր հիւպատոսք իրենց երդումը կու տային կապիտոլեան Արամազդայ տաճարին հանդէպ (Դարսի, բոր. 2606)։ — Վերջապէս Ղուրանն ալ երդման ընտրելագոյն տեղին կը համարի «սուրբ աղօթարանին մօտ», որով աւելի հաստատուն կը լինէր (Թ, 7)։

2. Մեր միւս երդմնավայրն էր ատեանը (աստ, 33)։ Բայց այդ միայն մերը չէր. երբ Հրէից դատաստանք կը կատարուէին սովորաբար քաղաքաց դրանց առջեւ ա-

նոնց ընդարձակութեան համար[1], և թագաւորը կը դատէր իւր պալատան գաւթին մէջ (Գ Թագ. Է, 7), կը հետեւի թէ նոյն վայրերու մէջ ալ կ՚ընդունէին երդումը։ — Գերմանացիք նախ քան իրենց քրիստոնէութիւնը կ՚երդմնեցնէին մահապարտութեան հրապարակին մէջ (Գոշլ. ԻԲ, 27)։

3. Կենցաղավարութեան սովորական պատահարներուն ինչպէս մեր հարքը (աստ, 34), ուրիշ ազգերն ալ կը հարկադրէին երդում տալ յաճախ և առանց խտրութեան տեղւոյ։ Յակոբ Նահապետ Նաքովրայ երդուաւ լերան մը վրայ (Ծննդ. ԼԱ, 54)։ Հրէից առտնին կամ ընկերական կենաց մէջ այն շատ յաճախ պատահած երդումները՝ զորս տեսանք վերեւ, բնականապէս կը տրուէին ուր որ հանդիպէր։ Սաւուղ երդուաւ կախարդին տան մէջ (Ա Թագ. ԻԸ, 10). Դաւիթ և Յովնաթան՝ անդի մը մէջ (Ա Թագ. Ի, 42). դարձեալ Դաւիթ՝ իւր ապարանից մէջ (Գ Թագ. Ա, 29). Հրեայք Նեեմեայ օրով՝ «ի բարձրաւանդակ տեղւոջ» (Նեեմ. Թ, 3), և այլն։ — Նոյն

1. Բ Օր. ԻԱ, 19. – Հոբ. Դ, 1. – Սղմ. ՃԻԶ, 5. – Ամովս, Ե, 10, 12, 15.

զանազանութիւնը կը տեսնենք և Ցունաց քով. անոնց երդմունք մեծագոյն մասամբ կը կատարուէին ուր որ պատահէր (Դարեմբ. Գ, 751). Դոլոն, Ագամեմնոն և Աքիլլևս կ'երդնուն իրենց բանակին մէջ (Իլիակ. Ժ, 329. ԺԹ, 258. ԻԳ, 43). Աորիդէս՝ դաշտի մը մէջ (անդ, Գ, 276). Աքայեցիք՝ ծովափին վրայ (անդ, Բ, 333), և այլն, ուր չկան ոչ տաճարք, ոչ բագինք։ — Վերջապէս կը համաձայնի այլոց հետ հռովմէական սովորոյթն ալ. Վիրգիլիոս երդնուլ կու տայ Ցուլոսի՝ պատնիշի մը մէջ ի դաշտավայրի (Են. Թ, 230)։ Ատենակալք իրենց պաշտօնէն հրաժարելու պահուն կ'երդնուին հրապարակային բեմի մը վրայ (Դարեմբ. Գ, 770), և այլն։

Ջ. – Սրբութիւնք։ — Ինչպէս մեր՝ նոյնպէս բոլոր ազգաց մէջ զօրեր է առաքելական սկզբունքը, թէ «մարդիկ՝ որ ինչ ի վեր է քան զինքեանս՝ յայն երդնուն» (Եբր. Զ, 16)։ Եւ «ի վեր» համարուած են, ճիշդ ինչպէս մեր քով, հոգեղէն ու մարդկեղէն յարգելի էակներ, և ադոնց հետ կցորդուած կամ մերթ համազօր կարծուած անշունչ ու գաղափարական իրեր։

1. Մարդկութեան՝ եթէ ժամանակաւ ոչ առաջին, բայց պատմականօրէն հնագոյն կրօնքը՝ տեսանելեաց կամ երկնաւոր ու երկրաւոր տարերաց պաշտօնն էր. ուստի և ասոնք ալ էին երդմանց երիցագոյն ու մնայուն վկայք ամէն ժողովրդոց մէջ, թէ այն շրջանին՝ յորում իբր աստուած կը պաշտուէին, և թէ երբ կամ ուր կորուսած էին այդ պատիւը։

Սկսելով մեր հեթանոսութենէն, Խորենացին կը պատմէ՝ թէ Հիւրկանոսի խնդրանօք Բարզափրան ռշտունի «երդնու նմա յԱրեգակն և յամենայն պաշտամունս իւրեանց երկնայինս և երկրայինս» (Բ, ժթ), առանց մանրամասնելու այդ տարրեղէն աստուածութիւնքը. և յորում պատմական ճշդութենէ աւելի՝ Հայոց սովորոյթը կը նշմարենք մեք։ Տեսանք՝ թէ այդ հին ձևէն դեռ մնացած էր Մանդակունւոյն օրով երդումն «յԱրեգակն և ի Լուսին և յԱստեղս» (աստ, 8)։ — Մեզ ծանօթ է նաև մեզ երբեմն կրօնակից ու դրացի Պարսից երդումն Արեգական, Ջրոյ և Կրակի վրայ (անդ, ծան.)։ — Աւելի բազմաթիւ էին Յունաց վկայ կոչած աստուածութիւնք կամ սրբութիւնք. Հոմերի քով Հերայի երդման

*կը կոչուին Երկիրը, Երկինքը, և դժոխոց Ստիքս գետը՝ «որ ահաւորն է յերդմունս» (Իլիակ. ԺԵ, 36–7)։ Ագամեմնոն կ'երդնու Երկրի և Արեգական վրայ (անդ, ԺԹ, 258–9)։ Դեմոսթենէս՝ Երկրի, Աղբերաց և Առուակաց վրայ (Դարեմբ. Գ, 749)։ — Նոյն բարքերը կը գտնենք և Հռովմայեցւոց քով. Վիրգիլիոս Ենէասայ վկայ կոչել կու տայ Արեգակը, Երկիրը, Աղբիւրներն ու Գետերը (Ենէակ. ԺԲ, 181, 186). և Լատինոսի՝ Երկիրը, Ծովն ու Աստղերը (անդ, ԺԲ, 203–4)։ — Հրեայք ալ՝ անշուշտ հեթանոսութենէ փոխ առած՝ կ'երդնուին Յիսուսի օրով Երկնից ու Երկրի վրայ*[1], *ինչպէս տեսանք աւետարանական վկայութեանց մէջ (տես, 103)։ — Սկիւթացիք վկայ կը կոչէին Օդը և իրենց Վաղակաւորը. առաջինն աստուածութիւն կենաց, և երկրորդը՝ մահու (Նոր Հնրգիտ.— Երդ.)։ — Զինուց վրայ երդումը կար ուրիշ պատերազմիկ ժողովրդոց մէջ եւս. այդ էր Գերմանացւոց սովորոյթը քրիստոնէու-*

1. *Թէև աղոր մէջ ուրիշ իմաստ կար ըստ Յիսուսի, քան հեթանոսաց մէջ. «Որ երդուաւ յերկինս, երդնու յաթոռն Աստուծոյ և յայն որ նստին ի վերայ նորա» (Մտթ. ԻԳ, 22). «և մի՛ յերկիր (երդնուլ), զի պատուանդան է ոտից նորա» (անդ, Ե, 34)։*

թենէն յառաջ (Գոշ. ԻԲ, 27)։ — Տեր-
տուղիանոս կ'ըսէ՝ թէ Հռովմայեցիք «կ'երդ-
նուն իրենց Դրօշներուն վրայ» (Ջատ. ԺԶ)։
— Հնդկաց մէջ ալ կը հանդիպինք աղօր,
դասակարգի ուրիշ զանազանութեամբք
հանդերձ. Մանուի օրէնքը կը պատուիրէ.
«Դատաւորը թող երդմնեցնէ բրահման մը
իր ճշմարտախօսութեան վրայ. քսաթրիաս
(ռազմիկ) մը՝ իր Ձիոց, Փղաց կամ Զի-
նուց վրայ. վայսիա (վաճառական) մը՝
իր Կովերուն, Արմտեաց և Ոսկւոյն վրայ.
սուդրա (ստրուկ) մը՝ բոլոր Ոճիրներու
վրայ» (Ը, 113)։

2. Մեր նախնիք ունէին նաև երդումը
մարմնոյն պատուականագոյն համարուած
մասանց վրայ։ Ադոնց առաջինն էր Գլու-
խը (աստ, 8), զոր տեսանք նաև Հրէից
քով (անդ, ծան.), և որոց աւանդեցին
զայս նոյնպէս հեթանոսք՝ որոց մէջ յա-
ճախեալ էր։ — Այսպէս Յունաց քով Հո-
մերոս Հերայի երդնուլ կու տայ Արամազ-
դայ «խնկելի Գլխոյն» վրայ (Իլ. ԺԵ, 39)։
— Այս սովորութեան աւելի ստէպ կը
հանդիպինք Հռովմայեցւոց մէջ. Վիրգիլիոս
կը պատմէ Յուլոսի երդումն «ի Գլուխ իմ՝
յոր ցարդ սովոր էր հայր իմ երդնուլ»

(Են. Թ, 302)։ Դիւզէ կ'երդնու իւր քրոջ «ցանկալի Գլխոյն» վրայ (անդ, Դ, 487)։ — Մանուշի օրէնքը նոյնպէս կը ճանաչէ ծանր պարագայից մէջ երդման գործածութիւնը՝ դպչելով «իւր որդւոց ու կնոջ Գլուխներուն» (Ը, 114). բայց այս ձեւը Հնդկաց համար նզովման փորձ մ'էր. այնպէս որ եթէ «իսկոյն եւեթ չարիք մը չհասնի անոր, իւր երդման մէջ ճշմարտախօս պիտի ծանուցուի» (անդ, 115)։ Աստի հեռի չէր մեր կամ այլոց համանման երդման իմաստը. կորուստ կամ մահ կոչել մ'էր գլխոյն վրայ այն պարագային՝ ուր երդմնողը ստէր։ — Վերջապէս Մահմետականաց քով ալ կը գտնենք նոյն սովորոյթը. Հալպայ Մելէք ամիրայն մեր վերջին Լեւոնի երդուաւ «ի Գլուխ սուլտանին» (Դարդէլ, ԿԴ)։

Մեր հարց երկրորդ վկայն էր Աչքը (աստ, 8), որ սակայն շատ ծանօթ չէ ուրիշ ազգաց. միայն Հռովմայեցւոց մէջ կը յիշուի այն Ովիդիոսի, Տիբուղղոսի և այլոց կողմանէ (Դարեմբ. Գ, 770). թէեւ աստի չի հետեւիր՝ թէ ուրիշներ ալ չունէին. զի Սէիլան կղզւոյն բնիկները մինչեւ այսօր կը պահեն տակաւին նոյն սո-

վորոյթը (Նոր Հնրգիտ. – Երդ.)։ Անոր մէջ ալ կար կորստեան գաղափարը, որ ցարդ կը պահուի արեւելեայցս սա ռամիկ երդմնաձեւին մէջ. «Աչքս կուրնայ ե-թէ...»։

Աջ ձեռին երդումն ալ նկատեցինք մեր և Նումիդացւոց քով (աստ, 36). ինչպէս նաեւ Հրէից (անդ, ծան.), որոյ հետ կը ձայնակցի և կը մեկնէ զայն անոնց «ի զօրութիւն Բազկի» ձեւն ալ (Ես. ԿԲ, 8)։ Անոր սահ-մանն եւս աւելի ընդարձակ է. այս-պէս և Յոյներն ունէին զայն. բայց այս տարբերութեամբ՝ որ ոչ իբր վկայ, այլ խաղաղական դաշանց յայտարար նշան մը, կապ մը կ'առնուին աջը. այդպէս ը-րին ըստ Հոմերի՝ Տրոյիոյ դէմ նիզակա-կիցները. «Աջք յուսով վստահացեալք» (Իլ. Բ, 341). Ագամեմնոն Տրովեանց եր-դումը կը յիշէ սա բացատրութեամբ. «Աջք յոր մեքս հաւատացաք» (անդ, Դ, 159). և ուրիշ առթիւ՝ «այր զընկերի կալեալ Ձեռս» (անդ, Ձ, 233). կամ «զՁեռնդ բեր մատո» (անդ, ԻԳ, 75)։ — Հռովմայե-ցւոց ալ սեպհական կը գտնենք մի և նոյն սովորութիւնը (Դարեմբ. Գ, 770)։ — Վերջապէս Ղուրանին եւս քաջածանօթ է

*այն՝ հաւատարմական երդմանց մէջ, «Ձեռն տալով քեզ»․ այդու՝ կ՚ըսէ այն՝ «Աստուծոյ ձեռնը դրուած է իրենց (երդմնողաց) ձեռաց վրայ»* (ԽԸ, 10)։

*Գերմանիոյ նախկին բնակիչք երդմնելու պահուն կը դպչէին Մօրուաց՝ ի նշան մեծարանաց։ Ասոր հետ կարելի է համեմատել մեր երդումն « յալիսն և ի Մօրուսն Աստուծոյ» (աստ,* 11)։ — *Ի լրումն այս տեղեկութեանց դիտել կու տամ՝ թէ Հռովմայեցիք ունէին նաև Ծնգաց դպչելու սովորութիւնը (Դարեմբ․ անդ)։ Եւ Հրէից նահապետք երդմնողին ձեռնը դնել կու տային իրենց Երանաց ներքև, որ է զխատր* (Ծննդ․ ԻԴ, 2, 9․ ԽԷ, 29)։

3․ *Եթէ մարդուն մէկ լոկ անդամը երդում կ՚ընդունէր, աւելի բնական էր տալ այդ պատիւն անոր ազնուագոյն մասին, կենաց, մանաւանդ մեծամեծաց։ Բարզափրան ուշտունի վերոյիշեալ վկայութեան մէջ կ՚երդնու նաև «յԱրեւն Արտաշիսի (պարսից) և Տիգրանայ» մեր թագաւորին* (Խորեն․ Բ, *ժթ*)։ — *Նոյնը կար նաև Եգիպտացւոց մէջ․ Յովսէփ անծանօթ՝ երդուաւ իւր եղբարց «յԱրեւն փարաւոնի»* (Ծննդ․ ԽԲ, 15), *ուր յունարէն բնագիրն է*

«յառողջութիւն»։ — Նոյնքան և աւելի յաճախեալ էր այս Հրէից մէջ. Աննա երդում տուաւ Հեղեայ կենաց վրայ. «կենդանի է անձն քո» (Ա Թագ. Ա, 26). նոյնպէս Աբեններ՝ Սաւուղայ (անդ, ԺԷ, 55), Դաւիթ՝ Յովնաթանայ (անդ, Ի, 3), Եթթի, Ուրիա և Աբիգիա՝ Դաւիթ արքայի (անդ, ԻԵ, 26. Բ Թագ. ԺԱ, 11. ԺԵ, 21)։ — Համազօր էր ասոր՝ Հռովմայեցւոց սովորոյթն ալ, որով Վիրգիլիոս Դիդէի երդնուլ կու տայ իւր քրոջ վրայ. «երդուեալ ի քեզ» (Են. Դ, 487)։ Իմաստով հեռի չէր ասոր նաեւ անոնց երդումն «յԱռողջութիւն իմ» (Դարեմբ. Գ, 773), նոյն վերոյիշեալ եգիպտական ձեւին հետ։ — Յունաց մէջ ծանօթ է երդմնատեաց Պիթագորեանց ընթացքը, որոնք փոխանակ Աստուծոյ՝ կ'երդնուին իրենց Վարդապետին վրայ (Դարեմբ. Գ, 749)։ Պտղոմեանց ժամանակ սովորութիւն եղաւ երդնուլ Թագաւորին վրայ (անդ, 751), ինչ որ ուրիշ շրջաններուն չի տեսնուիր։

4. Ամէն ազգաց ու դարուց մէջ վկայից գերագոյնը համարուած էր Աստուած, հոգեղէն էակը, — ուր որ մտաւոր զարգացումը մուծեր էր անոր գաղափարն ու պաշտօ-

*նը, — թէեւ միաւոր՝ թէեւ բազմաւոր իմանային զայն մարդիկ։ Մեր քով արդէն տեսանք զայդ (տես, 9, 45)։ — Հրեայք շատ աւելի փարած էին այդ ձեւին, մանաւանդ հին ժամանակ՝ սկսեալ նահապետաց օրերէն. Աբրահամ՝ Աբիմելեքայ երդուաւ «յԱստուած» (Ծննդ. ԻԱ, 33), եւ իւր ծառայն երդմնեցոյց «յԱստուած երկնից եւ յԱստուած երկրի» (անդ, ԻԴ, 3)։ Մովսէս արգելլով երդնուլ օտար աստուածոց վրայ, կը հրամայէր կատարել նոյնը յանուն Աստուծոյն Իսրայելի*[1] *(Բ Օր. Զ, 13. Ժ, 20)։ Նոյն պատուէրը խստիւ կըրկնեցին ուրիշ մարգարէք եւս (Ամովս, Է, 14. Երմ. Ե, 7. ԺԲ, 16). եւ Հրեայք կը պահէին զայդ սովորաբար (Ա Թագ. Ի, 42. Ես. ԽԸ, 1)։ Աստուած ինքնին՝ որ չունի «ի վեր քան զինքն» էակ, ինք զինք վկայ կ'առնուր ըսելով. «յանձն իմ երդուայ*[2]*»։ — Զայդ կը գտնենք եւ Բրի֊*

1. *Մանդակունին՝ հակառակ երդման, կ'ուզէ որ Աստուած այս թոյլտուութեամբ «ոչ եթէ հրամանս ինչ երդման հաստատեաց, այլ զտղայական միտս նոցա յանուանցն ի կռոցն երդմանէն հեռացուցանել կամեցաւ. քանզի ոչ եթէ անդէն եւ անդ զամենայն կատարելութիւնս կարէին ընդունել»* (ԺԵ, 110)։

2. Ծննդ. ԻԲ, 16. — Ելք, ԼԲ, 13. — Ես. ԽԵ, 23. — Ամովս, Զ, 8. — Երեմ. ԻԲ, 5։

զանդացող քով, որոնք կ'երդնուին «յանուն Աստուծոյ և Քրիստոսի» (Դարսի, Բ, 1606)։ — Հաւասարապէս սեպհական էր այս ձեւը նաեւ Ղուրանին, այս ինքն «առաջի Աստուծոյ» (Ե, 105-6)․ և աւելի յայտնապէս կ'ըսէ՝ թէ երդնուլն «յանուն Աստուծոյ՝ երդմանց ամենէն հանդիսականն» է (ԻԴ, 52․ Զ, 109)։ Անոր համար կ'արգելու զայն յանդէպս գործածել․ զոր օրինակ, «ԶԱստուած ձեր երդման եզր մի՛ ընէք՝ երբ կ'երդնուք արդար՝ առաքինի և երկիւղած լինել» (Բ, 224)։ — Հեթանոսութիւնը՝ որ զբազմաստուածութիւնը հնարեց, բնական էր՝ որ իւր երդմանց վկայք ալ բազմաթիւ լինէին։ Յոյները ամենէն աւելի կը կոչէին դիցահայրն Արամազդ միայնակ, ինչպէս ըրին Դոլոն (Իլ․ Ժ, 329), Աքիլլեւս (անդ, ԻԳ, 43), Ոդիսեւս (Ոդիս․ ԺԹ, 303), և այլք։ Յաճախ կը կոչէին նաեւ ուրիշներ․ ինչպէս Ատրիդէս և Ագամեմնոն՝ Արամազդայ ու տարերաց հետ դժոխոց Պատուհասները կամ Կատաղիքը (Իլ․ Գ, 276–279․ ԺԹ, 258–9)։ Անոնց վկայ աստուածութիւնք կը զանազանէին ըստ քաղաքաց, որոց իւրաքանչիւրը կը կոչէր

իւր նախընտրածը (Դարեմբ. Գ, 749)։ Բայց շատ սովորական էր երդնուլ երբեակ աստուածոց վրայ, որոնք նոյնպէս կը տարբերէին ըստ տեղւոյ և ժամանակի (անդ, 750). և որ կը յիշեցնէ մեր հարց վերոյիշեալ հեթանոս երդումն «յարեգակն և ի լուսին և յաստեղս», երեք վկայք. և կամ քրիստոնէականն՝ «ի խաչ և յաւետարան և յեկեղեցի» (ատ, 47)։ Յոյներն ունէին և այս մասնաւորութիւնը՝ որ կանայք սովորաբար կ'երդնուին դիցուհեաց վրայ, և արք՝ դից (Դարեմբ. Գ, 749)։ — Հռովմայեցիք կը նմանէին ու կը տարբերէին Յոյներէն. ունէին անոնք երդումն «յԱստուած՝» բացարձակն ու միակը (Դարեմբ. Գ, 773), անյիշատակ հելլէն բազմաստուածութեան մէջ։ Նոյնպէս «յԱրամազդ» (անդ, 771)։ Դիրդէ Ենէականի մէջ կ'երդնու «ի Դիս» (Գ, 486)։ Ենէաս վկայ կը կոչէ տարերքը, զԱրամազդ, Հերա, Արէս, երկնային ու ծովային զօրութիւնքը (անդ, ԺԲ, 181-7)։ Եւ Լատինոս կ'երդնու տարերաց, «ի Լետովեան ճետս կրկին», Յանոսի և այլոց վրայ միանգամայն (անդ, 203-6)։ Աւելի յաճախ կը կոչուէին Փիդէս և Փիդիոս՝ որ դաշանց

ու երդմանց խնամարկու էին (Դարեմբ. Բ, 1115, 291)․ նոյնպէս առտնին աստուածութիւնք կամ Թերափք (Նոյն, Գ, 771)։

5․ Թէև հազուադէպ, բայց կը պատահինք մարդկութեան մէջ նաև Աստուծոյ և մերթ աստուածարելոց բարոյական սեպհականութեանց կամ յատկութեանց վրայ երդմնելու սովորութեան։ Այսպէս՝ մինչդեռ մեր հին հարք վկայ կ'առնուն Քրիստոսի Չարչարանքը և կամ սրբութեանց փառքն ու Զօրութիւնը (աստ, 9, 62), Եսայի նոյնպէս երդնուլ կու տայ Աստուծոյ «ի փառս իւր և ի Զօրութիւն բազկի իւրոյ» (ԿԲ, 8)։ Նմանապէս Վիրգիլիոսի դիւցազնը Լատինոս կ'երդնու «ի Զօրութիւն դիցն ներքնոց» (Են. ԺԲ, 205)։ Այս կարգին կը պատկանի Յակոբ Նահապետի երդումն ալ «յԵրկիւղ հօր իւրոյ Իսահակայ» (Ծննդ. ԼԱ, 54), և Բիւզանդացւոցն «ի Մեծափառութիւն կայսեր» (Դարսի, Բ, 2606)։

6․ Բայց աւելի սովորական էր երդումը սրբութեանց վրայ, որոնք հարկաւ կը զանազանէին ըստ ազգաց ու կրօնից։ Ասոնց ամենէն աւելի գործածականն էր մեր մէջ Աւետարանը (աստ, 40–4)։ Նոյնը

*սեպհական էր քրիստոնեայ Յունաց և Հռովմայեցւոց ալ. մանաւանդ թէ երգմանց միակ վկայն է՝ որ կը յիշուի Յուստինիանոսի օրինաց մէջ* (*Դարեմբ.* Գ, 775)։ — *Գերմանք քրիստոնէութեան շրջանին կ'երդնուն Աւետարանին, խաչին ու Նշխարաց վրայ* (*Գոշլ.* ԻԲ, 27). *ադոնց երկրորդն ալ մեզ յայտնի* (*աստ*, 44), *իսկ երրորդը բոլորովին անծանօթ է. մինչդեռ հեթանոս Հռովմայեցիք երդում կու տային՝ դպչելով նոյնպէս մեռելոյ մ'Աճիւնին կամ Ոսկերոտւոյն* (*Դարեմբ.* Գ, 770)։ — *Հրեայք վերջերը վկայ կը կոչէին տաճարին մէջ պահուած Ոսկին, Սեղանը և Պատարագը* (*Մտթ.* ԻԳ, 16–22)։ — *Հելլէնք այն դաշինքը՝ որոց յիշատակը պիտի պահուէր, կը կատարէին երդնլով սրբազան քարերու կամ յուշարձանաց վրայ* (*Դարեմբ.* Գ, 751)։ — *Մեր սրբութեանց մին էր Եկեղեցին* (*աստ*, 46). *տեսանք Հրէից երդումն ալ Տաճարին վրայ* (*անդ*)։ *Ասոր ակնարկը կայ և Հռովմայեցւոց մէջ. ըստ Վիրգիլիոսի՝ Լատինոս կ'երդնու «Պղուտոնի ի Սրբարան»* (*Են.* ԺԲ, 206)։

*Ս. Բաժակին Հայերէն իբրև մելան գործածութիւնն ալ նկատեցինք* (*աստ*, 49)։

Ցու ոչ այս մեր սեպհականութիւնն էր. մեզ ծանօթ օրինակներէն յառաջ երկու անգամ Հռովմայ հայրապետք նոյնը կատարեր են. Թէոդոր Ա 648ին դատապարտելու համար Պաւղոս և Պիւռոս միաբնակները, գնաց Ս. Պետրոսի գերեզմանին վրայ, պատարագի բաժակը բերել տուաւ, և անտի քանի մը կաթիլ առնլով՝ գրեց երկու պատրիարքաց դատապարտութեան վճիռը։ Այս գործը մինչև այն ժամանակ անծանօթ ըստ պատմչին[1], կրկնուեցաւ Փոտի դատապարտութեան առթիւ 869ին, Կ. Պոլսոյ Դ ժողովին մէջ։ Այս տեղ կը տեսնենք մեր հարց ըրածին նախագաղափարը, թէև տարբեր դիպուածով։

Արեան դերը երդմանց առթիւ՝ կար նաև ուրիշ կրօնից մէջ. Հրէից նահապետք (Ծննդ. ԼԱ, 54), Հելլէնք (Իլիակ. Գ, 158. ԺԹ, 266) և Հռովմայեցիք յաճախ զոհեր կը մատուցանէին երդմանց հետ. և վերջինքս իրենց ձեռները կը մխէին զոհին արեան և ընդերաց մէջ, երդումն ահաւորագոյն ընծայելու համար (Նոր Հնրգիտ. Երդ.)։ — Ցապոնացիք հնաւանդ սովորու-

1. Lebeau, Hist. de Bas-Empire, XI, 345, որոյ այս տեղին ծանօթացոյց ինձ տէր Ն. Բիւզանդացի։

թեամբ մինչև ցարդ իրենց մատնէն քանի մը կաթիլ արիւն հանելով՝ կը ստորագրեն կամ նոյն իսկ կը գրեն երդումը, ինչ որ զօրաւորագոյն գրաւականն է անոր հաստատութեան (անդ), ինչպէս հաւաստեց ինձ և բնիկ յապոնացի բարեկամ մը։ — Սիամացւոց քով ալ երդմնող կողմանց իւրաքանչիւրն իւր մարմնէն կը հանէ արեան քանի մը կաթիլ, կը խառնեն իրարու և միասին կ՚ըմպեն (անդ)։ — Ասոր հնութեան ապացոյցը կեցած է Սկիւթացւոց սովորութեան մէջ, որոնք նոյնպէս երդմնողաց միոյն մարմնէն արիւն կ՚առնուին ճեղքելով, կը հոսէին գինեկից ամանի մը մէջ, վաղակաւորին ծայրը կը մխրճէին անոր մէջ, մի մի. կաթիլ կ՚ըմպէին և ապա կ՚երդնուին (անդ)։ — Այս մասամբ ուշագրաւ է Տակիտոսի պատմածն ալ Վրացի Միհրդատ թագաւորին համար՝ որ Ներոնի օրով կ՚իշխէր Հայաստանի վրայ։ Սա իւր Փարսման եղբօր՝ Վրաստանի արքային հետ ունեցած գժտութիւնը բառնալու համար, անոր որդին Հռամիզդը տարաւ դիցանուէր անտառին մէջ, և հոն, ինչպէս «սովորութիւն է արքայից», ուխտ կռելու համար՝ իրենց բութ մատներն ուժ-

գնօրէն իրարու կապեցին. և երբ արիւնը յորդեց, թեթև հերձմամբ մը ցայտեցուցին ու լիզեցին իրարու արիւն. այսու ուխտն աստուածային կը համարուէր (ԺԲ, խէ)։ Սակայն լոկ «արքայից» յատուկ չէր այս սովորոյթ, և մեք ալ ունէինք։ Վաղերիոս Մաքսիմոս պատմելով մեծին Տիգրանայ համանուն կամ Սարիաստէր կոչուած որդւոյն դաւը բարեկամաց հետ հօրը դէմ, կ'ըսէ՝ թէ նախ «ամենեցուն հանեալ արիւն յաջոյ ձեռաց իւրեանց, ճաշակեցին փոխանակաւ», և ապա դաշնադրեցան (Թ, ժա)։

Մեր ռամկին բարուց մէջ էր վերջապէս վկայ առնուլ սուրբերն ալ (աստ, 9)։ Նոյնն անծանօթ չէր և հեթանոսաց՝ որոց սուրբերն էին դիւցազունք։ Այսպէս Յունացմէ Դեմոսթենէս իւր երդման վկայ կոչեց Մարաթոնի և Սաղամինեայ նահատակներն իրենց շիրիմներէն (Դարեմբ. Գ, 749)։ — Նմանապէս և Հռովմայեցիք կայսերութեան օրով կ'երդնուին մեռած և աստուածացեալ կայսերաց վրայ (անդ, 771)։

Է. — Եղանակ երդման։ — 1. Մեր հարց երդման կը կանխէր Աղօթք մը, և մերթ

երդումն իսկ աղօթից ձև ունէր (աստ, 51)։ — Ասոնց օրինակները կան և Հրէից մէջ․ Եզր նախ աղօթք մը մատոյց, և ապա «երդմնեցոյց զիշխանս» (Ա Եզր, Ը, 75-97)։ Նոյն ինքն դարձեալ և ազգայինքն երկրորդ ձևով կատարեցին իրենց մէկ ուխտը (Նեեմ․ Թ, 6–Ժ, 39)։ — Վերջինս կը գտնենք և Յունաց քով․ այսպիսի էր Ագամեմնոնի երդումն․ «ամբարձեալ ձեռս՝ աղօթէր առ Արամազդ,... դէտ ակն ի վեր յերկինս անբաւ» (Իլիակ․ ԺԹ, 254 – 65)․ Նոյն ինքն դարձեալ ուրիշ երդման մը պահուն «յաղօթս կայր ձեռս ամբարձեալ» (անդ, Գ, 275-91)։ — Ընդ հակառակն Ղուրանին մէջ աղօթքը, նոյնպէս յիշուած, անջատ է և նախընթաց․ կը յանձնարարէ երդնուլ «յետ աղօթից» (Ե, 105)։

2․ Կանգուն կ՚երդնուին մեր նախնիք, ինչպէս համոզուած եմ․ զի եթէ յառաջընթաց աղօթից համար Վահանեանք «յառնեն ամենեքեան» (աստ, 51), բնական է նոյնը ենթադրել աղօթակերպ ու պարզ երդմանց համար ևս։ Մանաւանդ որ այսպէս էր և Հրէից սովորոյթը․ Եզր «յարուցեալ» երդմնեցոյց իւր տոհմակիցքը (Ա

*Եզր, Ը, 97)։ Նոյնպէս էր Յունաց ալ. Աքիլլեւս երդուաւ «յարուցեալ» (Իլիակ. ԺԹ, 269)։ Դարեմբերգ կու տայ հին շքադրամի մը ձեւը՝ յորում յոնիացի նուիրակաց խումբ մը երդում կու տայ կանգուն (Գ, 751)։ Ուստի եթէ ըստ Դարդելի՝ մեր Լեւոն Ե երդմնելու համար «եդ ծունր առաջի սրբոյ աւետարանին» (ՂԲ), այդ յատուկ էր ժամանակի լատինաց և պտուղ արքային լատինամոլութեան, ոչ եթէ բնիկ մեզ։*

3. *Տեսանք և մեր ձեռաց դրութիւնը վկայ կոչուած սրբութեանց վրայ (աստ,* 54)։ *Նոյնպէս կ'ընէին և քրիստոնեայ Յոյները, ինչպէս կ'աւանդէ Յուստինիանոսի օրէնքը, պատուիրելով ձեռնը դնել աւետարանին (Դարեմբ. Գ,* 775)։ — *Գերմանաց մէջ երդմնակիցք իրենց ձեռները կը հանգուցանէին նշխարատփին վրայ, և բուն երդմնողն՝ իրենն անոնց ձեռաց վրայ (Գոշլ. ԻԲ,* 27)։ — *Հրէական աւանդութեանց համեմատ՝ դատաստանական երդմունք կը կատարուէին օրինաց մատեանն ի ձեռին (Վիգուր. Երդ.)։* — *Այս մասին հեթանոսք չէին տարբերեր. Հելլէնք, կ'ըսէ Դարեմբերգ, շատ անգամ բագնին կը դըպ-*

չէին, որ կը նշանակէր իբրև աստուածոյն դպչիլ (Գ, 751)։ Հոմերի քով Հերա դիցուհին մէկ ձեռնը դրած երկրին և միւսը ծովուն, այնպէս երդուաւ անոնց վրայ (Իլ. ԺԴ, 271–4)։ Յոյները կը դնէին ձեռնը նաև զոհին, զաւակաց, հօր և ամուսնոյ գլխոյն (Դարեմբ. Գ, 752)։ — Մանուի օրէնքը դատաւորին կը թելադրէ՝ եթէ ուզէ՝ նոյնպէս «տալ շօշափել» ամբաստանելոյն իւր ընտանեաց գլուխները (Ը, 114)։ — Հռովմայեցիք ալ սովորաբար կ՚երդնուին՝ ձեռնը դնելով աստուծոյ մը բագնին, կամ մարմնոյն վկայ կոչուած մասանց վրայ (Դարեմբ. Գ, 770–1)։ Եւ Վիրգիլիոս Լատինոսի երդնուլ կու տայ «աջ ի վերայ բագնաց եդեալ և ի հուրն որ ի նոսին» (Են. ԺԲ, 207–8)։

4. Այն երդմանց մէջ ուր վկայ կը կոչէին զԱստուած, ձեռները կը տարածէին դէպ ի վեր. հեռաւոր շօշափում մը, որոյ նշմարը տեսանք և մեր քով (տես, 56)։ — Աբրահամ ալ երդմնելու պահուն կ՚ըսէր. «ձգեմ զձեռն իմ առ Աստուած» (Ծննդ. ԺԴ, 22)։ Աստուած ինքնին կը գործածէ այս ձևը. «ամբարձից յերկինս ըզձեռս իմ և երդուայց» (Բ Օր. ԼԲ, 40),

*կամ «ձգեցի զձեռն իմ»* (*Ելք*, *Զ*, 8)։ *Դանիելի տեսլեան այրն ալ «ամբարձ զաջ իւր և զձախ իւր յերկինս, և երդուաւ ի կենդանին յաւիտենից»* (*ԺԲ*, 7)։ *Նմանապէս Յայտնութեան հրեշտակն «ամբարձ զձեռն իւր զաջ յերկինս և երդուաւ ի կենդանին յաւիտենից»* (*Ժ*, 5)։ — *Ուրիշ ազգերն ևս ունէին զայս։ Ասորւոց զօրավարը Նիկանովր՝ «ձգեաց զձեռն իւր ի տաճարն» և երդուաւ կռատուն ընել զայն՝ եթէ զՅուդա իրեն չյանձնէին* (*Բ Մակ. ԺԴ*, 32–3)։ — *Լատինոս Ենէականին մէջ կ'երդնու՝ «զաչս յերկինս ամբարձեալ, յաստեղս ի վեր ուղերձեալ զաջ»* (*ԺԲ*, 202)։ — *Վերոյիշեալ յոնիական շքադրամին մէջ գծուած բոլոր նուիրակներն ալ ձեռամբարձ են*։ — *Կը զարտուղէին իշխանաւորք. թագաւորք իրենց մականը կը բարձրացնէին. զօրավարք՝ իրենց տիգերը. զինուորք՝ սուրերը* (*Բռրն. բարուց. Երդ.*). *այսպէս Ագամեմնոն «ամբարձ ի վեր զգաւազանն առ դիսն հանուր»* (*Իլիակ. Է*, 413). *և Դոլոն «ի ձեռն առեալ զցուպն՝ երդուաւ» Հեկտորի* (*անդ*, *Ժ*, 321, 328). *իսկ Ենէաս «սուր յազդերէ հանեալ՝ մաղթէ»* (*Են. ԺԲ*, 180)։

5. *Տեսանք մեր մէջ՝ որ թէ անհատներ ատենի մէջ* (*տես*, 80), *և թէ երբ շատերը պիտի երդնուին, իւրաքանչիւր ոք առանձնաբար կը կրկնէր նոյն գործը* (*տես*, 55)։ — *Բայց օտարաց քով սովորութիւնը կը զանազանէր։ Թիերրի կայսեր օրինաց համեմատ՝ Ռիպուարեան Փրանկաց քով դատախազը կ'արտասանէր երդումը, և ամբաստանեալն ու երդմնակիցք կը կրկնէին զայն միաբերան։ Իսկ Գերմանաց մէջ երդմնակիցք լուռ կը մնային, և ամբաստանեալը կ'երդնուր իւր և անոնց կողմանէ* (*Գոշլ.* ԻԲ, 27)։ — *Հրեայք աւելի դիւրին եղանակ մ'ունէին. դատաւորը կ'արտասանէր բանաձևը, և երդմնողը, ազատ զայն իւրովի ըսելու կամ կրկնելու նեղութենէն, կը պատասխանէր միայն՝ «Եղիցի»* (*Թուք*, Ե, 22. *Բ Օր.* ԻԷ, 17. *Նեեմ.* Ե, 13)։ — *Հռովմայեցիք երկու ձևով կը վարէին. մին՝ երբ իւրաքանչիւր զինուոր հնազանդութիւն կ'երդնուր զօրավարին. և միւսն՝ երբ քաղաքական շփոթութեանց կամ թշնամւոյն յարձակմանց պահուն՝ ժամանակի սղութենէն հիւպատոսը Կապիտոլիոնի գլուխը կ'ելնէր, զոյգ մ'այլագոյն դրօշներ կը պարզէր ու կ'ըսէր. «Ով կ'ուզէ հանրա-*

պետութեան փրկութիւնը՝ թող ինձ հետևի». և բոլոր բանակը միաբերան հաւատարմութիւն կ'երդնուր (Բորն. Բարուց. Երդ.)։

Սրբութեանց համբոյրն երդման ժամանակ՝ քաջածանօթ մեզ (տես, 52), անյիշատակ կը մնայ միւս քրիստոնէից մէջ, թէև ուրիշ առթիւ անոնք ալ զանց չէին ըներ այդ արարողական մասը։

Ը. — Բանաձեւք երդման։ — Որոշեալ և յարմարական ձեւեր ինչպէս մեք (տես, 57), օտարներն ալ ունէին, և առաւելագոյն թուով։

1. Աշխարհիկ անուամբ կոչեցինք մեզ այն ձեւերն՝ որոց մէջ չէին մտներ կրօնական վկայք կամ սրբութիւնք (տես, 58)։ Ասոցմէ կը գտնենք և Հրէից քով. Յովսէփ այսպէս կ'ըսէր իւր եղբարց. «Երդուեալ յարեւն Փարաւոնի, ոչ ելանէք աստի՝ եթէ ոչ եկեսցէ եղբայրն ձեր կրտսեր այսր» (Ծննդ. ԽԲ, 15)։ Սամուելի մօր երդմնաձեւն էր. «Յիս տէր իմ. կենդանի է անձն քո. ես այն կին եմ՝ որ կացի առաջի քո» են (Ա Թագ. Ա, 26)։ Այս տեղ երդման իսկական մասն է նոտրագիրը, որ անփոփոխ կը մնայ միշտ, մինչ յարակից

յաւելուածը կը փոփոխի ըստ պարագային, ինչպէս Աբեններայ (անդ, ժէ, 55) և Ուրիայի երդմանց մէջ ալ (Բ Թագ. ժԳ, 11)։ — Վիրգիլիոս հետագայ աշխարհիկ բանաձևը կը դնէ Յուլոսի բերանը. «Երդուեալ ի գլուխ իմ՝ յոր ցարդ սովոր էր հայր իմ երդնուլ, — Որ ինչ և քեզ ի յաջողել ելից իրացըդ խոստացայ — Տալ ի դարձիդ, նոյն ծընողի քում և ազգի պահեսցի» (Են. Թ, 302–4)։ Նմանապէս ոչ ինչ կայ կրօնական՝ հռովմայեցի զինուորին սա ձևին մէջ. «Երդնում հնազանդել զօրավարին, հետևել նմա ուր և առաջնորդեսցէ ինձ ... խոստանամ և հաւատարիմ գոլ ծերակուտին և հռովմէական ժողովրդեան, և ոչ ինչ գործել ի վնաս հաւատարմութեան որ անկ է նոցա» (Բորն. Բարուց, Երդ.)։ — Այս դասէն է Ղուրանի երդմնաձևը՝ զոր կը պատուիրէ կատարել օրհասականի մը կտակին վկայից. «Մեր վկայութիւնը չպիտի վաճառենք որ և է գնով, և ոչ իսկ մեր ազգականաց. և չպիտի ծածկենք մեր վկայութիւնը, որով պատժապարտ պիտի լինէինք»։ Եթէ ադոնց երդմնապահութիւնը կասկածելի թուէր, կտակարարի ազգականներէն պի-

տի երդնուին հետևեալ կերպով. «Մեր վկայութիւնը ճշմարտագոյն է քան միւս երկուքը. ոչ մի անարդար բան չենք ըսեր, ապա թէ ոչ՝ պատժապարտից թուէն պիտի լինէինք» (Ե, 105–6)։

2. Շատ աւելի առատ էին կրօնական ձևերն՝ ինչպէս մեր (աստ, 59–64), նաև ուրիշ ազգաց մէջ, այնքան որ չեմ կարող բոլորն յառաջ բերել այս տեղ, այլ միայն քանի մ՚օրինակ։ Պաւղոս առաքեալ կը գործածէ հետագայքը. «Աստուած և Հայր տեառն մերոյ Յիսուսի գիտէ» (Բ Կոր. ԺԱ, 31), կամ «վկայ է ինձ Աստուած» (Հռ. Ա, 9. Փիլ. Ա, 8), կամ «վկայ զԱստուած կոչեմ անձին իմոյ» (Բ Կոր. Ա, 23), և այլն, որոցմէ ներշնչուած կը թուին մեր ատենական երդումները, ձևացած նոյնպէս նոտրագրեալ «գիտէ» և «վկայ է» բառերէ (աստ, 62–3), զոր պիտի տեսնենք հետագայ օրինակաց մէջ ևս։ — Հրեական բանաձևն ի սկզբան շատ պարզ էր. Աբիմելէք պահանջեց Աբրահամէ երդումն հաշտութեան յԱստուած, և նա կատարեց անոր խնդիրը լոկ սա բառով. «Ես երդնում» (Ծնդ. ԻԱ, 23)։ Անոր թոռները հընարեցին ուրիշ ձև մը, «կենդանի է Տէր՝

*եթէ*[1]*...», կամ առոր մէջ խառնելով երգումն ընդունող պատուաւոր անձն ալ, «կենդանի է Տէր և կենդանի է անձն քո՝ եթէ*[2]*...»։ Այս ամենէն յաճախեալ բանաձևն էր, և հազուադէպ է Գաղաադացւոցը, «Տէր կացցէ լսող ի միջի մերում՝ եթէ...»* (*Դատ.* ԺԱ, 10), *և կամ Յովնաթանայ հետևեալը, «Տէր լիցի վկայ ընդ իս և ընդ քեզ, և ի մէջ զաւակի իմոյ և ի մէջ զաւակի քոյ մինչև ցյաւիտեան»* (*Ա Թագ.* Ի, 42)։ — *Այս վերջնոյն կամ մերոց դասակարգէն են սա հելլէն ձևերն ալ Հոմերի քով. «Արդ գիտասցէ ինքն Արամազդ որոտաթունդ այրն Հերայի, զի...»* (*Իլ.* Ժ, 329)· *կամ՝ «Արդ նախ մեծն և վեհն ի դիս լիցի վըկայ ինձ Արամազդ, — Եւ երկիր և արեգակն և վրէժխընդիրքըն պատուհասք — Մարդկան ի խոր սանդարամետս որ սըտերդումն ոք լինիցի, — Զի...»* (*անդ,* ԺԹ, 258-60)· *և կամ՝ «Ո՛չ, ի մեծըն դից երդուեալ ի վեհագոյնըն յԱրամազդ»* (*անդ,* ԻԳ, 43)։ — *Նման ձևեր*

1. Դատ. Ը, 19. — Ա Թագ. ԺԴ, 45. ԺԹ, 6. ԻԹ, 6. — Բ Թագ. Դ, 9. ԺԴ, 11. — Գ Թագ. Ա, 29 — Երեմ. ԼԸ, 16։

2. Ա Թագ. Ի, 3, 21. ԻԵ, 26. — Դ Թագ. Բ, 2-6. — Բ Թագ. ԺԵ, 21։

ունէին և Հռովմայեցիք, ինչպէս Ենէականի հետևեալ օրինակները. «Լեր մաղթողիս ինձ արփի, լիցի վըկայ և երկիրս այս՝ — Ոյր վասն այսքան կրեցի ճըգունս... — Եւ զձեզ կարդամ, աղբիւրք և գետք, ինձ ի վըկայս, և որ այլ — ի բարձունս և ընդ կապոյտ բնակեալ ալեօք զօրութիւնք» (ԺԲ, 181–7). և կամ սա. «... երդուեալ ի դիս, քոյր սիրելի, — Երդուեալ ի քեզ, և ի քոյին երդուեալ ի գլուխըդ ցանկալի» (Դ, 486–7)։ Դիտել տուի «երդնուլ» բառին բացակայութիւնը մեր բանաձևերէն (աստ, 63–4), ինչ որ առանց ստիպողական լինելու՝ շատ յաճախ կը տեսնուի այս օտար ձևերու մէջ։

3. Մեր երդմունք խառն էին խոստումներով առ երդմնապահս և անոնց տոհմայինս, և անիծիւք՝ առ ուխտազանցս (աստ, 60–1)։ Ճիշդ նոյնը կը գտնենք և ուրիշ ազգաց քով. բայց մերթ խոստումն և անէծք միասին, և մերթ լոկ վերջինը։ — Առաջինը Յունաց միայն յատուկ կը թուի. կամ գոնէ միւս ազգաց մէջ չեմ հանդիպած։ Աթէնք ու Դեղփիս սա յաւելուածը կը գործածէին երդմնաձևին վրայ. «Հաւատարիմ երդմանս՝ բազում բարիք ինձ.

*երդմնազանց՝ չարիք փոխանակ բարեաց»* (*Դարեմբ. Գ*, 752)։ *Աթենացիք ունէին այս վերջաբանն ալ. «Եթէ երդմնազանց գտայց՝ կորեայց ես և տուն իմ. և եթէ հաւատարիմ կայցեմ երդման իմում՝ կարիցեմ յաջողել»* (*անդ*, 756)։ *Կրետական արձանագրութեանց մէջ ևս կը կարդանք հետևեալ ձևը. «Որոց երդնուն անկեղծութեամբ և մնան հաւատարիմ երդման իւրեանց, տացեն որդեակք նոցա զուրախութիւն. շնորհեսցէ երկիր զարդիւնս առատապէս. հօտքն լիցին բեղնաւորք, և լցցին այլովք բարեօք՝ ինքեանք և զաւակք նոցա։ Ստերդմանց մի՛ լիցի երկիր արգասաւոր, ոչ հօտքն ծննդականք. կորիցեն չարաւ չարքն՝ ինքեանք և ազգ իւրեանց»* (*անդ*, 752)։

*Աւելի բազմաթիւ և ամէն ազգաց յատուկ էին լոկ անիծական ձևերը։ Այսպէս Հրեայք ունէին հետագայն, որ շատ ընդհանուր էր ամէն ժամանակ. «Օն և օն արասցէ ինձ Աստուած և օն և օն յաւելցէ, եթէ*[1]*...», յորում կը բովանդակուի անո-*

1. Ա Թագ. ժԴ, 44. — Գ Թագ. Բ, 23. — Դ Թագ. Զ, 31. — Հռթ. Ա, 17. — Ա Թագ. Իե, 22. — Բ Թագ. Գ, 9։

րոշ չարեաց սպառնալիք մը։ Կասկածելի կնոջ երդման մէջ կը մաղթուէր քակտումն անոր բարձից և այտումն որովայնին (Թիւք, Ե, 18–28)։ Նեեմի՝ քահանայիցմէ պահանջած ուխտին առթիւ զգեստը ցնցեց և ըսաւ. «Այսպէս թօթափեսցէ Աստուած զամենայն այր՝ որ ոչ կատարեսցէ զբանս զայս՝ ի կենաց իւրոց և ի տեղեաց իւրոց. եղիցի ունայնացեալ և թօթափեալ ի կենաց իւրոց» (Նեեմ. Ե, 12–3). և ուրիշ երդման մը յարեց՝ թէ երդմնազանցն «եղիցի ի նզովս և յանէծս» (անդ, Ժ, 29)։ Իսրայելացիք իրենց մէկ երդումն ամրապնդեցին այս ձևով. «Անիծեալ լիցի՝ որ տացէ կին Բենիամինի» (Դատ. ԻԱ, 1, 18)։ Եւ Սաւուղ պատերազմի մը մէջ նոյնպէս ըսաւ. «Անիծեալ լիցի այր՝ որ կերիցէ հաց մինչեւ ցերեկոյ» (Ա Թագ. 28, 24)։ — Ասորւոց թագաւոր մը, Բենադադ Բ, հրէական առաջին ձևով կ'երդնու այսպէս. «Օն և օն արասցեն ինձ դիքն և օն և օն յաւելցեն՝ եթէ...». (Գ Թագ. Ի, 10)։ — Յունաց քով անհրաժեշտ կը համարուէր անէծքն երդմնաձևին ամբողջութեան համար (Դարեմբ. Գ, 752). Ագամեմնոն այսպէս կ'աւարտէր իրենը.

«Իսկ եթէ յայսմ իցէ ինչ սուտ, ցաւս յիմ գլուխ կուտեսցեն դիք–Բազում յոյժ, որպէս և տան մեղուցելոյն երդմամբ ի նոյնս» (Իլիակ. ԺԹ, 264–5)։ Անէծքը կը սահմանուէր երբեմն ամբողջ ցեղի մ'անճիտման դէմ (Դարեմբ. անդ), որոյ օրինակը տեսանք վերև Աթենացւոց ու Կրետացւոց երդմնաձևին մէջ։ Այս կարգէն է Տրովեանց և Աքայեանց հետագայ ձեւն ալ. «Արամազդ մեծ, գերափառ, և որ ևս այլ անմահ աստուածք, – Որ ոք նախ դրժեալ դաշինն և ըստ երդմունս անցանիցեն, – Այնպէս որպէս գինիս այս[1] ուղիղ նոցին հեղցի յերկիր՝ – Եւ նոցունցն և զաւակաց, և ամուսինքն ընդ այլս անկցին» (Իլ. Գ, 298–301)։ Եթէ երդումն ստացուածոց համար էր, կ'ըսէին. «Կորիցէ նա, ինքն և ինչք իւր» (Դարեմբ. անդ)։ Ամփիկտիոնեան ատենի անդամք իրենց երդման կը յարէին ահաւոր նզովներ զայն լուծողաց, անոնց երկրին, կանանց և անասնոց դէմ (Ռոլէն, Հնախ. Բ, 574)։ — Հռովմայեցի դատաւորք՝ իրենց անձինքն ու տներն աստուածոց բարկութեան

1. Զոր նոյն պահուն «հեղուլին նուէր» (անդ, 296)։

կը յանձնէին՝ եթէ երդմնազանց լինէին (Դարեմբ. Գ, 770)։ Մի և նոյնը կ'ընէին նաև Սամնիացւոց զինուորները (Թոլ. Պատմ. Հռ. Բ, 93)։ — Վերջապէս Ղուրանն ալ զկինն ամբաստանող առն կը պատուիրէ երդնուլ՝ «Աստուծոյ անէծքը կարդալով անոր վրայ». և կնոջ ալ՝ «իւր անձին վրայ», եթէ առն ըսածն ուղիղ էր (ԻԴ, 7, 9)։

4. Տոհմային երդմանց մէջ տեսանք «Ուրացութեան» կոչուածը (աստ, 11, 61–2)։ Ըսինք ալ՝ թէ զայդ մեզմէ պահանջողը գլխաւորապէս մահմետականք էին, Մխ. Գոշի համեմատ՝ թէ «որպէս այլազգիք ուրացութեան օրինակաւ տան երդումն» (Ը, 51)։ Եթէ անոնք մեզմէ այդ ձևով կ'առնուին երդումը, յայտնի է՝ թէ իրենց գիւտն էր այդ, և իրենք իսկ անով կը վարէին։ — Ասոր նման բան մ'ալ Սիրակուսացիք ունէին, «մեծ երդումն» կոչուած, որ կը կատարուէր սրբապիղծ ձևով մը. այսու ծանր մեղք մը կը գործէին, զոր պիտի քաւէին բացարձակ հաւատարմութեամբ առ երդումն զոր կու տային (Դարեմբ. Գ, 752)։

Թ. — Գրաւոր երդումն և կնքումն։ —

Ատոնք ալ միայն մեզ յատուկ չէին (աստ, 64–73), և կամ Պարսից՝ որոցմէ առնուած տեսանք մեր սովորութիւնը (աստ, 71–2)։ — Հրէից քով ևս կայ ադոնց յիշատակը. Նեեմեայ առաջարկութեամբ գրուած ուխտին մէջ կ՚ըսեն անոնք. «Եւ զբանս զայս գրով հաստատեմք և կնքեմք ամենայն իշխանք մեր և ղևտացիք մեր և քահանայք մեր։ Եւ այս են որ կնքեն զգիրս զայս հաւատարմութեան առ քեզ». ուր յանուանէ կը յիշուին եօթանասուն և երկու իշխանք ու քահանայք. իսկ միւս ժողովուրդը թէև ներկայ, չի մասնակցիր կնքման (Նեեմ. Թ, 38. Ժ, 1–27). կատարեալ նմանութիւն մեր Վարդանանց ուխտին՝ զոր կը կնքէ միայն աւագանին (աստ, 72–3)։ — Հելլենք ալ ունէին նոյնն ուրիշ ձևով. երբ քաղաքացիք միաբանութեամբ կ՚երդնուին, երբեմն թէ երդումը և թէ երդմնողաց անուանքը կը քանդակէին կոթողի մը վրայ, ինչպէս ի Քաղկիս, յԵրետրիա և այլուր. և այսու դիւրին կը լինէր երդմանէ խուսափողները բռնել ու պատժել (Դարեմբ. Գ, 755)։ Ժառանգութեանց, առևտրական պայմանագրութեանց, և քաղաքական շինուածային յանձնառու-

թեանց երդմնաւոր մուրհակներն ալ բնականապէս գրաւոր էին (անդ, 767, 768)։

Այսքան է ինձ ծանօթն այս մասին. հետևաբար առ այժմ մեզ ընիկ կը մնան անգիր երդման կնքումն և գրաւորին ամփոփումն աւետարանին մէջ (աստ, 69, 67), որոց յիշատակն ուրիշ քրիստոնէից քով չեմ գտած։

Ժ. — Միջնորդք երդման։ — Մեր մէջ՝ ինչպէս տեսանք՝ եկեղեցականք էին այդ պաշտօնը կատարողներ. և այն՝ որովհետև իրենք միանգամայն դատաւոր էին (աստ, 73–82)։ Այս սովորոյթն ուրիշ ազգաց մէջ բացարձակ չէր։ Հրեայք ալ ունէին արդարև նոյնպիսի պաշտօնեայներ, Յոբայ ըսածին պէս առ Աստուած. «Զի ոչ ես իբրև զիս մարդ՝ ընդ որում դատեցայց. իսկ յանկա՛րծ գոյր միջնորդ, և յանդիմանէր և լսէր ի մէջ երկոցունց» (Թ. 32–3)։ Սակայն լոկ դասակարգի մը չէ յանձնուած այդ գործը։ Նահապետաց օրով ընտանեաց գլուխն էր դատաւոր (Ծննդ. ԼԸ, 24)։ Յետոյ Մովսէս կարգեց աշխարհիկ յատուկ պաշտօնատարներ (Ելք. ԺԸ, 21–6), որոց յաջորդեցին ծանօթ «Դատաւորք», որոց մէջ բաց աշխարհականներէ՝ կային նաև

կին մը՝ Դեբովրա, և Հեղի ու Սամուէլ քահանայք։ Թագաւորութեան հաստատութեամբ՝ արքային անցաւ այդ իրաւունքը (Ա Թագ. Ը, 5-6 են)։ Ապա Յովսափատ քաղաքական ատեանից հետ կարգեց քահանայից ատեանն ալ Երուսաղեմի մէջ, որոնք թէ կրօնական և թէ քաղաքական խնդիրներ կը կարգադրէին (Բ Մնաց. ԺԹ, 5–11). և շարունակեցին այդ պաշտօնը մինչեւ Հրէից գերութիւնը (Եզեկ. ԽԴ, 24)։ Արդ՝ սոյն համեմատութեամբ երդմնեցուցիչ դատաւորք ալ կը զանազանէին։ Կասկածելի կնոջ երդումը միշտ «քահանային» կ'ընդունէր (Թիւք, Ե, 15). նոյնպէս անշուշտ աւանդակորուսինը (Ելք, ԻԲ, 8)։ Ժողովրդեան առ Յովաս տուած երդման միջնորդ եղաւ Յովիդայէ քահանայն (Դ Թագ. ԺԱ, 4), և Հրէից առ Աստուած ուխտից՝ Եզր ու Նեեմի քահանայք (Ա Եզր, Ը, 97. Նե. Թ, 5. Ե, 12. ԺԳ, 25)։ — Ոչ Յոյնք և ոչ Հռովմայեցիք կրօնական միջնորդներ չունէին. միայն հելլէն քրմուհիք կ'երդնուին քրմապետին ու քրմաց առջև (Դարեմբ. Գ, 758). իսկ այլք՝ աշխարհականաց ըստ պարագայից (անդ, Երդումն)։ — Բիւզանդական օրէնքը, ձևուած հռով-

*մէականին վրայ, դատաստանական գործերն աշխարհական ատենի կը յանձնէր։ Մեծն Կոստանդիանոս եպիսկոպոսաց ալ տուաւ այդ իրաւունքն այն պարագային՝ երբ վիճող կողմանք դժգոհ միային աշխարհիկ դատաւորին վճռէն (Եւսեբ. Վարք Կոստ. Դ, 27). ըստ այսմ անոնց երդման միջնորդք ալ կրկին էին։ — Հնդկաց քով բուն դատաւորն էր թագաւորն ըստ Մանուի, «իւր հետ ունենալով բրահմաններ ու փորձ խորհրդականներ» (Ը, 1)։ «Երբ թագաւորն անձամբ չտեսնէ դատերը, կը յաւելու օրէնսդիրը, պէտք է կարգէ սոյն պաշտաման վարժ բրահման մը», և սա իւր հետ խորհրդակից պիտի առնու ուրիշ երեք բրահմաններ (անդ, 9–11)։ Հետևաբար երդումը կ'ընդունէր թագաւորը կամ բրահմանը։*

*Պէտք չէ մոռնանք՝ թէ միջնորդի գործակցութիւնը տեղի ունէր լոկ պաշտօնական կամ հանդիսական առթից մէջ։ Իսկ առտնին կամ կենցաղական երդմունք կը կատարուէին առանց անոր՝ թէ մեզմէ (աստ, 7–8), և թէ ուրիշ ազգերէ, որոց բազմապատիկ օրինակները տեսանք արդէն (աստ, 107–23)։ Նոյն իսկ շատ երդում-*

*ներ՝ որոնք միջնորդաւ կը լինէին մեր մէջ, հակառակն էին օտարաց քով (անդ)։ Որմէ կը հետևի՝ թէ մեր հարք ուրիշներէ աւելի կարևոր ըմբռնած էին միջնորդի դերը։*

**ԺԱ.** — *Սուտերդմնութիւն։* — *Թէ իւր գոյութիւնը և թէ պատճառած խորշումն ու պատուհասն յատուկ էին ամէն ազգաց, ինչպէս մեզ (աստ, 82–6)։*

1. *Մովսիսական օրինաց Տուիչը կ'ըսէ. «Մի՛ երդնուցուք սուտ յանուն իմ, և մի՛ պղծիցէք զանուն տեառն Աստուծոյ ձերոյ» (Ղևտ. ԺԹ, 12)։ Դաւիթ կը գովէ զար-դարը՝ որ «երդնու ընկերի իւրում և ոչ ստէ» (Սղմ. ԺԴ, 4)։ Իմաստութեան համար հաւասար են «սպանութիւն, գողութիւն, . . . անհաւատութիւն, խռովութիւն, եր-դմնստութիւն» և այլ չարիքներ (ԺԴ, 25)։ Նոյնպէս կը խորհի Երեմիա. «Սպա-նանիցէք և շնայցէք և երդնուցուք սուտ և արկանիցէք խունկս Բահաղու» (Է, 9). Նոյնպէս Մաղաքիա (Գ, 5) և Պաւղոս (Ա Տիմ. Ա, 10)։ Կատարեալ ձայնակցութեամբ այս սրբազան հեղինակաց հետ, մեր մեծն Ներսէս ալ «զանողորմածութիւնս և զսու-տերդմնութիւնս և զարիւնահեղութեան սպա-նութիւնս... ընդ մի օրինակ զամենեսեան*

ի միում խորխորատ կորստեան համարէր» (Փաւս. Դ, դ)։ — Ղուրանն այսպէս կ՚օրինադրէ. «Սուտ երդումներ մի՛ ընէք ձեր մէջ», որոյ համար Աստուած հաշիւ պիտի պահանջէ դատաստանին (ԺԶ, 95)։ «Երբ երդում մը պիտի կատարէք, կը կրկնէ այլուր, արդարութեամբ կատարեցէք, նոյն իսկ եթէ ազգականի մը համար լինի» (Զ, 153)։ — Ամէն ազգեր հաւասար գիտակցութիւն չունէին ասոր չարութեան. Հրէից ժամանակակից հեթանոսք յոյժ կը բամբասուին այս մասին. «Ի սուտ երդումն վաղվաղեն, զի յանշունչ կուռսն յուսացեալք՝ երդնուն սուտ, և պատժի ոչ ունին ակն ... սուտ երդնուն ի կուռսն՝ արհամարհեալ զսրբութիւնն» (Իմաստ. ԺԴ, 28–30)։

2. Ստերդմնութեան պատիժն ալ համեմատական եղած է անոր յոռութեան։ Զաքարիայի խօսող հրեշտակը թռչող գերանդի մը կը ցուցնէ և կ՚ըսէ. «Ամենայն ստերդման վրէժ մահուչափ դովաւ խընդրեսցի... մտցէ ի տունս գողոց և ի տունս որ երդնուցուն սուտ յանուն իմ, . . . և վախճանեսցէ զնա» (Ե, 3–4)։ Մաղաքիա կը կրկնէ՝ թէ Աստուած պիտի պատու-

հասէ զանոնք «ոյք երդնուցուն յանուն իմ ստութեամբ» (Գ, 5)։ Բայց մեղմագոյն էր անոնց երկրաւոր պատիժը. ըստ Մովսիսական օրինաց՝ սուտ երդմամբ անիրաւողը պարտէր կողոպտածը դարձնել տուգանօք հանդերձ, և միանգամայն խոյ մը զոհել (Ղեւտ. Զ, 1–7)։ Աւելի ծանր էր «յանդիմանութեան ջուրը՝» որ կը քայքայէր անհաւատարիմ կնոջ մարմինը (Թիւք, Ե, 18–28)։ Անոնց երդման եղանակն իսկ սոսկալի էր. ստերդմնութեան դէմ անէծքներ կը կարդային դատաստանի մէջ. ջահ մը կը մարէին և վշտագին ձայներ կը հանէին (Վիգուր.–Երդ.)։

Յոյները ստողին վրայ կը հրաւիրէին դժոխոց Կատաղեաց բարկութիւնը. Հոմերի կողմէ վկայ կը կոչուին «վրէժխնդիրքըն Պատուհասք մարդկան ի խոր սանդարամետս՝ որ ստերդումն ոք լինիցի» (Իլ. ԺԹ, 259–60)։ Անոնց մէջ ալ կար գործնական երդումը կամ անմեղութեան փորձը՝ նման հրէականին։ Կը յիշուի որ յոյն մը խարուկի բոցէն անցեր է և շանթացած երկաթներ բռներ ։ Եգերայի մէջ Գայիայի քրմուհին ի ցոյց իւր ամուսնական հաւատարմութեան՝ ցլու արիւն կ'ըմպէր ։ Ի

Սիկիլիա ծծմբային աղբերաց մէջ կը մըտնէին, ուսկից ստերդումը չէր կարող ողջ ելնել։ Ի Կապադովկիա կ'ըմպէին ջերմկի մը ջուրը, որ իսկոյն անծանօթ վնաս մը կը հասցնէր ստողին (Դարեմբ. Գ, 763)։

Նոյնքան խիստ էին և Հռովմայեցիք. Ստելլիոնի օրէնքը կը պատժէր աքսորմամբ. Յաղագս երդման օրէնքը՝ խարազանութեամբ. Յաղագս դաշանցը՝ վատահամբաւ հռչակելով. Յաղագս աւագութեանցը՝ զրկելով պատիւներէ. Օրինագիրքը՝ չընդունելով ուրիշ անգամ ոչ երդման և ոչ վկայութեան[1]։ Վերջապէս մահուամբ կը պատժուէր՝ եթէ ստերդմնութիւնը պատճառած էր անմեղի մը կորուստը (Գոշլ. ժէ, 233)։

Գերմանաց հին օրէնքը տուգանաց կ'ենթարկէր երդմնակցօք միասին (Նոյն, ԻԲ, 27)։ Մեծին Կարոլոսի օրէնքն աւելի խիստ էր. սուտ երդմամբ շահուածը կը դարձնէր սեպհական տիրոջ, ստողը կը զրկէր պատիւներէ և իշխանութիւններէ, և ըստ պարագային մատներն ալ կը կտրէր. և մինչև իսկ կը սպաննէր՝ եթէ ստերդմնութեամբ

1. Larousse, Grand Dict. univ. - Parjure.

ուրիշ մը մահուամբ վախճանած էր։ Սոյն պատժոց կ'ենթարկուէին և անոնք՝ որ չարութեամբ ստերդմնութեան մղած էին զուրիշը (Լարուս, անդ. Գոշլ. ժէ, 233)։

Այս բոլոր օրինակներէն կրնանք հետևցնել՝ թէ մեր մէջ անորոշաբար յիշուած նմանօրինակ խիստ պատիժներն ալ հաւասարապէս յատուկ էին ստերդմանց՝ ինչպէս միւս չարագործաց։

**ԺԲ. — Երդմնազանցութիւն։** — Ուխտից հաւատարմութիւնը, նոյնպէս և դրժանքը՝ հանդերձ իւր հետևանօք՝ կային և ուրիշ ազգաց մէջ, թէև ոչ հաւասար չափով. ինչպէս մեր հարք ալ միշտ նոյն ուժով չպահեցին երդումը (աստ, 86–97), և անխախտ չմնաց Մանդակունւոյն սա գեղեցիկ սկզբունքը. «Մեծ առաքինութիւն այս է՝ եթէ մտօք ոք ի բանս կամ յերդմունս հաստատուն կայցէ, քան զողորմութիւնս և զպատարագս մատուցանել» (ժե, 115)։

Հրեայք ընդհանրապէս ամենէն խիստ էին երդմնապահութեան մէջ, նոյն իսկ մեզմէ ալ աւելի։ Մովսիսական օրէնքը կը պատուիրէր յարգել որ և է երդում (Թիւք, Լ, 3)։ Երդմնելու պահուն անոնք որթ մը երկու մասանց կը բաժնէին և ա-

նոնց միջէն կ'անցնէին (Երեմ. ԼԴ, 18). և սա սպառնալիք մ'էր համանման մահուան անոր դէմ որ երդմնադրուժ լինէր (Ա Թագ. ԺԱ, 7)։ Սաւուղ պատերազմի մը մէջ երդուաւ՝ որ ոչ ոք պիտի ճաշէր մինչև երեկոյ. իւր որդին Յովնաթան անգիտութեամբ կերեր էր. և հայրը պիտի ըսպաննէր զայն՝ եթէ ժողովուրդը ծանր ըսպառնալեօք չընդդիմանար իրեն (Ա Թագ. ԺԴ, 44–5)։ Նոյն ինքն Սաւուղ կոտորեց Գաբաւոնացիքը հակառակ երդման՝ զոր տուած էր Յեսու. ապոր ի պատիժ երեք տարի սով ընկաւ Դաւթի օրով, և չդադրեցաւ՝ մինչև որ սա հատուցումն ըրաւ, կոտորելոց խնդրանօք անոնց վրէժխնդրութեան յանձնելով երդմնազանցին տնէն եօթն հոգի (Բ Թագ. ԻԱ, 1–9)։ Բ Մնացորդաց գիրքը կը պարսաւէ զՍեդեկիա վասն «անցանելոյ զերդմամբքն զոր երդմնեցոյց զնա (Նաբուգոդոնոսոր) յԱստուած իւր» (ԼԶ, 13)։ Նոյն մեղադրութիւնը կ'ընէ նաև Եզր (Ա, Ա, 48)։ Նեեմեայ օրով Հրեայք իրենց ուխտին մէջ հետագայ սպառնալիքը կը խառնէին. «Որ միանգամ անցցէ զօրինօք քովք, երդմամբ հաստատեմք այսօր առաջի քո, եղիցի նա ի նը-

զովս և յանէծս» (Նե. Ժ, 29)։ — Երդմնապահութեան այս հոգին չմնաց սակայն մինչև վերջ. Յիսուսի օրով մեծապէս թուլացած էր այն։ Նոյն ինքն փարիսեցիք, օրինաց խրոխտ վարդապետները, կը զատէին և անզօր ու լուծանելի կը համարէին տաճարին ու սեղանոյն վրայ կատարուած երդումները. և հաստատուն՝ սրբավայրի ոսկւոյն ու պատարագին վրայ տրուածները. և որոց դէմ պայքարեցաւ Յիսուս (Մտթ. իԳ, 16–22)։

Ասորիք շատ հեռի էին հրէական հին խղճմտութենէն ։ Մակաբէ քաջալերելու համար իւր տոհմակիցքն առաքինութեան մէջ, կը յիշեցնէր անոնց չարութիւնքը, յորս «և զուխտիցն անցանել և զերդմանցն անարգել» (Բ Մակ. ԺԵ, 10)։ Օրինակներն ալ անպակաս են. Անտիոքոս Եւպատոր յետ հաշտութիւն խօսելու Հրէից իշխանաց հետ, «ստեաց զերդումն զոր երդուաւ» (Ա Մակ. Զ, 62)։ Դեմետրի զօրավարը Բաքիդ երդնլով չվնասել անոնց, իսկոյն սկսաւ կոտորել. գայթակղեցան Հրեայք՝ և կ՚ըսէին. «Զիք ի նոսա իրաւունք և ոչ ճշմարտութիւն, զի անցին ըստ հաստատութիւն և ըստ երդումն զոր երդուան»

(անդ, Է, 15–8)։ Անտիոքոս Եպիփանի տե-
ղակալն Անդրոնիկէ «ծանր ծանր երդ-
մամբք» իջուց զՈնիա ապաստանի ամրո-
ցէն և իսկոյն սպանեց (Բ Մակ. Դ, 34)։
Այսքան թեթև էր անոնց համար երդմնա-
զանցութիւնը։

Պարսիկք մի և նոյն նկարագիրն ունէին։
Շապուհ հաշտութիւն երդնլով մեր Արշա-
կայ, երբ սա իրեն գնաց, իսկոյն ձերբա-
կալեց ու բանտեց (Փաւս. Դ, ԾԳ–ԾԴ)։ Ե-
ղիշէ յիշելով Միհրներսեհի «ուխտ հաս-
տատութեան՝» զոր կը յղէր մեր փախըս-
տական իշխանաց, կը յարէ՝ թէ «գիտէին
նոքա զդառնութիւն տէրութեանն՝ թէ սուտ
են յամենայնի» և դրժելու պատրաստ (Է)։

Հելլէնք ևս չէին զանազանիր նախորդ-
ներէն. աւելի տեսականօրէն կը ճանաչէին
անոնք հաւատարմութիւնը քան գործնա-
կանապէս։ Ագամեմնոն յիշելով Տրովեանց
երդմնազանցութիւնն առ Աքայեցիս, կ'ը-
սէր՝ թէ Արամազդ «սրտմտեալ ընդ դրժա-
նացս՝» վրէժ պիտի խնդրէր անոնց կա-
նանցմէ ու զաւակներէն, կործանելով ա-
նոնց քաղաքը գլխովին (Իլիակ. Դ, 157–
68)։ Ողիմպիոյ մէջ նոյն Արամազդայ ար-
ձանը կար՝ կայծակն ի ձեռին, երդմնա-

զանցից նետելու ձևին մէջ (Նոր Հնրգիտ. Երգ.)։ Տեսանք վերև (155–9) անէծքներն ալ՝ զոր երդման պահուն կը կարդային դրժողաց դէմ։ Բայց արդեամբ շատ սովորական էր անոնց՝ երդմանց արհամարհութիւնը. այնքան որ Հռովմայեցիք գայթակղած էին, և հնարած երգիծական բացատրութիւնս՝ «յունական հաւատարմութիւն»։ Այս անկումն աւելի զգալի էր կրօսերագոյն ժամանակաց մէջ. որով հելլէն գրիչք կը հարկադրէին ըսել հեգնօրէն, «որպէս թէ հին աստուածոց փոխանակած էին նորեր» (Դարեմբ. Գ, 768)։ Թէև այդ փոխանակութիւնը շատ կանուխ ալ երևի. զի Ոդիսականին մէջ արժանիք մը կը համարուի նոյն շահը քաղել երդմանէն՝ ինչ որ գողութենէն (ԺԹ, 395–6)։ Եւրիպիդէս կ՚արդարացնէ այս զեղծումն՝ ըսելով. «լեզուն երդուաւ, ոչ եթէ հոգին»։ Իսկ կանանց երդմունք կը համարուէին «ջրոյ վրայ գրուած»։ Ամենէն աւելի երդմնադրուժ՝ Սպարտացիք էին. ուր Աթենացիք աւելի ուխտապահ կը համարուէին ու կը պարծէին «աստիկեան հաւատարմութեամբ» (Դարեմբ. անդ)։ — Իմաստասէրք իրենց ազգէն աստուածոց

հասած այս անարգանաց առաջքն առնլու համար՝ հնարեցին երդումն աննշան վկայից վրայ. այս ինքն բուսոց և անասնոց. Զենոն կ'երդնուր կապարի (բոյսին) վրայ, ուրիշներ՝ կաղամբի, Սոկրատ՝ շան ու սօսւոյ, աթենացի կախարդը Լամպոն՝ սագի (անդ, 769)։

Հռովմայեցիք, աշակերտք Յունաց, այս մասին կարող էին դաս տալ անոնց։ Պարտաւորիչ կը համարէին անոնք դատաստանական խնդրոց մէջ տրուած երդումները միայն (Գոշլ. ԻԲ, 33). զի օրէնքը չէր կարող առանձնականներն ալ ապահովել։ Երկոտասան տախտակաց օրէնքը կ'որակէ երդմնադրուժները՝ «վատ» և «վկայելու անարժան» բառերով։ Քննիչք շատ խստութեամբ կը վարուէին անոնց հետ (Դարեմբ. Գ, 771)։ Հռովմէական համօզմանց մէջ աստուածները վրէժխնդիր էին անոնց դէմ ամենազգի չարիքներով, և կը վարձատրէին երդմնապահները (անդ, 769, 771)։ Կիկերոնի օրով կամ դատողութեան մէջ այս հաւատքը յեղաշրջուած էր. «Երդումն, կ'ըսէ նա, ոչ թէ աստուածոց բարկութեան՝ որ ոչ ինչ է, այլ արդարութեան և վստահութեան կը վերաբերի» (անդ, 169–70)։

*Ղուրանը հակասական վարդապետութիւններ ունի այս մասին։ Մերթ սաստիկ խիստ է երդմնազանցութեան դէմ. «Մի՛ դրժէք, կ'ըսէ, երդմանց՝ զորս երդուաք հանդիսապէս» (ԺԶ, 94)։ Եւ թէ «Ձեր երդումներն իբր նենգութեան միջոց մի՛ գործածէք», որոյ հետեւանաց համար պահուած է Աստուծմէ «ահաւոր տանջանք մը» (անդ, 97)։ Խօսելով այլուր հաւատարմական ուխտին վրայ, կ'ըսէ. «Ով դրժէ երդման, ի վնաս իրեն պիտի դրժէ. և ով դաշին հաւատարիմ կը մնայ, Աստուած անոր կը շնորհէ շքեղ հատուցում մը» (ԽԸ, 10)։ Եւ կը պատուիրէ երդմնազանց անհաւատից պետերուն դէմ յարձակիլ, պատժել զանոնք և իրենց ժողովուրդները (Թ, 12–4)։ — Յետոյ կը փոխէ լեզուն. և ըստ իւր սովորութեան, որով յետ զգուշացնելու՝ կը դառնայ միշտ աստուածային ներողութեան թեւոց ներքեւ ծածկել իւր հետեւողաց զեղծումները, կ'ըսէ. «Աստուած թոյլ տուած է ձեզ լուծելու ձեր երդումները. Նա ձեր տէրն է. Նա իմաստուն և հանճարեղ է» (ԿԶ, 2)։ Ուրիշ տեղ մը զանազանութիւն կը դնէ երդմանց մէջ, ըսելով՝ թէ որպէս զի անոնք պարտաւորիչ լինին՝*

դիտաւորութիւն հարկաւոր է. «Աստուած զձեզ չպիտի պատժէ ձեր երդմանց մէջ գործուած անխորհուրդ խօսքի մը համար. այլ պիտի պատժէ ձեր սրտից հաւանած գործոց համար»՝ եթէ չպահէք (Բ, 225)։ Եւ դարձեալ՝ «Նա զձեզ չպիտի պատժէ անխորհուրդ երդման մը համար (որուն կը դրժէք), այլ պիտի պատժէ՝ եթէ թեւ բանաք ձեր խոկացեալ յանձնառութենէն» (Ե, 91)։ Շատ բնական էր՝ որ այսպիսի երկդիմի պատուիրան մը բնաւ ազդեցութիւն չունենար մահմետականաց վրայ. և իրաւամբ դիտել կու տային մեր իշխանք՝ թէ ի՛նչպէս «նոքա ստեն երդմանցն որ առ մեզ» (սստ, 118)։ Այսր բազմապատիկ օրինակներէն կը բաւէ յառաջ բերել մին միայն, որ շատ ալ մօտ է մեր սրտին. Սմբատ Խոստովանողի դէպքը։ Յուսուփ ոստիկանը երդմամբ խոստացաւ խնայել անոր և զօրաց՝ եթէ անձնատուր լինէին. և երբ անոնք յանձն առին, նա շղթայեց և ապա տանջանօք սպանեց զարքայն (ՅԿ. կթդ. խԸ. խԹ)։

ԺԳ. — Երդմնաթափ։ — Երդմանէ կանոնական արձակումն ալ միայն մեզ յատուկ չէր (սստ, 89)։ Փոքր ի շատէ

կ'երևի այն և օտարաց քով։ Հրէական օրէնքը կը սահմանէ՝ որ երբ մէկը թեթեւութեամբ երդնու, մոռնայ և ապա յիշէ, պիտի քաւէ այդ մեղքը՝ որոջ մը կամ ալոջ մը զոհելով քահանային ձեռօք, կամ նուիրելով զոյգ մը տատրակ, կամ գրիւ մը նաշիհ՝ ըստ կարողութեան (Ղեւտ. Ե, 4-13), և ալ չի պարտաւորեր երդմանդ պահպանութիւնը։ Արարողութիւն մը՝ որ կը համապատասխանէ մեր մաշտոցի կանոնին։ Վերև (124) ըսինք՝ թէ հրէուհեաց երդմունք առանց հօր կամ ամուսնոյ յայտնի կամ լռելեայն հաճութեան՝ արդէն անզօր կը մնային։ — Այնպէս կը համարուի՝ թէ Հռովմէական կայսերութեան օրով՝ աստուածական իշխանութեամբ մը կարող էր կայսրը լուծել որ և է երդում (Դարեմբ. Գ, 770)։ — Ղուրանն ալ կ'ընդունի այս թոյլտուութիւնը, բայց ոչ առանց ապաշխարութեան. կը պատուիրէ ի փոխարէն՝ կերակրել տասն աղքատներ՝ իւր ընտանեաց տուած ազնիւ ուտեստէն, կամ ըզգեցնել զանոնք, կամ գերի մ'արձակել (Ե, 91)։ Այլուր խօսելով անոնց՝ որ կ'երդնուն հրաժարիլ իրենց կանանց կենակցութենէն, և ապա կ'ուզեն անոնց վերա-

ղառնալ, կը հրամայէ նախ գերի մ'ար-
ձակել, կամ երկու ամիս պահք պահել,
կամ վաթսուն աղքատ կերակրել (ՏԸ.
2–5)։

## ԵՐԴՄՈՒՆՔ ԴԻՒԱՑ ԵՒ ԱԽՏԻՑ

*Մեր մինչեւ ցարդ քննած երդումներն էին մարդոյ առ մարդ կամ առ Աստուած տուածները։ Իսկ այս վերջին մասին մէջ պիտի նկատենք դիւաց դէմ ուղղուածը, որով կը վարէր ամբողջ քրիստոնէական եկեղեցին, և ի դարման հիւանդութեանց գործածուածը։*

*Չար ու բարի հոգւոց հակառակամարտ ներգործութիւնը մարդկային կենաց ու բընական իրաց մէջ իսկ՝ ծանօթ էր բոլոր հին կրօններու, այլազան համոզումներով, որոնք կը կեդրոնանային սա կէտին վրայ՝ թէ ամէն վնաս կամ օգուտ, որ կը պատահէին մարդուն, և մինչեւ իսկ խօթութիւնք, մանաւանդ ծանրերն, անոնց արդիւնքն էին։ Հեթանոսք սովոր էին հալածել չար հոգիները հոտերով, ծխումներով, անոնց անհաճոյ կամ ահարեկիչ անուններով ու բառերով, նուագով, կախարդու-*

թեամբ և բժժանօք[1]։ — Հրեայք ալ ունէին նոյն հաւատքն ու բարքերը, առաւելապէս կրտսերագոյն դարուց մէջ։ Սատանայն կը հարուածէ զՅոբ՝ զրկելով հարստութենէն ու զաւակներէն, և վիրօք ծածկելով մարմինը (Յոբ, Ա–Բ)։ Սաւուղ կ՚այսահարի, և Դաւիթ քնարահարութեամբ կը հեռացնէ դեւը (Ա Թագ. ԺԶ, 14–23)։ Այսը կը խեղդէ Հռագուելի եօթն փեսաները, և Տուբիա ծխով մը կը վանէ զայն (Տոբ. Զ–Ը)։ Նոյն ինքն կը խօսի սուտ մարգարէից բերանով (Գ Թագ. ԻԲ, 21–2)։ Հրեայք Յիսուսի օրով դիւահարներ կը բժշկէին (Մտթ. ԺԲ, 27), և առ այս յատուկ պաշտօնեայներ ունէին «երդմնեցուցիչք» կոչուած (Գրծ. ԺԹ, 13)։

Քրիստոնէութիւնն ալ ճանչցաւ բարի ու չար ոգւոց դերը սկիզբէն ի վեր։ Խօսքըս յատկացնելով վերջնոց, զայն այսպէս կ՚ամփոփեմ ըստ Աւետարանին։ — Փրկագործութեան խորհրդէն յառաջ սատանայն աշխարհի իշխանն էր դարձած, զոր Յիսուս իր մահուամբ պիտի դատապարտէր, դուրս ձգէր ու խայտառակէր[2], ազատելով

1. Bergier. Dict. I, 1172։
2. Յհ. ԺԲ, 31. ԺԶ, 11. Կող. Բ, 15. Եբր. Բ, 14։

*զմարդիկ անոր ձեռքէն*[1]*։ Բայց և այնուհետեւ չպիտի հրաժարէր Թշնամին զանոնք որսալու տենչէն, և հաւատացեալք անոր հետ միշտ կռիւ պիտի մղէին*[2]*։ Անոր վերջին հարուածը պիտի տայ Փրկիչն երկրորդ գալստեամբ*[3]*։ — Սատանայն ոչ միայն պիտի ճակատէր մարդոց դէմ, այլ ոմանց մէջ իսկ պիտի մտնէր ու տանջէր զանոնք մարմնապէս, և որոնք դիւահար կը կոչուէին։ Յիսուս անդադար կը բժշկէր այսպիսիները, և նոյն իշխանութիւնը տուաւ իւր աշակերտաց ևս*[4]*, որոնք կը գործադրէին զայն*[5]*, երբեմն ոչ դիւահարներն ալ սատանային մատնելով*[6]*։ Փրկիչը հաստատեց՝ թէ չարին կողմանէ էր կնոջ մ'ութուտասնամեայ կարկամութիւնը*[7]*, աստուածային բանից անպտղութիւնը մեղաւորի սրտին մէջ*[8]*, Հրէից անհաւատութիւնը*[9]*, Յուդայի մատնութիւնը*[10] *և այլն։*

1. Կող. Ա, 13։
2. Ա Պետ. Ե, 8. Եփես. Զ, 12. – Եզնիկ, Ա. ժդ։
3. Բ Թես. Բ, 8. Յայտ. Ի, 9։
4. Մատթ. Ժ, 8 ևն։
5. Մրկ. Զ, 13. Ղկ. Ժ, 17-20. Գրծ. Ե, 16 ևն։
6. Ա Կոր. Ե, 5. Ա Տիմ. Ա, 20։
7. Ղկ. ԺԳ, 16։
8. Մրկ. Դ, 15. Ղկ. Ը, 12։
9. Յհ. Ը, 44։
10. Ղկ. ԻԲ, 3. Յհ. ԺԳ, 2, 27։

Բնական էր՝ որ այս համոզմունքն ու սովորոյթը ճշդութեամբ իւրացնէին բոլոր Հարք ու վարդապետք եկեղեցւոյ, ինչպէս ըրին մերայինք ալ։ Նարեկացին դիւաց կ'ընծայէ մարդոց հոգեկան ու մարմնական թերութիւնքը գլխովին, ըսելով. «յաւելուածք կրկնատգեղ և անվայելուչ պատահմանց ի հնարից չարին ի մեզ յայտնելոց» (Աղ. Գ.Դ., բ)։ Աւելի կանուխ նոյնպէս կը խորհէր և Օձնեցին՝ երբ կ'ըսէր. «Տեսանեմք ի ծառայութիւն զեկեալսն սատանայի խեղանդամս և ոգեհաշմս, ծիւրեալս, ծմրդեալս և կասեալս ի զօրութենէ» (Ընդ. Պաւղ. 41)։ Մաշտոցն յայտնապէս դիւաց կը վերագրէ հիւանդութիւնքն ինքնին հետագայ բացատրութեամբ՝ զոր կ'ընէ Ջերմնոտի աղօթից մէջ. «Դու առաքեա ի սա զառողջութիւն, և խափանեա ի սմանէ զցաւս զյայտնիս և ըզգաղտնիս ի բաց, և հեռի արա զսատանայ զհակառակորդն մեր» (զրչք.)։ Եւ դարու Հայք աւելի չափազանցութեան գնացեր էին, «ի դիւէ» կամ «յայսոյ» կարծելով մարմնոյն հասարակ երեւոյթներն իսկ, ինչպէս յօրանջելն ու ձգտելը, փնչելը, լեզուին և ըմբանին կծելը, ունկան հարկանելը, որուն չի հաւանիր Եզնիկ (Բ, ժԹ)։

Ըսի՝ թէ դիւաց ներգործութիւնը կը դրուէր և բնական իրաց մէջ. աստի է ըստ իս՝ սրբոյ և պղծոյ հիմնական զանազանութիւնը, որ շատ աւելի ընդարձակ ուրիշ կրօնից մէջ, և յատկապէս մազդեզականութեան ու հրէութեան մէջ, չափաւորեցաւ քրիստոնէութեան ձեռքով։ Առաքելոց ժողովն ուտելեաց մէջ խորշելի հրաչակեց կռոց զոհեալը, հեղձուցեալ անասունն ու արիւնը[1]։ Պաւղոս՝ ազատախոհ մարդ մը, կերակրոց անսրբութիւնն ոչ իրական, այլ յարաբերական կը դնէ. «Ոչ ինչ է, կ'ըսէ, պիղծ նովաւ (Քրիստոսիւ). բայց այնմ որ համարիցի ոք ինչ պիղծ՝ նմա է պիղծ[2]»։ Եւ այլուր խօսելով զոհելոց մասին, կ'ըսէ՝ թէ կուռքերն որ ոչինչ են, չեն կարող պղծել իրենց նուիրեալը. սակայն կը զգուշացնէ ուտելէ՝ տկարամիտները չգայթակղեցնելու համար[3]։ — Շատ հաւանօրէն սոյն մտօք էր

1. Գրծ. ԺԵ, 20, 29. ԻԱ, 25. — Արիւնը կ'արգելուր և մովսիսական օրէնքը, զայն կենդանւոյն «շունչը» կամ կեանքը համարելով (Ծննդ. Թ, 4–5. Ղևտ. ԺԷ, 10–4)։
2. Հռ. ԺԴ, 14։
3. Ա Կոր. Ը, Ժ. — Այդ քրիստոնէական և միանգամայն հրէական սահմանին ազդեցութեան ներքև կը պատուիրէ Ղուրանն ալ՝ թէ «Մի՛ ուտէք բնաւ այնպիսի

առաքելական ժողովոյն արգելքն ալ։ — Ըստ իրեն՝ «ամենայն արարածք Աստուծոյ բարի են, և չիք ինչ խոտան,... զի սրբի բանիւն Աստուծոյ և աղօթիւք»[1]։ Ոսկեբերան այս վերջին պայմանը պատահական կը հասկնայ և ոչ ստիպողական. այս տեղ, կ'ըսէ նա, առաքեալն «երկուս գլուխս դնէ. մի՝ թէ չիք ինչ արարած որ պղծիցի». այս ինքն՝ որ ի բնէ պիղծ լինի. «և միւս ևս՝ եթէ պղծիցի ինչ, այլ ունիս դեղ. կնքեա՝ գոհացիր՝ փառաւորեա զԱստուած, և ամենայն պղծութիւն ի բաց մերժին»։ Զոհելոյն համար կ'ըսէ՝ թէ «հաղորդեցաւ կերակուրն դիւաց». և եթէ գիտութեամբ ուտէ մարդ զայն՝ կը պղծուի, իսկ անգիտութեամբ՝ ոչ։ Խոզենին ևս, պիղծ ըստ հին օրինաց, կը սրբուի խաչակնքելով[2]։

Հայ եկեղեցւոյ մէջ ալ մուտ գտած և աւելի ընդարձակուած կը գտնենք սոյն խըտ-

կերակուրներ՝ որոց վրայ Աստուծոյ անունը յիշուած չէ. ոճիր մ'է այդ» (Զ, 121)։

1. Ա Տիմ. Դ, 5։

2. Մեկն. Ա Տիմ. ԺԲ, 96։ — Ղուրանն ալ կ'արգելու մեռեալ անասունը, արիւնն ու խոզենին, զորս սակայն «առ հարկի կարօտութեան» թոյլ կու տայ ուտել (Զ, 146. Բ, 168)։

րութիւնը. Ս. Ներսէս պարթեւ կ'արգելուր ուտել մեռելոտին և արիւնը՝ զորս «պիղծ համարէր առաջի Տեառն» (Փաւս. Դ, Դ)։ Նոյն կարծիքը կը յայտնեն նաև Յաճախապատումը (Ը, 71) և Շնորհալին (Թղթ. Միջ. 251)։ — Յազկերտ Հայոց նախարարները չարչարեց՝ որ յանձն չառին «ուտել զմիս զոհեալ, զոր ոչ էր երբեք օրէն ուտել քրիստոնէից» (Եղիշ. Բ)։ Մոզպետն որ յետոյ ի Հայաստան եկաւ, նա եւս կ'ուզէր «բռնաբար» կերցնել Հայոց «միս յազածոյ» (անդ, Գ)։ — Մեր Հարց համար պիղծ էին նաեւ մուկն ու անոր կրծածը (Շնորհ. 248). կային և ինչ ինչ «անսուրբ անասունք» (Կիրակ. ԻԴ. Տաթ. Քրզ. ձմր. 134). և Մաշտոցը, սկսեալ մեր ԺԱ դարու օրինակէն, ունի աղօթից երկու կանոններ՝ անոնցմէ ակամայ ճաշակողները սրբելու համար։

Տեղւոյս չէ այս նիւթիս վրայ աւելի ընդարձակ խօսել. այսքանը հարկ համարեցայ ըսել, ցուցնելու համար՝ թէ ինչ էր դեւերը երդմնեցնելուն իսկական պատճառը։ Այժմ անցնինք անոր նկարագրին ու տեսակաց։

## Ա. ԵՐԳՈՒՄՆ ԵՐԱԽԱՅԻՑ

*Ըստ առաքելական սկզբանց՝ այն մարդիկ որ տակաւին չեն զգեցած մկրտութեան շնորհքը, ծառայ են մեղաց և սատանայի* (Ա Յհ. Գ, 8–10)։ *Մկրտութիւնը կ'ազատէ զիրենք այդ ծառայութենէն, և պարտք կը դնէ առաքինութեան շաւղին հետեւիլ* (Հռ. Զ, 1–8. Եբր. Զ, 4–6)։ *Այս նոր փոփոխութեան առաջին քայլն է հրաժարումն ի սատանայէ երդմամբ. արարողութիւն մը՝ որ կը պահուի ցարդ, և որ ծանօթ էր՝ ինչ ինչ փոքր զանազանութեամբք՝ և քրիստոնէական հին ընդհանուր եկեղեցւոյն մէջ իսկ*[1], *որմէ առին մեր Հարք ալ նոյն ձեւով ու կազմով։*

1. – *Երդումն*։ — *Ասոր մասին մեզմէ առաջին խօսողն է Մաշտոցին վրայ վատակաւորն Յհ. Մանդակունի, որ հրաժարման այս արարողութեան մէջ իսկական երդում կը դնէ՝ առանց սակայն մեր գիտցածէն տարբեր բանաձեւի մը։ Ահա*

1. Cabrol, Dict. d'Archéol. chrét. II, 260-335. — Martigny, Dict. des Antiq. chrét. 696, 676.

իւր խօսքեր. «Գիտաց, կ՚ըսէ նա, անի-
ծեալ թշնամին (սատանայ), թէ ի ժամ
մկրտութեանն երդմամբ հրաժարեն յինէն,
և երդմամբ ուրանայցեն զիս, երդմամբ
հեռասցին յինէն՝ ասելով, թէ Հրաժարեմք
ի քէն...» յայտնի բանաձեւը (ԺԵ, 114).
և զոր կը կրկնէ փոքր ինչ յետոյ (115)։
Հայրապետիս բացատրութեան հետ կը միա-
բանի Մաշտոցին ալ, որոյ մեզ արդէն
ծանօթ (տես, 98–9) հնագոյն օրինակին
մէջ իսկ՝ ԺԱ դարուն՝ կը կարդամ, թէ
քահանայն «երդմնեցուցանէ երիցս անգամ,
ասելով» ևն։ — Ապա գալով հաւատոյ
դաւանութեան, հոն ալ, կը յաւելու Ման-
դակունին, «երիցս անգամ երդուան և հա-
ւատացին ի սուրբ Երրորդութիւնն՝ ասե-
լով. Հաւատամք ի Հայր...» (114), ա-
ռանց ուրիշ յատուկ երդմնաձեւի մը։ Ո-
րով երկու պարագայից մէջ ալ ծանօթ
խօսքերն երդման ոյժ ունին ըստ Հայրա-
պետիս և Մաշտոցին. ըսենք նաև ըստ
Յովհ. Իմաստասիրի, որ հրաժարման ձե-
ւերը կը կոչէ նոյնպէս «երդմունս» (8)։

2. — Վայր։ — Սոյն արարողութիւնը
կը կատարուէր մկրտութեան սկիզբն իսկ՝
ըստ Իմաստասիրին (8–9, 27) ու Մաշ-

տոցին, սկսեալ մեր հնագոյն օրինակէն. և սրբավայրին դրան առջեւ, ըստ նոյն Իմաստասիրին՝ թէ «զերախայիցն... զխոստովանելն առ դուրս մկրտարանին կատարել, և ապա տանել ի ներքս» (27)։ Մաշտոցը նկատելով՝ որ ամէն աղօթատուն առանձին մկրտարան չունէր, նոյն երդումը կատարել կու տայ «առ դրան եկեղեցւոյն», զոր կը կրկնէ Երզնկացին Գեւորգ Վրդ. եւս, «ի դրան եկեղեցւոյն», խրատ մկրտութեան կոչուած գրութեանը մէջ՝ զոր կը պահէ վանացս գրչագրատունը։

3. – Պաշտօնեայ։ — Մեր քով հին ժամանակ քահանայն կը յիշուի միշտ, որ և պիտի մկրտէ. «Քահանայք, կ'ըսէ Յաճախապատումը, . . . զմկրտեալսն հրաժարեցուցանեն ի սատանայէ» (Բ, 15). «քահանայն» է նաև ըստ հին ու նոր մաշտոցաց։ Երբ միջին դարուն մեր մէջ մըտաւ յատուկ երդմնեցուցչի պաշտօնը, որոյ մասին աւելի վերջ պիտի խօսիմ (Գ, 3), ասոր վիճակեցաւ նաև «զերախայն հրաժարել ի սատանայէ», ինչպէս կ'աւանդէ Տաթեւացին (Հրց. Թ, ըդ)։ Արդեօք սովորութիւն եղա՞ւ այս նորութիւնը, թէ լոկ սկզբունք մնաց, չեմ գիտեր. մանա-

*ւանդ թէ երկրորդը կը կարծեմ, նկատելով Ծործորեցւոյն ըսածը՝ թէ Հայք «զեօթն կարգն ի մի օր տալով» (Թղթ.), հարկաւ երդմնեցուցչի պաշտօնը վարելու ժամանակ անգամ չունէին։ Բաց աստի՝ թէ ըստ Գեւորգ Վի և թէ յաջորդ մաշտոցաց՝ դեռ միշտ «քահանայն» է երդմնեցընողը։*

4. — **Արարողութիւն**։ — *Նկարագիրը պիտի առնում ԺԱ դարու մաշտոցէն, զանց ընելով այլոց փոքր տարբերութիւնքը, և Երզնկացիէն միանգամայն։ Քահանայն իւր հետ ունէր պաշտօնակիցներ ու հաւատացեալներ. «հանդերձ միաբան ուխտիւն» (Մշտ.)։ Դուռն ելնելով՝ «հրամայէ երախային դառնալ յարեւմուտս» (անդ)։ Ի հընուց յարգի էր արեւելքը, ուսկից «արեգակն» Քրիստոս*[1] *պիտի երեւի երկրորդ գալըստեան՝ ըստ Աւետարանին և Հարց. ուր հաստատուած էր եդեմական դրախտը*[2]*, ևն. ասոր համար եկեղեցին և աղօթականք միշտ նոյն կողմը կը նայէին. որով հակառակ կողմն անարգ էր և սեպհական չարին։ Հետեւաբար հրաժարումը կը կա-*

1. Ղուկ. Ա, 78. Մաթ. ԻԴ, 27։
2. Ծննդ. Բ, 8։

տարէին՝ դառնալով դէպ ի չարին կողմը. կամ ըստ Տաթեւացւոյն՝ «զի սատանայ և տգիտութիւնն և մեղքն խաւար են, վասն որոյ ի մուտս արեւու ուրանամք և հրաժարեմք» (Քրզ. ձմր. 146)։ Այս տեղ կնքահայրը գրկած զերախայն, եթէ մանուկ էր, կը կանգնէր «յահեակ կողմն ի դրան եկեղեցւոյն, և բռնէ զձեռն հրաժարական, այս ինքն զափից մէջն յարեւմուտն ունելով». իսկ «քահանայն կանգնի յաջ դեհն դրան եկեղեցւոյն» (Երզ.)։

Այս պահուն երախայն ինքնին կ'ըսէր հետագայ երդմնաձեւն ըստ Մանդակունւոյն. «Հրաժարեմք ի քէն, սատանայ, հրաժարեմք ի պաշտամանէ քումմէ, հրաժարեմք ի հրեշտակաց քոց, հրաժարեմք յամենայն խաբէութենէ քումմէ» (ԺԵ, 114)։ — Հին մաշտոցին մէջ փոքր ինչ տարբեր է այդ ձեւը. «Հրաժարեմք ի քեն, սատանա(յ), և յամենայն խաբեութենե քումմե և ի պատրանաց քոց և ի պաշտմանե քումմէ և ի գնացից քոց և ի հրշտակաց քոց»։ Այս խօսքը կը կրկնէր «երիցս անգամ». և քահանայն կը հարցնէր նոյնչափ անգամ. «Հրաժարե՞ս». իսկ երախայն իւրաքանչիւր հարցման կը պատաս-

խանէր, «Հրաժարեմ» (անդ)։ Այս յաւե֊լուածին յիշատակը կայ և իմաստասիրին բացատրութեան մէջ. «զհրաժարելոյն ի սատանայէ նոցա հարցմամբ» (8)։ — Եր֊զընկացին կամ թէ իւր ժամանակն երա֊խային դիւրութեան համար ասոր երկար բանաձեւն ալ վերածած էր հարցման՝ քա֊հանային կողմանէ, — թէև ոչ ժամանա֊կակից և ՚ոչ հետագայ մաշտոցք ընդունած են զայդ. — «Հրաժարե՞ս ի սատանայէ, և յամենայն խաբէութենէ նորա, և ի գը֊նացից նորա, և ի հրեշտակաց նորա, և յամենայն զօրութենէ». զայս կը կրկնէր նոյնպէս « երիցս անգամ », և երախայն կը պատասխանէր՝ «Հրաժարեմ»։ Որուն քահանայն վերստին՝ «Հրաժարե՞ս, հրա֊ժարելով հրաժարե՞ս ». ու կը լռէ պա֊տասխանը՝ որ սակայն դիւրաւ կ՚իմացուի։

Ուս. Կոնիբեր՝ վատիկանեան հայ մաշ֊տոցի մը միջէն, գրուած 1299էն յառաջ, քաղած է՝ անգղ. թարգմանութեամբ՝ հե֊տագայ կարեւոր մանրամասնութիւնը։ Քա֊հանայն, կ՚ըսէ, յետ դարձնելու երախայն յարեւմուտս, կը հրամայէ «երկարել ձեռնը դէպ ի նոյն կողմ, իբրեւ մխելով զայն մութ խաւարին մէջ. և կը հրամայէ ա֊

նոր թքանել երիցս սատանային վրայ, որ է ուրանալ զայն. և կ'երդմնեցնէ երեք անգամ՝ ըսելով. Հրաժարե՞ս ի սատանայէ» ևն. իսկ երախայն կը պատասխանէ, «Հրաժարեմ». և միանգամայն «կը թքանէ սատանային վրայ»[1]։

Յետոյ քահանայն զերախայն «դարձուցանէ յարեւելս» (Մշտ. — Երգ.), որ էր ազնուական կողմը, կը վառէ երկու մոմեղէն, և կը դնէ երախային ձեռաց մէջ՝ ըսելով. «Դարձիր ի լոյս աստուածգիտութեան». ապա «դարձուցանէ զձեռն (նորընծային) խնդրողական, այս ինքն զափի մէջն յինքն ունելով» (Երգ.)։ Կոնիբերի օրինակն ասոր փոխարէն կ'ըսէ՝ «աչերն յերկինս վերացնելով և ձեռները կարկառելով»։ իսկ քահանայն կ'անցնի «ի ձախ կողմն եկեղեցւոյն» (Երգ.), «խոստովանելով զմի աստուածութիւն սրբոյ Երրորդութեանն» (Մշտ.)։ Թէ այս արարողական մանրամասնութիւնք որչափ հին են մեր

1. Rituale Armenorum, էջ 92, ծն. a. Այդ սովորոյթ Յոյներէն առնուած կը թուի, որոց մաշտոցին մէջ կ'երեւի ԺԳ դարէն (Գաբրոլ, Բ, 295) և կայ մինչև այսօր։ — Նոյն նպատակաւ անշուշտ Ե դարու հայ դիւթերն ալ կ'ընէին նոյն բանը. «Ի ձախ դիւթէ և յաջ թքթքէ» (Մանդ. ԻԶ, 185)։

մէջ՝ չեմ գիտեր. բայց Մանդակունին խոստովանութեան երդմնաձեւն ալ կու տայ՝ իբր երախայից յատուկ, որ է այս. «Հաւատամք ի Հայր, հաւատամք յՈրդի, հաւատամք ի սուրբ Հոգին»[1], զոր կը կրկնէին «երիցս անգամ» (ԺԵ, 114)։ Նոյնպէս հաստատական և Նուիրելոյն սեպհական կը թուի այն՝ Իմաստասիրին այս ակնարկութեան մէջ. «հաւատալ սրտիւ և խոստովանել բերանով, յորմէ կեալն հասցէ, զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին» (9)։ — Բայց հնագոյն մաշտոցին մէջ արդէն հարցական ձեւ առած է այն՝ քահանային կողմանէ՝ այսպէս. «Հաւատա՞ս յամենասուրբ երրորդութիւնն՝ ի Հայր և յՈրդի և ի Հոգին սուրբ». (ըստ Երզն. «երիցս անգամ»). և դարձեալ առանձնաբար, «Հաւատա՞ս ի Հայր, հաւատա՞ս յՈրդի, հաւատա՞ս ի սուրբ Հոգին»։ Եւ երախայն մէն մի հարցման կը պատասխանէր՝ «Հաւատամ»։ Քահանայն դարձեալ երեք ան-

1. Ուս. Կոնիբեր՝ անծանօթ Մանդակունւոյն այդ և վերոյիշեալ վկայութեանց, և տեղեակ լոկ Օձնեցւոյն, իւր սովորական հապճեպով հետեւցուց՝ թէ վերջինս նախ հաստատեց հրաժարման ու դաւանութեան սովորոյթը Հայոց մէջ, որոնք իբր թէ յառաջագոյն ձայնակից էին Նեստորականաց (The key of Truth, էջ LXXVIII)։

*գամ. «Հաւատամս». և երախայն նոյնչափ՝ «Հաւատամ»։ Ապա կը պաշտէին Նիկիական հանգանակը, համաձայն նաև Երզընկացւոյն։*

*Մանդակունին կը յաւելու՝ թէ դաւանութեան հետ երախայք «կնքեցին զինքեանս երրորդական զօրութեամբ Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն, և զսուրբ խաչն ի վերայ մատանի եդին»* (122)*. որ ուրիշ բան չի նշանակեր, բայց եթէ խաչակնքեցին իրենք զիրենք։ — Իսկ Երզնկացւոյն խրատուց մէջ արարողութիւնը կ'աւարտի աւագ օրհնութեան մը երեք տնով. «Երգեսցուք երգ նոր», և կամ «Յաղթական քեզ օրհնութիւն», համաձայն պատահած մեծ փոփոխութեան, որ է անցքն ի ծառայութենէ սատանայի առ Աստուած։*

*Այն կարգը կը կատարուէր «ի վերա(յ) տղայոց և չափահասից» առ հասարակ (Մշտ.)։ Սակայն Օձնեցւոյն օրով հայ եկեղեցականք՝ հակամէտ զեղծման, յաճախ զանց կ'ընէին զայն, որոյ դէմ կը բողոքէ նոյն հայրապետն՝ ըսելով. «Ոմանք զառ ի մկրտութիւն գալ հանդերձելոցն՝ զհրաժարելոյն ի սատանայէ նոցա հարցմամբ ի վերայ ոչ բերեն զերդմունս,*

և ոչ զսրբոյ Երրորդութեանն խոստովանութիւն ... այլ միայն առ մկրտութիւն աւազանին վաղվաղեալ՝ ի ներքս արկանեն» և այլն (8)։ Անկարգութիւն մը՝ որ շատ չտեւեց, ըստ որում բոլոր գրչագիր մաշտոցները կը պահեն նոյն ծէսն հաւատարմութեամբ։

5. — Վանացս մէկ օրինակը, գրուած ի Սիս 1345ին, բոլորովին տարբեր կազմութիւն մ'ունի երդման կարգին, զոր ստրկաբար թարգմանած է լատին մաշտոցէն, և որ հարկաւ գործադրուած է՝ գէթ մասնաւոր տեղւոյ ու ժամանակի մէջ։ — Նախ կը դնէ երկար աղօթք մը քահանայէն՝ հեռացնելու համար սատանային ազդեցութիւնը երախայէն. «և ապա փչէ երիցս անգամ յերեսս երախային, (որ) նշանակէ զհերքելն սատանայի որպէս հողմն զփոշի», յարելով այս երդմնաձեւը. «Ե՛լ, պեղծ ոգի, ե՛լ ի պատկերէս Աստուծոյ, և տուր պատիւ և փառս կենդանոյն Աստուծոյ Հաւր, և պատիւ և փառս ճշմարիտ որդոյ նորա Յիսուսի Քրիստոսի, և պատիւ և փառս մխիթարիչ սուրբ Հոգւոյն»։ Յետոյ «առնէ մատամբն խաչ ի ճակատն տղային», ըսելով. «Ես կնքեմ

ի ճակատ քո զնշան սուրբ խաչին տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»։ Նոյնը կը կրկնէ և կրծոց վրայ՝ սոյն բանաձևով. «Դնեմ զնշան սուրբ խաչին տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ի սիրտս քո»[1]։

Ապա «տրփրնդէ քահանայն ասելով. Երդմնեցուցանեմ զքեզ ամենապեղծ հոգի» և այլն, ընդարձակ ձև մը եռամասնեայ։ Ասոր կը յաջորդէ արտառոց արարողութիւնս. «Թքանէ[2] քահանայն յափն (իւր) և հասցէ ի բերանն և յականջն (երախային) և ասէ. Բացցիս որում բանալոց ես»։ Նոյնը կ՚ընէ «ցկիթն (քիթ). Բա՛ց և բացցիս առնուլ զհոտ անուշից»։ Յետոյ «յականջն ասէ. Դու, սատանայ, եղիցիս հալածեալ, զի դատաստանն Աստուծոյ ասա մտանէ». և կը յաւելու՝ թէ այս գործը

1. Արդի յոյն մաշտոցն ալ ունի այդ կրկին տեառնագրութիւնքը, բայց տարբեր բանաձևով. Նոյնպէս և փչումը քահանայէն, զոր կը յիշէ Ոսկեբերան ևս (Ցրգ. եկեղ. Դսկրզ. Բ, 6), և զոր գտած եմ Ս. Կիւրեղ երուսաղեմացւոյն քով ալ՝ դիւահարաց վրայ. «Դուզնաքեայ փչումն երդմնեցուցչին, կ՚ըսէ, հուր լինի առ աներևոյթ հողմոյն» (Կոչ. ընծ. ԺՁ, 352)։

2. Դաւիթ Վրդ. Ալաւկայ որդին՝ ԺԲ դարուն՝ կը յիշէ նման բան մը հայ հմայողաց կողմանէ. «Թքով բերանոյ իւրեանց ձեռամբ մարձեն զայնոսիկ (մանուկները). ասեն թէ յաչաղկոտէ հիւանդացեալ է, և մի՛ առցէ դարձեալ յաչաղումն» (Վս. հմայ.)։

կը լինի օրինակաւ Փրկչին՝ «որ թքովն երևաց զխուլն և զհամրն»։

Մաշտոցն յառաջ կը տանի։ Քահանայն «դարձուցանէ զերախայն յարեւմուտս և հրաժարեցուցանէ երիցս անգամ. Հրաժարէ՞ ի սատանայէ» և այլն, ծանօթ ձեւը՝ վերածուած երրորդ դէմքի. որոյ իւրաքանչիւր հարցման «ասէ կնքահայրն. Հրաժարէ»։ Որուն քահանայն, «Թո՛ւք ի սատանայի երեսն», Նման Կոնիբերի օրինակին։ Յետոյ «դարձուցանէ զտղայն ի յարեւելս, և հարցանէ երիցս անգամ», յարելով երեք չափաւոր բանաձեւեր. առաջինն՝ յԵրրորդութիւն, երկրորդն՝ ի մարդեղութիւն Բանին, երրորդն՝ ի կաթողիկէ Եկեղեցի, որոց մէջ համառօտուած են գլխաւոր վարդապետութիւնք։ Ասոր կը յաջորդէ Հաւատամքը ։ «Յետ այսր բերեն աղ, և քահանայն աւրհնէ» աղօթքով մը, խնդրելով ընել զայն «պատճառ փրկութեան ի հալածել զսատանայ անուամբ սուրբ Երրորդութեանդ». յետ որոյ «դնէ յաղէն ի բերանն (մանկան), զի ամենայն բան նորա իմաստութեամբ համեմեալ լինի», ըսելով այսպէս. «Ընկալ աղ իմաստութեան, զի Տէր ողորմեսցի քեզ ի յա-

ւիտենական կեանսն»։ Եւ յառաջ կը տանի երախայութեան կարգը։

-✳-

## Բ. ԵՐԴՈՒՄՆ ԱՊԱՇԽԱՐՈՂԱՑ

Այն քրիստոնեայք՝ որոնք անկանոն կեանք մը վարելէ վերջ կը զղջային եւ կ՚ուզէին ուղղութեան գալ, ապաշխարող կը կոչուէին։ Զանոնք ընդունելու համար հաւատացելոց մէջ, իրենց վրայ առանձին արարողութիւն մը կը կատարէր ընդհանուր հին եկեղեցին, ուստի եւ Հայկականը, զոր կը տեսնենք գրչագիր մաշտոցաց մէջ, սկսեալ հնագունէն։ Սոյն արարողութեան մասն էր մեր քով երդմնեցուցանելը։ Մեր քով՝ կ՚ըսեմ, որովհետեւ եւրոպացի հնախօսից բոլորովին անծանօթ է այս կէտս[1], որ նշան է թէ գոյութիւն ալ չունէր։ Իսկ մեր սովորութեան բուն պատճառը պիտի տեսնենք յաջորդ գլխոյն մէջ։

1. — Որովհետեւ ապաշխարութիւնը երկրորդ մկրտութիւն կը համարուէր, եւ

1. Տես Pénitence եւ Exorcisme ի Martigny, Dict. des Antiq. — Bergier, Dict. de Théol. — Goschler, Dict. encycl. եւ այլն։

*երկուքին նպատակն էր դարձ առ Աստուած, երգումն ալ մի և նոյն ձեւով կը կատարուէր երկու առթից մէջ եւս. անոր համար մեր հին մաշտոցը համառօտիւ միայն կը յիշէ ապաշխարողացը, գրելով՝ թէ «քահանայն» — այս կարգիս յատուկ պաշտօնեայն նաև ըստ Ստ. Օրբելինի (Պատմ. ԻՁ) — զղջացողը կը տանի «ի դուռն եկեղեցոյն», ինչպէս մկրտութեան ժամանակ. և յետ ընթերցուածոց և աղօթից՝ «դարձուցանէ յարեւմուտս և հրաժարեցուցանէ. և ապա դարձուցանէ յարեւելս և տա(յ) հաւատալ զերիս անձնաւորութիւնն. և ասէ զՀաւատամն ի բուն», որ է հանգանակը. աւելի բան չի ըսեր, տալով ընթերցողաց գուշակել երախայից ձեւէն ։ Սակայն վանացս գրչագրատան ուրիշ օրինակ մը 1387ին գրուած՝ նիւթապէս ալ կը դնէ զայդ՝ այսպէս. «Հարցանէ քահանայն. Հրաժարե՞ս ի սատանայէ և յամենայն խաբէութենէ նորա և ի պաշտամանց նորա և ի գնացից նորա և ի հրեշտակաց նորա ։ Եւ նուիրեալն ասէ. Հրաժարիմ. գ անգամ» ։ Յետոյ կը դնէ դաւանութեան ձեւը. «Եւ դարձեալ ասէ քահանայն. Հաւատա՞ս յամենասուրբ Եր-*

րորդութիւնն՝ ի Հայր և յՈրդի և ի սուրբ Հոգին, ի կաթուղիկէ եկեղեցի։ Եւ նուիրեալն ասէ. Հաւատամ, գ. և ասեն զՀաւատամն»։

2. — Սոյ վերոյիշեալ մաշտոցը երդման յատուկ կանոն մ'ալ ունի անոնց համար՝ որ «յերկեղէ մահու ուրացեալ լինին զքրիստոնէութիւնն», յարելով մահմետականութեան, այր թէ կին, և ապա կը դառնան։ Քահանայք, կ'ըսէ, ապաշխարողը «բերեն ի դուռն եկեղեցոյն, բացաւ գլխով, մերկ, բոկ ոտամբ, և լինի միով հանդերձիւ՝ գաւտէլոյծ»։ Հոս ըստ սովորութեան «դարձուցանեն զդէմքն յարեւմուտս, և զձեռն հրաժարական ընդդէմ ձիգ ունելով՝ հրաժարեցուցանէ քահանայն» հետեւեալ բանաձեւով. «Հրաժարե՞ս ի սատանայէ և ի դիւաց նորա և յամենայն խաբէութենէ և ի նենգաւոր գործոց նորա, ի գնացից՝ ի պատրանաց նորա։ Ուրանա՞ս զՄահմէտ, ապիզրի՞ս ի սուտ կրաւնից նորա, և ի չար ընկերակցաց նորա՝ ի յԱլւոյն, ի Պուպաքրէն, ի յՈւթմանէն, ի Միլիքմանկուճկա, ի յԱշէն, ի Ֆաթմայէն, և ի դիւաբախտ մոլեգին գընացիցն նոցա, և յամենայն վնասակար

գործոցն նոցայ»։ Այս ձեւը երիցս կրկնել կու տայ, միանգամայն «թքանելով յամբարիշտ գործս նոցա», համեմատ վերոյիշեալ սովորութեան (191, '6)։ Յետոյ «դարձուցանեն զդէմսն յարեւելս. և ի խոնարհ ունելով զաչս, ամբառնալով զձեռսն ընդդէմ երեսացն», երեք անգամ կը հարցնէ քահանայն հաւատոյ առանձին դաւանութիւն մը՝ որ կը բովանդակէ վարդապետութեան հիմունքը։ Իսկ ապաշխարողն «ի խոնարհ ի ծունր[1] ի վերայ երեսացն երկիր պագանելով, ասէ բարձր ձայնիւ. Հաւատամ և երկիր պագանեմ». և կը յարէ հանգանակը։

*

## Գ. ԵՐԴՈՒՄՆ ԴԻՒԱՀԱՐԱՑ

Յիշեցինք յառաջագոյն այսահարաց գոյութիւնն ու բժշկութիւնն առաքելական դարուն և յետոյ։ Թէ Հայք և թէ ուրիշներ բնական հիւանդութիւնները սաէպ կը շփոթէին դիւահարութեան հետ, ուստի յառաջ կու գար վերջնոյն յաճախութիւնը հին ժամանակ։

1. Ինչպէս կ'աւանդէ Ոսկեբերան երախայից երդման առթիւ ևս (մեկ. Բ Կոր. Բ. 7)։

Մեր Հայրք կ'որոշէին դիւահարներն ի յայտնի եւ ի ծածուկ՝ ըստ Եղիշէի անուանեալ կանոնաց. յայտնին անոնք էին որ «լլկին». եւ ծածուկը՝ որ գերի էին չորս գլխաւոր մեղաց. բարկութեան, ցանկութեան, ուրացութեան եւ ամբարտաւանութեան (Մատեն. Եղ. 296–7), համեմատ աւետարանի գաղափարին (տես, 180)։ Ըստ այսմ՝ Պապ ի ծննդեան դիւաց նուիրուած, «բնակեցին դեւք բազումք ի մանուկն», որով կը զազրագործէր՝ կ'ըսէ Փաւստոս (Դ, ԽԴ)։ Նոյն ինքն «այսամուտ» մը կը կոչէ զՀայր մարդպետ՝ որ զՏիրան սպանութեանց կը դրդէր (Գ, ԺԸ)։ Այդպէս կը համարի եւ Փարպեցին՝ սիւնեցի երեք ուրացողները. Վասակ՝ զոր «այսն պիղծ խեղդէր զնա» (ԽԵ). Վարազվաղան՝ որ էր «տանջեալ ի դիւէ» (ԽԶ), եւ Գդիհոն՝ որոյ մահը կը նախագուշակէր «այսն պիղծ որ էր ի նմա» (ՁԲ)։ Այս օրինակներէն կարելի է հետեւցնել՝ թէ մեր Հայրց այս համոզման արդիւնք էր ապաշխարողաց երդման նախայիշեալ սովորութիւնը. այս ինքն բուժումն ծածուկ դիւահարութեանէն։ — Ներկայ գլխոյս նիւթը սակայն յայտնին է, որուն կ'ենթարկուէին՝ ըստ Եզնը-

կայ (Ա, իա) և Եղիշէի (198) անմեղներ ու մեղաւորներ առ հասարակ. և որոց այդ հարուածը կը հասնէր Աստուծոյ թոյլտուութեամբ (Եզն. Ա, իբ)։ Ասոնց բուժման համար կար յատուկ

1. – Երդումն։ — Արդարեւ Աւետարանը յանձնարարած է աղօթք ու պահք (Մրկ. Թ, 28), զոր կը կրկնեն նաև Հարք։ Եղիշէ այդ երկուց կը յարէ և ուխտագնացութիւն Սրբոց նշխարաց (298), զոր ըստ Մանդակունւոյն պարտէր կատարել նոյն ինքն այսահարը (186, 189), և որոյ օգտակարութեան վրայ կը պնդեն նոյն հայրապետն (անդ), Եզնիկ (Ա, իա, իբ) և այլք։

Բայց տարբեր էր աստի բուն երդումը, որոյ համար կը հարցնէ Մանդակունին. «զի՞նչ են երդմունք դիւացն». և կը պատասխանէ. «ո՞չ ապաքէն պահք և աղօթք հաւատովք» (186), հաստատուած նոյնպէս աւետարանական սահմանին վրայ (189). և այդ աղօթքը կը մատուցանէր երկրորդ անձ մը, զոր կը կրկնէ և Եզնիկ, ըսելով դիւահարին համար՝ թէ «սրբովք (առաքինի պաշտօնէիւք) աղաչեցեալ զԱստուած, օգնականութիւն գտանէր բու-

*ժելոյ ի չարէն»* (Ա, իր)։ *Վերջինս կը յաւելու՝ թէ այս կարգը կը կատարուէր ոչ լոկ հաւատացելոց, այլ և օտարաց վրայ. «Զայնր զփորձ ոչ միայն քրիստոնեայք, այլ և հեթանոսք և մոգք* (*պարսիկք*) *գիտեն*[1]» (Ա, իր)։

2. – *Արտաքսութիւն։* — *Կը կայանար ուրեմն աղօթից մէջ, որուն կ'ընկերէր ըստ Մանդակունւոյն սրբութեանց մին. «ի ձեռն յաղթողի նշանին խաչի՝ յորմէ դողան ամենայն բնութիւնք դիւաց», և զոր անշուշտ կը բռնէր պաշտօնեայն* (186)։ *Նոյն իմաստով և Օձնեցին կը կոչէ խաչն «ըզպակուցանող և զզարհուրեցուցիչ դիւաց*[2]» (*Ընդ. Պաւղ.* 35)։ *Հին Մաշտոցն ալ յիշելով աղօթքը, կ'աւանդէ նաեւ ձեռնադրութեան առաքելական սովորութիւնը, նորընծայ քահանային վրայ խնդրե-*

1. *Այդ սովորոյթը շատ հին էր և ընդհանուր, յիշուած նաև Տերտուղիանոսի կողմանէ, որ գրելով հեթանոսաց՝ կ'ըսէ. «Առանց քրիստոնէից ո՞վ պիտի կորզէր ձեր հոգիներն ու մարմիններն այն ծածուկ թշնամիներէն՝ որ ամէն բան կ'եղծանեն։ Դիւաց համար կ'ըսեմ, որ զձեզ բռնած են, և զորս մեք կը հալածենք ձեզմէ առանց փոխարինութեան, առանց վարձուց»* (*Ջատ.* ԻԳ)։

2. *«Այս է որ մինչեւ յայսօր հալածէ զդեւս», կ'ըսէ* Ս. *Կիւրեղ երուս.* (*Կոչ. Ընծ.* ԺԳ, 270), *հաստատելով նոյն սովորութեան գոյութիւնը և իրենց մէջ։*

լով «շնորհս առաքելականս առ ի մեր֊ ժել և հեռացուցանել . . . զայսս պիղծս ի մարդկանէ, դնելով ձեռս ի վերայ նո֊ ցա, կարդալով զամենազաւր անուն քո»։

Ցիշեալ կանոնական աղօթից ձեւը սա֊ կաւագիւտ է գրչագիր մաշտոցաց մէջ։ Վանացս գրչագրատան մէջ հանդիպած եմ երկու օրինակաց, գրուած 1216 և 1530 տարիներուն, և 1484ի ախթար֊ քին, որոնք ունին հետեւեալ կանոնը. «Աղաւթք ի վերայ այսահարի։ — Տէր Աստուած զաւրութեանց՝ որ բժշկես զախտս և զհիւանդութիւնս ժողովրդեան քում, որ փառաւորիս հանապազ ի ծառայից քոց, գթայ ի զրկեալս յայս յայսոց չարաց, և մի՛ թողուր ի ձեռաց քոց, տէր բարերար։ Սաստեա այսոց պղծոց և խորտակեա զսա֊ տանայ ի ներքոյ ոտից մերոց։ Սրբեա զծառայս քո և նորոգեա զսա Հոգւով սըր֊ բով, և խառնեա զսա ի միաբանութիւն եկեղեցւոյ քում սրբոյ, շնորհաւք և մար֊ դասիրութեամբ տեառն մերոյ» են։

3. — Երդմնեցուցիչ։ — Ոչ առաքելա֊ կան դարուն և ոչ յետոյ երկար ժամա֊ նակ այս անուամբ յատուկ պաշտօնեայ չկար քրիստ. եկեղեցւոյ մէջ. այլ ըստ

Եզնկայ կը պահանջուէր նորքին սրբութիւնը. մարդիկ «եթէ ոչ արժանաւորք շնորհաց Հոգւոյն սրբոյ լինիցին, ոչ կարեն հանել զդեւս» (Ա, իբ)։ Կողբացին դեռ իւր օրով իսկ՝ «և այժմ՝» դիւահալածութեան փորձեր կը տեսնէր եկեղեցականաց և ոչ նոյնպիսեաց քով. այս ինքն «ի սուրբ եպիսկոպոսս և ի ճշմարիտ վանականս» (անդ), որոց վերջինք սոսկ հաւատացեալներ էին յառաջագոյն։ Բայց բնականապէս աւելի եկեղեցականաց յատուկ էր այդ գործը. տեսանք վերեւ՝ որ մաշտոցին մէջ նոր ձեռնադրեալ «քահանային» վրայ կը խնդրուի դիւամերժութեան պարգեւը։ Նմանապէս եպիսկոպոսօրհնէից մէջ ասոր համար ալ կը հայցէին շնորհք՝ «ի սրբութիւն վտանգելոց յայսոց պղծոց», ըստ օրինակի 1345ին և այլոց։ Մխ. Գոշի կողմանէ կը յիշուին «ոմանք ի քահանայից և ի կրօնաւորաց», որոց ձեռքով Աստուած «մերժէ զդեւս» (Առակք, ԻԹ)։

Արեւմտեայց քով Դ դարուն կը սկսի երեւիլ յատուկ երդմնեցուցիչ, որ մեր մէջ շատ ուշ մուտ կը գտնէ. առաջին անգամ Լամբրոնացին կը յիշատակէ այդ պաշտօնը

յանձին կիսասարկաւագին. «իշխանութիւն ունի... կէս սարկաւագն զերդմնեցուցանելն» (Մեկ. Պտր. 53)։ Իսկ յաջորդ դարուն երբ Հայք կ'ընդունին արեւմտեայց փոքր աստիճանները, անոնց միոյն առանձին պատիւն ու պաշտօնը կը լինի այդ. և որ կը կայանայ՝ ըստ օրհնութեան նոյն վիճակաւորին՝ «դնել զձեռս քո ի վերայ հիւանդաց (դիւահարաց), և որք գան ի մկրտութիւն (երախայքը) հրաժարեցուցանել» (Մշտ. 1345ի են)։ Այս նորութիւնն ի սկզբան ընդդիմութեան բախեցաւ պահպանողական Հայերէ, որոցմէ էր Սիւնեաց Յովհաննէս եպիսկոպոսը, ինչպէս կ'իմանանք Ձաք. Ծործորեցւոյն առ նա գրած ջատագովականէն. «Երդմնեցուցիչ ընդէ՞ր օրհնենք». և առանց բացատրութիւն տալու ասոր՝ կ'անցնի երդման պաշտպանութեան։ Դար մը վերջ այս նոր աստիճանն այլ եւս ընտանի էր Հայոց, և իբրև սովորական բան կը յիշէ զայն Տաթեւացին. «Երրորդ (կարգ) է երդմնեցուցիչքն, որոց գործն այն է՝ երդմնեցուցանել զդիւահարն» և հրաժարեցնել երախայն (Հրց. Թ, լդ), և որոյ գործածականութիւնը սակայն անստոյգ տեսանք (աստ, 187)։

## Դ. ԵՐԴՈՒՄՆ ԻՒՂՈՅ, ԱՂԻ ԵՒ ՋՐՈՅ

*Ահա նիւթեր՝ որ աւելի պիտի ամրապնդեն մեր ի սկզբան տեսած կարծիքը, թէ նախնիք՝ առաքելականէն ալ չափազանցուած և աւելի հին աւանդութեանց մօտեցող համոզմամբ մը՝ դիւաց ներգործութիւնը կը դնէին նաև անշունչ իրաց մէջ, որպիսի էին և այս երեքը, որոցմէ կը հալածէին զանոնք երդմնեցուցմամբ։ Կարելի է՝ թէ այդ ներգործութիւնը կը դնէին անխտիր ամէն իրաց մէջ. կարելի է նաեւ՝ թէ կը դնէին պատահաբար, և անստուգութեան համար կ՚երդմնեցնէին այս սրբելի նիւթերը։*

*Արեւմտեայք հնարեցին այս սովորոյթը և մեզ ալ աւանդեցին վերջերը. այնպէս որ աղի և ջրոյ երդման յիշատակը չենք գտներ նիւթոցս օրհնութեան սովորական բնիկ կանոնաց մէջ՝ զոր կը պահեն մեր հին մաշտոցներ. թէև մեր Հարց մտքէն եւս օտար չլինէր ասոնց մասնակցութիւնը դիւաց. զի Յայտնութեան ջրօրհնեաց կանոնին մէջ՝ համաձայն նոյն ինքն երիցագոյն օրինակին իսկ՝ կ՚աղօթուի այսպէս.*

«Հալածեա ի սմանէ զամենայն վնաս և զչար բիծ և զախտ և զամենայն թունութիւն սատանայի, և տնգեա ի սմա զամենայն շնորհս ամենազաւր սուրբ Հոգւոյդ» և այլն. այսքան, բայց երդում ոչ։

1. – Երդումն խղոց։ — Մեռոնի օրհնութեան մէջ կը յիշուի այս, ըսուելով. «եպիսկոպոսապետն տայ զերդումն» անոր՝ ըստ մաշտոցին, որ երդման նպատակն ալ կը պարզէ բանաձեւին մէջ. «զի ամենայն ներգործութիւն սատանայի և չարութիւն նորա լիցի ի քէն հալածեալ»։ Այսպէս սրբուելով այն, իւր կարգին պիտի սրբէր զմարդիկ և ուրիշ նիւթեր, ինչպէս կ՚ըսէ Նարեկացին. «Լրութեամբ շնորհի օրհնութեան այս իւղ զօրացեալ՝ և զայսս վանէ» (Աղ. ՂԳ)։

Դժբախտաբար չունինք մեռոնին և միւս սուրբ իւղոց օրհնութեան շատ հին օրինակներ. ԺԱ դարու մաշտոցը, որոյ պաշտամունք կանխելով կիլիկեան վերակազմութիւնը՝ կը պահեն նախկին ձեւը, կը զլանայ մեռոնի օրհնութիւնը. գաղափարողը կ՚իմացնէ՝ թէ զայն «մեք ոչ իշխեմք գրել, զի մի՛ անհնազանդ գտանիցիմք սուրբ Լուսաւորչի աթոռոյն և մեծի հայրապետին

մերոյ[1]»։ Մեր գրչագրատան մէջ գտուած հնագոյն կանոնը կիլիկեանն է, 1345ի ծանօթ մաշտոցին մէջ, որ ունի օրհնութիւն երեք իւղոց, մեռոնին, երախայից ու հիւանդաց, ուստի երեք ալ երդումներ։ Մեռոնի կանոնը կրկին է հոս. մին համառօտ՝ միւս իւղոց հետ միասին, և երկրորդն ընդարձակ ու միակ՝ որ հինը կը թուի, և որոյ մէջ ներմուծել կը պատուիրէ մաշտոցն առաջին կանոնն ամբողջապէս. թէև հոն կրկնուած է մեռոնին երդման ձեւը միայն։ Առաջին կամ երրեակ իւղոց կանոնին համեմատութիւն մը լատինական մաշտոցին հետ՝ ցոյց տուաւ ինձ, թէ այս կիլիկեան ձեւն՝ ուստի և երդումն՝ ամբողջապէս թարգմանածոյ փոխառութիւն մ'էր արեւմտեայց ծիսարանէն. այնպէս որ մեր գրչագրատան ուրիշ մաշտոց մը, գրուած 1338ին, տարբեր կանոն մ'ունի հիւանդաց իւղի օրհնութեան, որոյ մէջ

1. Այդ արգելքը կը մեկնուի մաշտոցիդ գրութենէն քիչ յառաջ պատահած դիպուածով մը։ Սիւնեաց Յակոբ և Անձեւացեաց Խոսրով եպիսկոպոսունք ապստամբելով Անանիա կաթողիկոսէն, յարեցան Աղուանից հայրապետին, անոր առնլով միւռոնն ալ, ինչպէս կը պատմէ նոյն Անանիա (Արար. 1897, էջ 130)։ Այս պատճառաւ արգելուած կը թուի միւռոնօրհնէից հրատարակութիւնը հայրապետանոցէն դուրս։

կը պակասի երդումը։ Բայց վերջապէս հայացած էին այդ երդմունք ու գործածական եղած, մանաւանդ Մեռոնին մէջ, ինչպէս մեր 1386ի և այլ օրինակներէն կ'երեւի, և որ կը տեւէ ցարդ, կաթողիկեայ Հայոց քով երեք իւղոց օրհնութեան մէջ եւս։

2. – Արարողութիւն։ — Շատ պարզ է՝ երբ մեր տեսութեան սահմանն ամփոփենք ոչ թէ իւղոց ամբողջ օրհնութեան, այլ միայն երդմանց մէջ։

ա. Մեռոնի ընդարձակ կանոնը՝ Ներսեսի երկար քարոզէ մը վերջ՝ առանց որ և է հրահանգի կը յարէ. «Եպիսկոպոսապետն տա(յ) զերդումն՝ ասելով» բանաձեւը։ Ընդ հակառակն համառօտ կանոնն աւելի մանրամասնութիւններ ունի՝ համեմատութեամբ լատին բնագրին. «Առնու զմեռոնչիշն աւագ սարկաւագն, և զա(յ) ի ձախ դէհ եպիսկոպոսին. և նա շնչայ (կը փչէ) ի նոյն երիցս. և կացեալ առաջի սրբոյ սեղանոյն՝ տա(յ) զերդումն»։ Ահաւասիկ աղօթ բանաձեւը. «Երդմնեցուցանեմ զքեզ, նիւթ ձիթոյ, յանուն Հաւր ամենակարողի՝ որ արար զերկինս և զերկիր և զծով և զոր ի նոսա, զի ամենայն

ներգործութիւն սատանայի լիցի ի քէն հալածեալ, որպէս զի աւրհնութեամբս զաւրասցիս յաւծեալսն քև տպաւորել զՀոգին սուրբ՝ յանուն Հաւր ամենակարողի և Որդւոյ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, այժմ և միշտ...»:

բ. Երախայից իւղին երդումը կայ լոկ վերոյիշեալ համառօտ խառն կանոնին մէջ[1]: Օրհնեալ մեռոնը, կ'ըսէ, կը տանին յաւանդատուն: «Յետ այսր բերեն առաջի եպիսկոպոսին զամանն՝ յոր մկրտութեան ձէթն աւրհնի, և ունին առնթեր. և նա շնչա(յ)[2] ի նոյն երիցս ի ծածուկ, և տա(յ) զայս երդմունքս»: Բանաձևը տարբեր է նախորդէն՝ համեմատ իւր նպատակին. և է այս. «Երդմնեցուցանեմ զքեզ, նիւթ ձիթոյ, յանուն Հօր Աստուծոյ ամենակարողի, և յանուն Յիսուսի Քրիստոսի, և յանուն սուրբ Հոգւոյն. որպէս զ(ի) միոյ աստուածութեան Երրորդութեանն անուամբ լիցի ի քէն հալածեալ ամենայն ներգոր-

1. Ոճնեցւոյն օրերէն իսկ երախայից օծումն սկսած էր վտարուիլ սովորութենէն (նոյն, 8), որով նոյնը պատահեր է անոր իւղին օրհնութեան կանոնին ևս տոհմային մաշտոցէն, և ստիպեր զկիլիկեցիս նոր թարգմանելու:

2. Փչման սովորոյթը տեսանք վերն ալ՝ յէջ 194:

ծութիւն սատանայի, որ եւ տուեալ յօգուտ մարդկան, և ի ձեռն այս սուրբ ընծայիցս եղիցիս ի մնունդ մարմնոց և հոգւոց, և ի մրցմունս արիութեան այնոցիկ՝ որք և օծեալ պատրաստին մկրտութեան. որպէս զի լիցին մաքրեալք ընդունել զշնորհս սուրբ Հոգւոյն՝ շնորհօք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառք...»։

գ. Հիւանդաց իւղին երդումը կը կանխէ քան զառաջինս նոյն կանոնին մէջ։ Եւ է այսպէս. «Բերեն առաջի զշիշ ձիթոյն հիւանդաց և երդմնեցուցանեն զնա այսպէս. — Երդմնեցուցանեմ զքեզ, պեղծ հոգի դիւական, զի հալածեսցիս յայս ձիթէս ամենայն ներգործութեամբդ քո, յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. զի լիցի սա յօծումն տաճարի Աստուծոյ՝ յորս բնակեսցէ սուրբ Հոգին, ի փառս Հօր և սիրեցեալ Որդւոյ իւրոյ՝ որ գալոց է դատել զկենդանիս և զմեռեալս»։

3. — Օրհնումն Աղի և Ջրոյ։ — Ըսի՛ թէ տոհմային բնիկ մաշտոցին մէջ չի յիշուիր։ Արդ կը գտնեմ զայս լոկ Սսոյ մաշտոցին մէջ. և է մի առանձին «կանոն, ււրհնութիւն ջրոյ, զոր յամենայն կիրակէ քահանայն ււրհնէ և ցանէ ի վե-

րայ ժողովրդեանն»։ Այս կանոնն ալ, որ զատ է Խաչալուայի և Յայտնութեան Ջրօրհնեաց հարազատ կարգերէն, նման առաջնոց՝ նիւթական թարգմանութիւն է լատինականէն. որ եթէ չէ մտած հետագայ ուրիշ մաշտոցաց մէջ, կրնանք ըսել՝ թէ գէթ ի Կիլիկիա գործածուած է երբեմն։

ա. Պաշտօնը կը սկսի սաղմոսի համարով մը, յետ որոյ քահանայն կ'ըսէ երդմնաձեւն աղին վրայ՝ որ սահմանուած է խառնուելու ջրին մէջ. «Երդմնեցուցանեմ զքեզ, արարած աղի, յԱստուած՝ որ կենդանի է, յԱստուած՝ որ ճշմարիտ է, յԱստուած՝ որ սուրբ է. որ զքեզ ի ձեռն Եղիշէի մարգարէին հրամայեաց ի ջուրն արկանել՝ առ ի բժշկել զանզաւակութիւն ջուրցն։ Որով և դու, աղ, եղիցիս ամենեցուն որոց ընդունին զքեզ՝ յազատութիւն հոգոց և մարմնոց։ Եւ փախիցեն ի բաց յայնմ տեղւոջէ ուր դու ցանեսցիս՝ ամենայն ցնորական երևոյթք փորձողին, ոսոխութիւն և նենգութիւնք և չարարուեստք խաբէութիւնք սատանայի. և ամենայն հոգիք նորա անմաքուրք երդմնեցուցեալք եղիցին նովաւ՝ որ գալոցն է դա-

*տել զկենդանիս և զմեռեալս և զաշխարհ ամենայն հրով»:*

*ժ. Միջանկեալ աղօթք մը, և ապա կը յարէ ջրոյն երդումը. «Երդմնեցուցանեմ զքեզ, արարած ջրոյ, յանուն Աստուծոյ Հաւր ամենայկալին, և յանուն Յիսուսի Քրիստոսի որդւոյ նորա, և ի զաւրութիւն Հոգւոյն սրբոյ Աստուծոյ, զի եղիցիս դու, ջուր, երդմնեցուցեալ, որպէս զի փախուսցես զամենայն իշխանութիւնս թշնամոյն, և զինքն իսկ զսատանա(յ) արմատաքի խլեալ կարասցես դու, և ի բաց հանել ամենայն յանցաւոր հրեշտակաւք նորայ, զաւրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ գալոց է դատել զկենդանիս և զմեռեալս, և զաշխարհս ամենայն հրով»: Ապա կը յաջորդեն ուրիշ աղօթքներ:*

## Ե. ԵՐԴՄՈՒՆՔ ՀԻՒԱՆԴԱՑ

*Նկատեցինք վերեւ* (178-81), *թէ հին ազգեր և Հայերն իսկ մարմնական խօթութիւնքն ու սովորական երեւոյթները դիւական ազդեցութեանց կ'ընծայէին: Մեր քով յարատեւեց այդ համոզումը շատ ըն-*

դարձակ սահմանի մը մէջ, և անոնց խափանման համար յատուկ դարմաններ անպակաս էին։ Այդ նպատակաւ մեր յետին դարերուն, կամ գոնէ առաւելապէս այդ ժամանակի գրչագրաց մէջ, ի հրապարակ կու գան երդմնեցուցման բազմաթիւ ու կախարդակերպ գրուածներ, ճապաղուած Ախտարք անուամբ ծանօթ գրոց մէջ։ Անոնց արհամարհութեամբ մը նայուած էր ցարդ[1]. մինչդեռ այն դերը՝ զոր կատարեր են անոնք, աւելի մտադրութիւն մը կը պահանջէր՝ մեր հարց կրօնից պատմութեան տեսակէտով։

1. — *Կիպրիանոս*։ — Յիշեալ գրուածներէն շատ օրինակներ կը պահէ վանացս մատենադարանը, բոլորն ալ նոտրագիր ու նոր և այլազան բովանդակութեամբ, բաց ի միոյն՝ որ գաղափարուած է ՋԼԳ (1484) թուականին[2], ու գրչէն սահմա-

2. Հ. Ղ. Ալիշան, Հին հաւատք, ԺԱ, 408–9։
3. Փոքրիկ մատեան մը, 9, 4 × 6, 5 հրդ. տարածութեամբ և 94 թերթով։ — Այս ընտիր գրչագիրը վերիպած կը թուի Հ. Ալիշանի ուշադրութենէն՝ Հին հաւատոց ուսումնասիրութեան մէջ, ուր ոչ միայն չէ օգտուած անտի, այլ անունն ալ սխալագիր օրինակէ առած՝ «Կպրիանոս» կը գրէ (ԺԱ, 402, '8)։ Թող ուրիշ կարեւորագոյն տարբերութիւնքը։

*նուած՝ «սուրբ բժշկականս որ կոչի Կիպրիանոս». — կոչում մը՝ որ առնուած է համանուն սրբոյն ընծայուած կրկին աղօթքներէն՝ որ կան անոր մէջ. — և որ իր առաւելագոյն հնութեան համար կարեւոր և արժանի է մեր առանձին ուշադրութեան, իբր հարազատագոյն ներկայացուցիչ հին աւանդութեանց՝ որոնք մանաւանդ — քան թէ մատեանն ինքնին — են մեր քննութեան նիւթ։*

*Աւելին կայ. սա ունի՝ բաց յայլոց՝ չորս կանոններ հիւանդաց, դիւահարաց, ջերմնոտաց ու դժուարին երկանց, որ սովորական են արդի մաշտոցին*[1]*, և սակայն վերջնոյս գրչագիրք գրեթէ չեն ճանաչեր զանոնք։ Առ այս քննեցի վանացս հնագոյն օրինակները՝ թուով տասներկու, ինչպէս ԺԱ դարուն,* և 1338, '45, '86, '87, 1436, '55, '99, 1547 և '61 *տարիներուն, որոց մէջ ընդհանրապէս չկան անոնք։ Միայն* 1216*ի օրինակն ունի՝ իբր զարտուղութիւն՝ դիւահարաց ու ջերմնոտաց կանոնները, և դարեր վերջ՝* 1530*ի գրչագիրը չորսն ալ, զորս սա նոյն կար-*

1. Տպ. Վենետկոյ, յէջ 96, 104, 103, 90։

գով ու յօրինուածով առած կը թուի ուղղակի Կիպրիանոսէն, ինչպէս ըրած լինելու է առաջինն ալ իր երկուքը։ Եւ սակայն հայ եկեղեցին սկիզբէն ի վեր ունէր զանոնք պաշտելու սովորոյթը, զոր տեսանք մասամբ երդմնեցուցչաց քննութեան մէջ (աստ, 204)։ Մանդակունին կը յիշատակէ նաեւ «զպահս և զաղօթս ցաւածին» (ԻԶ, 187)․ և ԺԱ դարու մաշտոցը նորընծայ քահանային շնորհ կը խնդրէ՝ «առ ի մերժել և հեռացուցանել զախտս չարչարանաց» ժողովրդեան ։ Լաւ․ ո՞ր մատենէն կը պաշտէին ուրեմն այդ կանոնները։ — Պարտինք առանց վարանելու հետեւցնել՝ թէ հայ կղերը սոյն վախճանաւ գործածեր է մեր Կիպրիանոսը, — կամ թերեւս ուրիշ որ և է Կիպրիանոս մը՝ ժամանակին համեմատ խմբագրուած, — իբր կէս պաշտօնական գիրք մը, իբրեւ մաշտոցիկ մը հիւանդութեանց յատուկ, կամ «բժշկական» մը՝ ինչպէս լաւ կ'որակէ գաղափարողը, որոյ համար «սուրբ» ալ է այն՝ նման ուրիշ եկեղեցական գրոց։ Եւ արդէն անոր մէկ կանոնն ըստ իր հրահանգաց կը կատարէ «քահանայն» և «ի դուռն եկեղեցւոյն»․ միւս մը՝ «յորժամ

*քահանայն առ հիւանդն երթայ». դժուարածնին՝ նոյնպէս «երթայ քահանայն». օձահարաց վրայ՝ «առնու քահանայն և ընթեռնու» նոյն մատեանը. և անոր գաղափարողն է Կարապետ անուն «երէց» մը։ Վերջապէս քահանային սեպհական հատորիկն է այն, զոր աւելի յաճախ քըռներ է նա իւր ձեռաց մէջ քան զմաշտոցն ինքնին։ Հետեւաբար Կիպրիանոսի գոյութիւնը շատ աւելի հին էր քան ծանօթ օրինակը[1], որոյ ուրիշ նշաններ ևս պիտի տեսնենք սոյն և յաջորդ գլխոյն մէջ։ — Այս բոլորն ըսի, որպէս զի ցուցնեմ՝ թէ այն անապաշտ համոզումները զորս պիտի նըկատենք աղոր մէջ, յատուկ էին ոչ միայն հայ ռամկին, այլ և համեմատաբար զարգացեալ դասուն, ինչպէս էր եկեղեցականութիւնը։*

2.' — *Յօրինուածը։ — Մատեանս խառնուրդ մ'է արդէն յիշուած կանոնաց,*

1. *Խորենացւոյն առ Սահակ արծր. թղթոյն մէջ կ'ըսուի՝ թէ երբ Բարթողոմէոս Անձեւացեաց գաւառն հասաւ, տեսաւ որ ընիկները չաստուածոց քրմերէն կ'առնուին «ծրարս թարախածորս ի պատիր ախտիցն, որպէս զծրարսն Կիպրիանոսի առ ի պատիր Յուստինեայ կուսին»* (294)։ *Պէտք չէ՞ հետեւցնել՝ թէ զայս գրողն արդէն կը տեսնէր Կիպրիանոսի հայերէն աղօթքը։*

Շնորհալւոյն ու Նարեկացւոյն ժամագրական երեք աղօթից, ս. Գրոց ընթերցուածոց, և ասոնցմէ աւելի՝ բազմաթիւ անսովոր երդմնեցուցմանց։ Հոս՝ այս վերջնոց մէջ, — որոց վրայ միայն պիտի սեւեռեմ ակնարկս, — մեր առջեւ կը հանդիսանայ՝ իբրեւ ի հայելւոջ՝ Նոր աշխարհ մ'աներեւոյթ, զոր ստեղծեր է իրեն համար և որոյ մէջ ապրեր է միշտ հին հայ միտքը։ Աշխարհ մը՝ զոր չենք ճանաչեր մեք, և ոչ Աւետարանը։ Աշխարհ մ'ոգիներու, ուր բարւոյն ու գեղեցկին հետ կը խառնուին չարեր, վերջինքս հաւաքուած երկնքէն, արեւէն, լուսնէն, աստղերէն, կարկտէն, երկրէս, աշխարհի չորս կողմերէն, ջրէն, լուսէն ու խաւարէն. որոնք մարախի պէս կը լեցնեն ու կը զեռան տիեզերաց անբաւութեան մէջ։ Եւ կ'որոշուին բարիներէն իրենց անհեթեթ կերպարանօք, անձնիւր ախտերով ու կրքերով, զանազան չարարուեստ պաշտօններով, նաեւ պատառողներ, ենթակայ նոյն իսկ մարմնական արտաքին պակասութեանց։ Տեսակ մը հեթանոս դիցարանութիւն, որ բարեգործ ու բարեմոյն Աթենասայ և Ասկղեպիոսի քով կը դնէ գիսախռիւ Կատաղիներ, մանկակեր

Կռոնոս մը, կաղ Հեփեստոս մը։ Տձեւ ուրուականներ՝ որոց սովոր է կեանք տալ ուղեղը՝ որ տենդին պատճառած անդոհական ցնորքներով կը զառանցէ։ Ու հին Հայը, մշտնջենապէս տենդահար, մէն մի քայլին մատնուած է անոնց սարսափին՝ որ կը հետապնդի ու կը հալածէ զինք։ Եւ իւր պաշտօնեայն, զաւակն ու հաւատակից մ՚անոր, և եռանդուն իւր կոչման, կը վազէ միշտ անոր օգնութեան, զինուած իւր Կիպրիանոսով։ Կը կաշկանդէ դեւերը, ցաւերն ու զեռունները, կը պրկէ դիւթիչ աչերն ու լեզուները, որպէս զի խափանուին յարձակիլ հաւատացելոյն վրայ։ Ի հակառակէն՝ կը խզէ ծածուկ կապերն՝ որոցմով պարուրած են զայն կախարդներ, չես գիտեր ե՛րբ և ի՛նչո՛ւ. կ՚առատաձեռնէ երդումներ՝ պէսպէս իրական ու երեւակայական վկայից վրայ։ Իրարու դէմ կը ճակատեցնէ սուրբերը կամ հրեշտակներն ու դեւեր։ Եւ խառնակոյտ զանգուած մը կը յօրինէ՝ հոգեղինաց ծանօթ ու անծանօթ խուժդուժ անուանց, յիշատակաց, անլուր ախտակրութեանց։ Բժիշկ ու դեղ անկարողութեան կը մատնուին և իսպառ կը մոռացուին այդ համաճարակ ուղեղա-

*տապին մէջ, որոյ տեսիլն զմեզ, այդ Հայուն արդի – ինք թերեւս պիտի ըսէր խորթ – զաւակներս կը զուարճացնէ, ու՝ բնականապէս՝ քիչ մ'ալ կը տխրեցնէ։*

*Գանք մօտէն զննել գրչագրիս քանի մը մանրամասնութիւնքը։*

3. – *Երդումն Աղանդոց։* — *Ունի՝ զոր օրինակ՝ «Աղաւթք սրբոյն Կիպրիանոսի*[1]*, զոր կարդան յաւուր կիրակէի, զոր ասացեալ է վասն դիւաց և աղանդաւորաց՝ որ կապեն զորդիս մարդկան»։ Այս տեղ յիշուած «կիրակէն» արդիւնք է ոչ թէ դիպուածի, այլ ըստ իս եօթնեկի աւուրց խտրականութեան, ծանօթ Ե դարէն իսկ (Մանդ. ԻՁ, 192), և որ դեռ կը պահուի յետին դարերու ախտարական զուշակութեանց մէջ։ — Իսկոյն կը յարէ մաղթանքս. «ռ և ճ և հբ (1172) աղանդն կախարդաց արձակեալ և հեռացեալ եղիցի ի ծառայէս Այ.»։ Եւ ապա նոյն վկային բերանէն խոստովանաբար կը պատմուի իւր նախկին աղճատ կեանքն ու դարձն ի հաւատս*[2]*։ — Ասոր կը յաջորդէ «Պատ-*

1. *Ըստ արեւելեայց՝ կարթագինեցին, այլ ըստ արեւմտեայց՝ անտիոքացի Մոգը։*

2. *Այդպիսի և անվաւեր «խոստովանութիւն» մը ծա-*

մութիւն Յուստիանէ կուսին», ուր յետ պատմական տեղեկութեանց՝ սուրբն Կիպրիանոս կ'արձակէ իւր երբեմն կապածները՝ երկար բանաձեւով մը, և կը յարէ երգում մը՝ կէս մ'արձակ ու կէս մը չափով, – նշան բուն հայէ մը յերիւրուելուն, – որոյ միջէն կը քաղեմ հետեւեալը։ «Երդմնեցուցանեմ զքեզ, սատանայ, անուամբն Այ. Յի. Քի. տն. մերոյ, և յանունն յայն որ զԱդամ բաղկացոյց և զԵւայ, ի ռ և ա (1001) անունն Այ'. և ի յինն դաս հրեշտակքն՝ որ ելանեն և իջանեն ի յԱպրիպաւլիս քաղաքն» և այլն. և աւելի փաղաքշականը, «ի գեղեցկութիւնն Ադամայ, ի վայելչութիւն դրախտին, ի խոնարհութիւն ամենայն սրբոց, և ի սէր ամենայն մարտիրոսաց,... ի հաւատս և ի հիւրընկալութիւնն Աբրահամու, ի կապանսն Իսահակայ, . . . ի համբարձումն Եղիայի, . . . ի տախտակքն Մովսէսի, ի պատմուճանն Ահարոնի, ... ի քնարն և ի սաղմոսն Դաւթի, ... յաւետիքն Գաբրիէ-

նօթ է նաեւ արեւմտեայց՝ յոյն լեզուաւ (հրտ. Baluzius, Կարթագինեցւոյն գործոց հետ), որ քան զմերը տարբեր և շատ ընդարձակ է, ինչպէս տեսայ։

1. Զայդ պիտի տեսնենք աւելի վերջ (Ի, 1)։

լի», և ուրիշ անհամար իրական ու բարոյական, պատմական ու տնօրինական վըկայից վրայ. ինչպէս և «ի բանն անծախելի, — ի լոյսն անճառելի, — ի թագն անպատմելի, — ... ի թագաւորըն սոսկալի» որ է Աստուած, «ի մատանին Սողոմոնի, — ի կապանսըն պըղընձի, — ... ի յաղաւթսն Ահարոնի, — ի պատմուճանըն ցանկալի, — ի սուրբ ծաղիկըն Սինայի», — այսպէս անգթաբար նետուած մթին համոզմանց ու պաշտամանց ստուերին մէջ, — որպէս զի «Ուր այս անուանքս սուրբ յիշեսցի, — Գիրս և հրամանըս պատահի, — Զարն ի բաց միշտ հալածի, — Կապք և աղանդքըն լուծանի — ի ծառայէս՝ որ է բարի». չափազանց բարի ու պարզամիտ՝ այդքան աղանդոց մէջ պաշարուած զգալու համար իւր անձը։

4. — *Երդումն պահպանողական*։ — Առաջնոյն կը յաջորդէ ուրիշ աղօթք մը, վերնագիրը կիսովին եղծուած, ուր կը կարդացուի միայն «... (ճանա)պարհի, ի ննջել և ի յառնել. ամէն». այս ինքն է ընթեռնլի որ և է հաւատացելոյ վրայ՝ իբրեւ ընդհանուր նախապահեստ և օգնութիւն։ Ու կը սկսի այսպէս. «Միքայէլ,

Գաբրիէլ, Նուրիէլ, Զիթայէլ, Ռափայէլ, Թուխթայէլ, Փուխթայէլ: Բարեխաւսութեամբ սբ. Աստուածածնին» և այլ բոլոր սրբոց, զորս յաջորդաբար կը ցուցակագրէ շատ մանրամասնօրէն, «արձակեալ և հեռացեալ և խափանեալ եղիցի ամենայն կախարդութիւնք և աղանդաւորութիւնք ի ծառայէս Այ. (դատարկ՝ անուան համար). ամէն: Ցանուն Այ. և ինն դասուց հրեշտակաց նորա կապեցի զամենայն չար աչք և զչար լեզու այն կապանաւքն՝ որպէս կապեաց Մովսէս զծովն կարմիր», Յեսու՝ արեգակն ու լուսինը, Եղիա՝ երկինքը, ևն: Կը խնդրէ նաեւ «զամենայն շնորհք երեսաց և աջողումն դատաւորաց», այս ինքն դատաստանի մէջ հաճելի լինել դատողաց[1]. «և տուր սորայ զշնորհք երեսացն Յովսեփայ գեղեցկի, և Դանիէլի և երից մանկանցն, և Իգնատոսի աստուածազգեցի» և այլոց: Ու կ'աւարտէ այսպիսի մանուածապատ բանախաղով մը, որ չես գիտեր՝ ի՛նչ կապ ունի նիւթին հետ. «Երկինք ի

1. ԺԲ դարուն իսկ՝ Ալաւկայ որդի Դաւիթ Վր. կողմանէ կը յիշուին «բազում հմայք և վասն ճանապարհի և յորժամ առաջի աւագաց երթայցեն» (Կանոնք, ԳՁ). կատարեալ ակնարկութիւն սոյն երդման:

վերայ չորից տարերց երկրի. երկիր ի վերայ ջուրց. ջուրք ի վերայ ծովու. ծով ի վերայ աւազոյ. աւազ ի վերայ խորոց. խորք ի վերայ անդնդոց. անդունդք ի վերայ հաստատութեանն. և հաստատութիւն ի վերայ անմահ բանին Այ։ Յանուն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ պահեցին ծառայքս Այ. (դատարկ) և պահպանեցին յամենայն փորձանաց հոգւոյ և մարմնոյ. ամէն»։ Վերջաբանէս կ'երեւի՝ որ գայս կը կարդային նաեւ բազմութեան վրայ։

5. — Ուրբաթագիր։ — Նոյն մատենին մէջ կայ նաեւ «Աղաւթք որ կոչի Ուրբաթագիր», կատարելի քահանայէն «հիւանդին» վրայ։ «Ուրբաթագիր» կոչումը մեզ ենթադրել կու տայ անոր կապակցութիւնը՝ միշտ խտրական ոգւով՝ ուրբաթ օրուան հետ, որոյ վրայ կ'աւելնայ յետոյ չորեքշաբաթին ալ, ինչպէս կը կարդամ վանացս ԺԷ դարու օրինակի մը մէջ. «Ուրբաթագիրք. ուրբաթ աւր կամ չորեքշաբաթի տանին զհիւանդն ի դուռն եկեղեցւոյն» ևն։

Այս տեղ պաշտօնեայն կը կապէ և կ'երդմնեցնէ դեւերը և անոնց պատճառած բոլոր ցաւերն ու պատահարները։ Աղօթքէ

աւելի ճակատամարտի երեւոյթն ունի այն։ Ահաւասիկ անկից ուշագրաւ համառօտութիւն մը. «Կապեմ զքեզ, խիթ և գլխացաւ, անուամբն Այ. որ նստի ի մէջ սերովբէից. յորոյ բերանէ հուր ելանէ անդադար. ի տաճարի նորա որոտումն. ի ներքոյ ոտից նորա հրեղէն լեզու. և հուր անպակաս յաւիտենից ...։ Կապեմ զքեզ, սատանայ, անուամբն Այ. որ ստեղծ զքեզ ի լուսոյ և ի խաւարն կորոյս զքեզ ...։ Երդմնեցուցանեմ զքեզ, սատանայ, ի լոյսն որ կայ ի վերայ անմահ գագաթանն Այ.[1] ի սերովբէքն, ի քերովբէքն . . . ։ Կապեմ զքեզ, խիթ և գլխացաւ, բոլոր տնաւրէնութեամբն Քի. Այ. մերոյ»։ Եւ բարկացայտ թափով մը կը յարէ այս կշտամբութիւնը սատանային դէմ, զոր անշուշտ յարմարագոյն էր այդ երդմնեցուցչին մէջ փնդռել՝ քան հիւանդին. «Ասայ ինձ զըստոյգն. զի՞ նեղես զպատկեր Այ. կենդանւոյ. ապա թէ ոչ՝ ածեմ ի վերայ ձեր հրեշտակս սաստիկս որ ունին իշխանութիւն ի վերայ դիւաց. Սաբաւաւթ, Սեդրաք, Միսաք և Աբեթնագով, Սուսա-

1. Ակնարկութիւն Աստուծոյ և սրբոց լուսապսակին՝ որ ծանօթ է նկարչութեան ու քանդակի մէջ։

նէլ, Զողկողիէլ...: Ո՞վ էք դուք, անիծեալ սատանայ, որ հակառակ պատկերի Այ. ած և երկիւղ արկանէք և յերազին զարհուրեցուցանէք, փախիք և թագիք ի խաւարն արտաքին, որ ոչ կայ դադար և հանգիստ ոտից ձերոց ...: Արդ ընկեսցէ զձեզ Քս. ի խորս անդնդոց և երկիցէք ի յերկանցն Մարիամու»: Եւ կ'ընէ հետեւեալ հետաքրքրական թուարկութիւնը դիւաց. «Թէ երկնաւոր էք, թէ երկրաւոր էք, թէ յաւղից էք, թէ ի լուսոյ էք, թէ ի խաւարէ էք... թէ շան մազ ունիք[1], թէ համր էք, թէ խուլ էք, թէ խև էք, թէ դև էք... թէ այլն (ա̂լն) էք, թէ ալևոն էք, թէ զինչ և իցէք. թէ յերազին հարկանէք, թէ ընդ քուն զրուցել տայք, թէ զգլուխն քերել տայք, թէ զխելքն անցուցանէք, թէ թմրեցուցանէք, թէ շան պէս

1. Դիւաց անհեթեթ կերպարանները, զոր կը տեսնենք այս տեղ և յաջորդ երդմանց մէջ, հաւատալի էին ոչ միայն հայ ռամկին, այլ և շատ ծանրագլուխ մարդոց. Եզնիկ կ'ընդունի՝ թէ «դիւաց է կերպարանս կերպարանս ցուցանել», և ըստ այնմ մարդիկ կը կոչեն զանոնք յուշկապարիկ, պարիկ, համբարու, նհանգ, շահապետ. և թէ կ'երեւին ջորւոյ և ուղտի ձեւով ալ (Ա, իդ, իե): Լուսաւորչի օրով «ի նմանութիւն առնեւձիոյ բազմութեան և կազմութեան գնդի՝» կը կռուէին անոնք մեհենակործան Հայոց հետ (Ագաթ. ճԸ, ճԹ).

*հաչել տայք, թէ իշոյ պէս խառընչել տայք, թէ երընջկտալ[1] տայք, թէ ընդ վայր ծիծաղիլ տայք, թէ զգլուխն շարժել տայք … թէ զընկերն կռվեցուցանել տայք, թէ յականջն մտանէք, թէ ի բերանն մտանէք, թէ զտղայն հեղձուցանէք, թէ շատ ըմպել տայք։ Երդմամբ և կապանաւք և հրամանաւ խաչելոյն», և ուրիշ սըբոց՝ զորս կը թուէ, «խափանեա, տէր Ած. զամենայն չար և որոգայթ, խիթ և գլխացաւ ի ծառայէս Այ.»։ Եւ կ'աւարտէ այսպէս. «Հրամանաւն Այ. հանեմ զչարոստոնս[2] ի ծառայէս Այ.»։*

*Այսպէս մեր միամիտ աղօթարարին համեմատ, — Եզնկայ ժամանակակցաց հարազատ յաջորդ* (*աստ*, 181), *— մարդուն մէջ ոչ մէկ երեւոյթ չկայ բնական կամ խօթական, կամ արդիւնք կրից ու խառնուածոյ. այլ ամէնը չար ոգւոց ներկայութեան պտուղ են*[3], *որպէս թէ բոլոր հին Հայերը դիւա-*

1. *Խամկօրէնն յօրանջելոյ։*

2. *Այդպէս գրչագրին մէջ. եթէ գրչի սխալ չէ, դեւի անուն կը թուի։*

3. *Նման գաղափար մը, թէեւ քան զմեր հարցը շատ չափաւոր, կը գտնենք գնոստիկեան աղանդաւորաց քով ալ. որոց մէկ գրապանակը կ'երդմնեցնէ «զամենայն դեւս որ ունին զկերպարան օձի, և զամենայն դեւ ջերման, և զամենայն թալուկ, և զամենայն կատաղութիւն, և զամենայն ակնհարութիւն» ևն* (Կաբրոլ, Ա, 1835)։

*հարներ լինէին։ Եւ աւելի եզականը, ինչպէս կանխաւ դիտեցինք, նոյն թերութեամբք զգածեալ են նախ իրենք դեւերն իսկ. համր են, խուլ են, ամէն բան են, զորս յաղթականօրէն կը վանէր մեր այս աղօթքը։ Բայց թէ յետոյ անոնց լքած խուլեւմունջը կը խօսէ՞ր կամ կը լսէ՞ր, այդ կարեւորագոյն կէտը կը լռէ Կիպրիանոսը։*

6. — *Երդումն Ծննդականի։* — *Հայ գաւառաց ազգագրական ուսումնասիրութիւնք յաճախ մեր առջեւ կը դնեն անահաւատ համոզումներ՝ որոցմով դեռ այսօր վարակուած է մեր ռամիկը։ Ասոց մէջ են և դիւական ազդեցութիւնք ծննդական կանանց վրայ. և այս կարծեաց ծագումը շատ հին է, պահուած նախ Տաթեւացւոյն քով, որ կ՚ըսէ՝ թէ հոգիներէն անոնք՝ որ կ՚իշխեն «ի ջուրս և ի ծնունդս կանանց՝ Ալք կոչեցան». և թէ «գէջ ախտիւն զհոգիս կորուսանեն, և ի ծնունդս՝ զմարմինս և զհոգիս» (Հրց. Գ, դ)։ Ցետոյ կը հանդիպինք անոր մեր Կիպրիանոսին մէջ։ «Կինն, կ՚ըսէ սա, յորժամ յերկունս լինի և դժուար, երթայ քահանայն» և կը պաշտէ ընթերցուածներ ի սուրբ Գրոց, որոց*

կը յարէ «Գիր ալի և ծննդականի, որ ի դիւէն երկիւղ լինի՝ որ ալ կոչի»։ Սա է բուն աղօթքը՝ վէպի ձեւով, յորում չորս սուրբեր, Պետրոս, Պաւղոս, Անոս և Շիաթ, ճանապարհի վրայ կը տեսնեն «այր մի նստեալ ի վերայ աւազոյ. հեր նորայ իբրև զաւձ, և յունք նորա պղընձիք, և արտեւանունք նորայ երկաթիք, և ժանիք նորայ որպէս վարազի[1]». կարծես նոր ճողոպրած դանտէական դժոխքէ մը։ Այդ հրէշը պատասխանելով անոնց հարցման՝ կու տայ իր սարսափելի նկարագիրը հետեւեալ ձեւով. «Ես եմ ալն չար, որ նստիմ ի վերայ ծննդականաց և յղի կանանց, զականջսն խորվեցնեմ, զխասապն քաշեմ, և խեղդեմ զմայրն և զմանուկն։ Եւ կերակուրն մեր տղայոց մարմին է՝ որ յորովայնի մաւրն են և յղի կանանց և ծննդականաց։ Խասապ՝ որ է սիրտ և լեարդ և թոք։ Եւ զեւթն ամսոյ մանուկն գողանամք ի մաւրէն խուլ և մունջ, և տանիմք առ թագաւորն մեր յան-

1. Ներկայ պատկերն այն իսկ է, հանուած ՈՃԻԹ թուակիր գրապանակէն, որ թերեւս սխալ օրինակուած է ՌՃԻԹ = 1680ի օրինակէ մը։ Շատ գրապանակաց մէջ կայ այս պէսպէս ձեւով, բայց զայս աւելի համաձայն գտայ ներկայ նկարագրին։

դունդս։ Մեր բնակութիւնն յանկինս տանց է և յախոռս անասնոց[1]»։ Սուրբերը բարկացած՝ «հանին, զհրեղէն սուրն



և կամեցան սպանանել զպեղծն»։ Բայց

1. Այդ պատճառաւ անոնց «ալ» կոչումը կրնայ ծագած լինել «ալք» բառէն, որ կը նշանակէ ծածուկ կամ խոր տեղ։

բարեբախտաբար կը խնայեն, հետագայքս չզրկելու համար անոր գեղեցիկ երեսէն։ Միայն Պետրոս առաքեալ կը կշտամբէ զայն, ի միջի այլոց ըսելով. «Արդ կապեալ կացցես, ով պիղծ, զաւրութեամբ սբ. խաչելոյն մինչև ի գալուստն Քի. և յոր վայր անուանքս մեր յիշեսցին՝ չունիս իշխանութիւն մտանել և մերձենալ ի ծառայս Այ. (դատարկ) և ի բնակութիւն սոցա, յանուն Հաւր» ևն։

7. — *Երդումն Օձահարի*։ — Մեծ կարեւորութիւն ունի հնոց համար նաեւ օձահարութեան դէպքը[1], որոյ յատուկ կանոն մը կայ մեր գրչագրին մէջ. «Գիր աւձահարի։ Յորժամ աւձ կամ կոր մարդ հարկանէ, առնու քահանայն և ընթեռնու զաղաւթս սբ. առաքելոյն Պաւղոսի տարսոնացոյ», որոյ սկիզբն է. «Ես Պաւղոս հալածիչ եկեղեցւոյ»։ Նա կը պատմէ իժի ծանօթ պատահարը Մելիտինէ կղզւոյն մէջ։ Անոր վրայ աղերս մ'ուղղեր է առ «Տէր սաբաւովդ», ի պատասխանի որոյ սլացեր եկեր է Միքայէլ հրեշտակն ու «գիր»

1. Յոյներն ալ՝ ըստ Որոգինեայ կեղծ ճառի մը՝ «կախարդութեանց կը դիմէին օձից խայթուածոց դէմ» (Կաբրոլ, Ա, 1786)։

մը յանձներ երբայեցերէն տառով, որոյ բովանդակութիւնն է. «Սառա՛, սա, ապանծատի՛ : Տախուպի՛ : Տուշիմ : Մուշապա՛յ, ակն անայ, տուզի՛, միայնո՛ւ, սետառոտի, մախախտի՛, մակառիանա՛յ, սեթասիանայ, թէ ի պանա՛յ, փուկանա՛յ, կանաթայ, միայնու զետի[1], որ գրեալ էր մատամբն Այ.» ԵՒն : Յետոյ կը սկսի ընդարձակ երդմնաձեւ մը. «Երդմնեցուցանեմ զ'գձկզ (366) ազգ աւձիցն, զգմզանաց, զեռնոց, զսողնոց որ սողին ի վերայ երկրի. որ հարկանեն և տկարացուցանեն զմեզ : Երդմնեցուցանեմ զ'գձ և դ (304) ազգ կորից : Երդմնեցուցանեմ զկորն և զմորն և զփալախն և զկարիճն, և զկորն[2] որ ունի ի թունից սատանայի». և թուարկութիւնը կ'ընէ բազմութեան մ'անլուր օձից, որոնք իւր երեւակայութեան մէջ կ'ապրին ու կը խայթեն : Անոնց մէջ կը յիշէ և «զաւձն երկոտասանգլխեան և չորեքլկամեան . . .

1 Այդ և յաջորդ բոլոր օտարոտի բառից մէջ (որոց մասին տես աստ, 251) բնագրիս ուղղագրութեան հետ կիտադրութիւնն ալ անփոփոխ կը պահեմ.

2. «Կոր» կայ և ի Գիրս Վաստակոց (ճգ, մկդ), ուր յն. բն. է կարիճ. — «Մոր», ուսկից «մորահար» (անդ, մծե), Ամիրտովլաթէ կը նկարագրուի իբր սարդի տեսակ մը.

զաւծն ագռաւատես՝ որ զմահաբեր դեղն յաջոյ ասեղն ունի... զաւծն զլապըստակավազն՝[1] որ զակունդ[2] ակն ի գլուխն ունի ... զաւծն մեծագոչ զխուլն և զհամրն... զաւծն թևաւոր» կամ «զբաշևորն», և ուրիշ ամբոխ մը, զորս կ'երդմնեցնէ բաց յայլոց՝ և «յերկնից թագաւորն յորմէ վէմք դողան, խորք սասանին, անդունդք բորբոքին». վսեմ տող մը։ Նոյնպէս և «ի եւթնաբերնե(ա)ն ջրհորն, յորմէ ծնեալն է ստեղծուածն՝ որ ըստ պատկերի Այ. աբարաւ». Նորօրինա՛կ ծանօթութիւն մարդկային ծագման, եթէ այդ «ըստ պատկերի Այ.» ստեղծուածն ուրիշ էակ մը չէ։

Այս պաշտաման պահուն արարողապէս ներկայ են սա կտորին մէջ յիշուած նիւթերը. «Կարդամ ի վերայ ջրոյս և ի վերայ կարասիս, և ի վերայ վիրիս և ի վերայ թիւնից քոց՝ զահաւոր և զսքանչելի անունն Այ.». որով կը յաւելու՝ թէ «զ հետ սայ, և տուր խմելոյ պահակին և արբոյ աւձահարին, ողջանայ անուամբն Այ.»։

Սոյն աղօթքս գտայ և աւելի հին գըր-

1. Նապաստակի վրայ վազող կամ որսացող։
2. Գրոց յակինթն է։

չագրի մը մէջ, 1453ին, որ է աղօթագիրք Վ. Մարաթացւոյն։ Սա ի սկզբան ունի ուրիշ համառօտ մ՚ալ, սոյն խրատով. «Առ զջուրն փութով և ասա զաղաւթս զայս ի վերայ ջրոյն». կը հետևի՝ որ տագնապալից ժամերու մէջ կարագը զանց կը լինէր. «և եթէ ոչ ժամանիս աւձայհարին, դու խաբարբերին արբոյ», որ — արդարև զարմանալի՛ բան — հաւաստապէս կը զօրէ, որպէս թէ խայթեալն ու լրաբերը մի և նոյն ստամոքսն ունենային, կամ հաղորդ լինէին նոյն ցաւին. «և ասա, կ՚ըսէ, զաղաւթս զայս. Յանուն Հաւր և Որդոյ և սուրբ Հոգոյն։ Նասրութա՛յ, Ապանձա՛յ, Սոետադիմատիմ, Առախտի, Մակառձիա՛յ, Տեսառձիասիանայ, Թէափան, Ապուկանա՛յ, Թիմանո՛ւ, Գետիմ առախտի, Սառապուն և Ասկառ ատին»։ Խճղճ աղօթող և խճղճ լսող, որ այս քարացած բառերէն կը համարէիք բան մը հասկանալ։

Կիպրիանոսը կը յարէ նոյն նպատակով և համառօտ աղօթք մ՚առ ս. Փոկաս, սա հրահանգով. «Գ. հետ ասայ և յամէն հետ փչեա յաւձն, փախչի ի սահմանացն». փչումն արդէն ծանօթ է մեզ ուրիշ առթիւ ևս (տես, 194, ՚5 ծան. և 210)։

8. – *Երդումն խոցից։* — Յետոյ ունի «Աղաւթք ամենայն ցեղ խոցի», որ կը սկսի բանաստեղծական նկարագրով մը. «Ծառ մի կայր ի մէջ տիեզերաց, ոչ ճուղ ունէր և ոչ տակ և ոչ տերև։ Արծիւ մի նստէր ի վերայ նորայ. ոչ ոտն ունէր, ոչ թև և ոչ գլուխ. տեսանէին տիեզերք, լսէին արարածք, հիացան հրեշտակք». – ստուգիւ արտառոց պատկեր մը. – «կալան կապեցին զնա և ասեն. Ո՞վ ես դու։ Ասէ. Ես եմ որ երթամ մըտանեմ յազգս մարդկան, զմիսն ուտեմ, զարիւնն ծծեմ, երկու աչացն խաւար բերեմ[1]»։ Բայց ի՞նչպէս այս խուժդուժ յօշոտումն այդպիսի տձեւ ծառէ մը և անգլուխ արծուէն։ «Ասէ ցնայ հրեշտակն. Ե՛րդ յանվայր վայրի դաշտն՝ ուր ոչ գոյ հաւու ձայն, նիստ ի վերայ վիշապին գագաթանն, զմիսն կեր, զարիւնն ծծէ, երկու աչացն խաւար ած, և ոչ մարդկան. չունիս իշխանութիւն մերձենալ ի ծառայս Այ.». դատարկ, և իսկոյն կը յարէ. «Երդմնեցուցանեմ զքեզ ի չորս գլուխ աւետարանն, ի Մթս. Մրկս. Ղկս. Յհս։

1. Այդ նկարագիրը նման է անկարին՝ որ կը յիշուի գրի մը մէջ (ասս, 253)։

*Կապել եմ զքեզ Հաւր տէրութեամբ, Որդւոյ զաւրութեամբ, Հոգւոյ իշխանութեամբ։ Առաքեսցէ տէր զհրեշտակ խաղաղութեան՝ որ եկեալ ածցեն զհրեղէն պարիսպն շուրջանակի և պահեն զծառայքս Այ։ Թէ խաղողիկն ես, թէ քաղցրն ես, թէ կերն ես, թէ գնայուն ես, թէ խումրէն ես, թէ գլուխիվայրն ես, թէ գլուխիվերն ես, թէ այն ես որ մայրն մանկանն չասէ, թէ սրտացաւ ես, թէ փորացաւ ես», և խումբ մ'ուրիշ ցաւոց, որոց առողջութիւն կը մաղթէ բարեխօսութեամբ բոլոր սրբոց՝ զորս կը թուէ անուամբ կամ դասով։*

*Ահաւասիկ հին Հայուն կրօնքը, բաւական պարզուած մեր հին գրականութեան սա նշխարաց մէջ։ Կրօնք մը, զոր եթէ ուզենք ուղիղ սահմանել, պիտի կոչենք ոգեպաշտութիւն, և զոր Մանդակունին միակողմանի՝ որով և աւելի խիստ սահմանով մը կ'անուանէ «դիւապաշտութիւն»* (ԻԶ, 187)։ *Հին Հայը քրիստոնէութեամբ չի փոխեր իւր աստուածները, և ոչ ալ պաշտամունքը. այլ Նոր Աստուած մը կը յաւելու Նախորդաց վրայ, որոց հանդէպ կը*

*շարունակէ պահել իր յարգանքը և կամ երկիւղը։ Ցիսուսի ներկայութիւնը չի յաջողիր ցրուել անոր վաղեմի ոգիները, չար ու բարի, որոնք շրջապատած կը պահեն զինք միշտ, և աւելի կը զբաղեցնեն իրենցմով քան Ցիսուս։ Իր լուսամիտ քարոզչաց վարդապետութիւնն ու վսեմ օրինակն ոչ ինչ կը զօրեն բաժնելու զինք իր նախապաշարումներէն. աւանդութիւնը՝ յեցած տգիտութեան, անդարձաբար փարած կը բռնէ զինքն անոնց մինչեւ վերջ։*

*Նոյն այդ կրօնից ուրիշ մէկ պատկերն է՝ զոր պիտի տեսնենք հետեւեալ գլխոյն մէջ։*

-☼-

## Զ. ՊԱՀԱՐԱՆՔ

*Ակսեալ Ե դարէն՝ ծանօթ են մեր քով բժժական երգումներ, նախորդաց մէկ տեսակը՝ գրաւոր, նոյնպէս հիւանդութեանց ու պատահարաց դէմ. որոց ուշ չպիտի դարձնէի՝ եթէ դարձեալ եկեղեցականք չլինէին զանոնք յարգողներ ու գործածողներ։*

1. – *Ծագումն։* — Աղոնց ծագումն ու նշանակութիւնը շատ հին է, և բոլոր արևելեան ազգաց պատմութեանց մէջ ծանօթ (Գոշլ. Ա, 271)։ Եգիպտական պապիրոսներ գտուեցան երդմնաձևերով, զորս պատենի մէջ դրած՝ իրենց վրայ կը կրէին մարդիկ. Նմանապէս պապիրոսի գլաններ՝ մոմիաներու քով զետեղուած։ — Գիտենք նաև Հնդկաց, Պարսից և Արաբաց մինչև ցարդ գրաւոր պահարաններ գործածելը։ — Աւելի ուշ՝ արևմուտք ալ ընդունեցաւ զանոնք. Պլուտարքոս կը յիշէ «եփեսական նամակները», որոց մին յայտնուած է այժմ. և է թրծուն կաւի շերտ մը՝ ծածկուած գրութեամբ, և կեդրոնը՝ Եփեսոսի պաշտպան Արտեմեայ պատկերը[1]։ Յոյնք և Հռովմայեցիք մագաղաթէ աւելի կը գործածէին հաստատուն նիւթեր. ինչպէս արծաթեղէն և ոսկեղէն գնդակներ, որոց վրայ կային մթին բառեր ու երդումներ, և զորս կը կախէին վզէ, բազկէ ու կրծքէ (Դարեմբ. Ա, 255)։ Նաեւ ընտրեալ ժողովուրդն ունէր գրեր, կը թուի՝ նոյն իսկ սկիզբէն, առնուած յՕրինաց՝ որոց համար

1. Vigouroux, Dict. Bib. – Amulette.

կ՚ըսուէր. «Արկցես զնոսա նշան ի ձեռին քում» (Բ Օր. Զ, 8)։ Յիսուսի օրով աւելի որոշ էր անոնց գործածութիւնը բոլոր Հրէից մէջ, որոցմէ կը զարտուղէին փարիսեցիք իրենց մագաղաթից առաւելագոյն ընդարձակութեամբ,. և զորս կը յանդիմանէր Յիսուս՝ ըսելով. «Լայնեն զգրապանակս իւրեանց» (Մատթ. ԻԳ, 6)։ Զանոնք կը կապէին իրենց գլխոյն կամ ժապաւինաձեւ կը պատէին բազկին[1]։ Տալմուդը կը յիշէ նաեւ աղօթից ու խրթին բառից գործածութիւնն անոնց մէջ[2]։

Քրիստոնեայ աշխարհն ալ ժառանգեց նախորդաց այդ բարքերը. այնպէս որ Դ դարուն Լաւոդիկեայ ժողովն արգիլեց քահանայից պահարաններ գրել (կան. լզ)։ Ոսկեբերան սաստկապէս կը հարուածէր ժամանակի բժժանքները, որոց մէջ էր նաև գետոց անուններ գրել և հիւանդին վզէն կախել (մեկ. կող. Ը, 617–9)։ Ս. Հերոնիմոս և ս. Աւգոստինոս կը միաբանին դատապարտելու իրենց տեսած պահպանակները։ Ս. Ելիգիոս՝ Նուայոնի ե-

1. Vigouroux. – Phylactères.
2. Անգ. – Amulette.

պիսկոպոսն (Է դարուն) կը պայքարէր Գաղիացւոց դէմ, որ այդ «սատանայի թոյնէն» կը կախէին մարդոց և անասնոց պարանոցէն, աղբերաց, ծառոց ու ճանապարհաց կիցերուն վրայ. և կը մերժէ նոյն իսկ եկեղեցականաց պատրաստածներն ալ ս. Գրոց խօսքերով (Կաբրոլ, Ա, 1788)։

Բայց այս վերջին տեսակս սովորաբար ներելի էր. Ոսկեբերան կ'ըսէ՝ թէ Կոստանդնուպոլսոյ տիկնայք աւետարանակներ կը զետեղէին իրենց վզի զարդերուն մէջ։ Նոյնը կ'աւանդէ իր աշակերտն Իսիդոր պելուսացի նաեւ Եգիպտոսի կանանց համար։ Ս. Հերոնիմոս կ'ընդունի այս ձեւը։ Գեղասիոս պապը կը դատապարտէր դիւական անուններով գրուածները, չմերժելով հրեշտակաց անուամբք շարադրածները։ Եւ մեծն Գրիգոր պապ՝ Լոնգոբարդաց Թէոդելինդա թագուհւոյն նուէր յղեց երկու պահարան՝ նորածին զաւակին համար, որոց մին Աւետարանի վճիռ մը կը բովանդակէր (անդ)։

Սակայն թէ ներելին և թէ աններելին հաւասարապէս գործածուեր են միշտ ամբոխէն, հակառակ Հարց բողոքներուն. և հնախօսք, և ամենէն աւելի Կաբրոլ՝ յա-

ռաջ կը բերէ անոցմէ ընդարձակ չափով՝ Եւրոպայէն, Եգիպտոսէն և այլ քրիստոնեայ աշխարհներէ, գրուած ազնիւ քարանց, ոսկի թիթեղի, կապարեայ թերթի, թրծուն կաւի, պապիրոսի, մագաղաթի, դրամոց, մատանւոյ, ապարանջանի և ամէն նիւթի վրայ (Ա, 527–35, 1783–856)։

Բոլոր մարդկութեան օրինակին հետեւեցաւ մեր ազգն ալ։ Մեր հին գրիչներէն նախ Մանդակունին եղաւ՝ որ մանրամասն նկարագրեց և միանգամայն ոգորեցաւ բժժանաց ու գրոց դէմ անպայման կերպով, ինչպէս պիտի ընէր իւր նման քրիստոնէութեան տեսականին ջերմապէս փարած մարդ մը, որ չէր կարող հանդուրժել այն ամէն բանի՝ որ հեթանոսական ծագում կամ նմանութիւն ունէր։ Ո՛ գիտէ, թերեւս ինքն ալ գիջանէր ուրիշ Հարց պէս, եթէ իւր հօտը զգրերը սահմանափակէր աւետարանական իմաստից մէջ։ Ընդ հակառակն Հայք ասոնց մէջ զեղծան չարաչար, ինչպէս պիտի տեսնուի հետագայ նկարագրէն։

2. – Սովորոյթք։ — Մեր դասական լեզուի մէջ, նոյնպէս դեռ և յետոյ, այդ

յուռութք կը կոչուէին «պահարան» կամ «գիր» և «գրած» կամ «գիր պահարան» և «գիր պահապան», համաձայն իրենց կազմին ու նպատակին. և գործը՝ «գրաւ-բարութիւն» (Մանդ. ԻՁ). իսկ եկեղ. կա-նոնաց մէջ «պահպանակ» ու «հմայեակ», կամ «պահպանական» (անդ ԿՆ) և «գիր պահպանական» (Ոսկ. ճառք, 374)։ Եւ որ աւելի կարեւորն է մեզ, այդ գրեր մեր հարցմէ եւս կը համարուէին իսկապէս «երդմունս» (Մանդ. 186)։ Անոնց բո-վանդակութիւնք զուտ աւետարանական ի-մաստներ չէին. այլ նման գրաւոր աղօթից՝ ցնորական խօսքեր, «ժաժմուկս մտացա-ծին բանից». անոնց մէջ խառնելով նաեւ սուրբ Գրոց մէջ անծանօթ ու խորհրդաւոր անուններ, «զանուան որ ոչ լուի ի պա-տուիրանս». և իբր չպար մ'անոնց՝ «և զա-նուն Քրիստոսի (կամ «զսուրբ անուն Աս-տուծոյ») ընդ նոսին արկանեն, զի գրածն աստուածական համարեսցի» (անդ, 187)։ Մանաւանդ երբեմն այնպիսի ձեւեր կու տային՝ որ պահարանը «զինքն յերկնից (իջած) ցուցանէ, զգրեալս մատամբն Աս-տուծոյ» (անդ, 199)։

*Այս բանիս համար, կը յաւելու, Հայերը ոչ միայն «դիւթս ի տունս ածեն առ ի յուռթել» (անդ, 187), որոնք սովորաբար կանայք էին*[1] (189), *և կամ իրենք անոնց կ'երթային* (185) *հիւանդութեան ներելուն համեմատ, այլ շատ անգամ «զգիրն եւս սպասաւորք եկեղեցւոյ և աբեղայք գրեն»* (186, '8), *ինչպէս տեսանք նաև արեւմտեայց քով. և քան զայս զարմանալին, «առաջնորդք» անգամ, որոց «միս ի մարմին խզեսցին և կամ ցաւ ինչ արագ անկանի», ոչ միայն դիւթերու կը դիմէին, «այլ և անձանց եւս ուռութս ուսանին». այս ինքն իրենք իսկ կը պատրաստէին գրերը, և իրենց կամ ուրիշ հիւանդաց վզէն կը կախէին. «ի փողս ցաւածիցն արկանեն»* (187)։ *Եւ աւելի ցաւալին՝ այդ գրերու տիրապետութիւնն է որ հիւանդաց օծութիւնը կը վտարէ մեր ազգէն, սկսելով Ե դարէն իսկ՝ ըստ հետագայ վկայութեան. «Թողեալ զշնորհսն Աստուծոյ, զաղօթսն և զիւղն օծման՝ զոր պատուիրանք հրամայեցին հիւանդին,... ինքեանք (կղերը) յուռութս և ի գիր զա-*

1. *Նոյնը կ'երեւի Յունաց քով ալ՝ ըստ Ոսկեբերանի (մեկ. Կող. Ը,* 617-9)։

ռածին» (անդ)։ Մանդակունին իրաւամբ թոյն կը ժայթքէ այդ «եկեղեցւոյ գլխոց» դէմ։

Սոյն բարքերը տեւեցին մինչեւ վերջ, որոց ուրիշ մանր նկարագիր մ'ալ կու տայ Դաւիթ Վ. Ալաւկայ որդին՝ ԺԲ դարուն։ Նա եւս հակառակ է աղոնց. գրաբարք իրեն համար «անմիտ մարդիկ» են, և «ուսեալք զչար արուեստն աղբանեկութեան սատանայի՝ վարդապետութեամբ դիւաց»։ Ահա թէ ինչ կ'ընէին անոնք։ Հնոց պէս «աւտար և ազգի ազգի անուանս յաւդեն միմեանց», անոնց մէջ խառնելով հրեշտակաց, սրբոց, առաքելոց ու մարգարէից անուններ. «և այլ բազում ոգեկորոյս և աւտարացուցիչ յԱստուծոյ բանս յաւդեն, և գրեն ի մագաղաթի խառն ընդ անուանսն»։ Բաց աստի «և բանաքաղ լինին յաւետարանէն», և առանձին «գրով» կը դնէին առաջնոց հետ, որպէս զի ասոնք յօժարութեամբ ընդունուէին։ Այդ բոլորը կը ծրարէին ուրիշ մագաղաթի մը մէջ, և «կնքեն տէրունական խաչիւն», այս ինքն իրենց մատանւոյն խաչանիշ կնքով, «զի զայն Աստուծոյ կարծիցեն». յետոյ կը դնէին

«ի ղրճի[1]», որ կաշեայ փոքրիկ տփաձեւ պատենի մը գաղափարը կու տայ, նման անոնց զորս կը տեսնենք դեռ մահմետական ազգաց քով։ Տակաւին «պահապանս» կը կոչէին զանոնք, և կը կապէին «ի բազուկս և ի պարանոցս մանկանց իւրեանց և անասնոց, ձիոց, եզանց, ոչխարաց[2]» (Կանոնք, ԴՁ)։

Ոչ միայն «անմիտ մարդիկ», այլ Ե դարու «առաջնորդաց» մտաւոր յաջորդներն ալ կը գործածէին զայս տակաւին։ Կիրակոս կը պատմէ ԺԳ. Գառնեցի Վին համար՝ թէ «խնդրէին ի նմանէ և գիր պահպանի անձանց իւրեանց, և նա անյապաղ տայր» քրիստոնէից և օտարաց անգամ, «գրելով զանուն սրբոյ Երրորդութեան և խորհրդական բանս աղօթից». իսկ անոնք «առեալ հաւատով՝ կապէին յանձինս իւրեանց» (ԾԲ)։ — ԺԳ. Երզընկացի՝ Մատթէի մեկնութեան մէջ յառաջ կը բերէ Ոսկեբերանի վկայութիւնը՝ թէ

1. Նոտրագիր օրինակ մը կ'ըսէ արար. «ի թապութի», որ կը նշանակէ դագաղ, տապան, և այս տեղ փոխաբերաբար պատեան։

2. Բիւզանդացիք եւս իշու հիւանդութեանց դէմ գիր մը կը շինէին մագաղաթի վրայ և գրաստին կը կապէին (Կարրու, Ա. 1855)։

«այժմ բազում կանայք աւետարանակ կախեն զպարանոցաց մանկանցն» (ԻԳ, 5)։ Եւ արդարեւ զուտ ս. Գրոց նշխարներէ պահպանակներ ալ կը շինէին դեռ Հայք, ինչպէս պիտի տեսնենք աւելի վար։ — Մոմիայից հետ դրուած պապիրոսաց փոխարէն՝ արեւմտեան քրիստոնեայք ալ իրենց մեռելական գրերն ունէին մետաղի վրայ (Կաբրոլ, Ա, 1791–5)։ Աղոնց նմանութիւնը կը կարծեմ տեսնել Վարդան Վ՛ի մէկ վկայութեան մէջ՝ թէ Հայք մեռեալ քահանային կու տային «բանս յաւետարանէն գրով՝ ի ձեռին ունելով», զոր սակայն յիշատակողը բարեպաշտիկ և ըստ իս անձնական գաղափարով մը կը համարի «նշանակ՝ զի խրատուք աւետարանին ընթացաւ զկեանս իւր» հանգուցեալը (Վս. մահ. քահ.)։ Բայց մեք կրնանք զայդ պահարան մը հաշուել՝ առանց սխալելու։ Զի Վարդանայ իմաստով՝ լաւագոյն պիտի լինէր աւետարան մ'իսկ տալ ձեռքը մինչեւ գերեզման, քան լոկ «բանս», և զայս միասին թաղել, ինչպէս կը հետեւի հնոց դիազարդիկ թաղուելու սովորութենէն, որոյ մասին պիտի խօսիմ առանձին աշխատութեան մը մէջ։

— Վերջապէս գրերու գլխաւոր շտեմարանն էր մեր ծանօթ Կիպրիանոսը[1], այդ եկեղեցական մատեանը, որով իւր բովանդակած գրերն ալ պաշտօնապէս ծանուցուած և ընդունուած էին՝ գէթ կղերին մեծամասնութենէն, զորս նա իսկ կ'օրինակէր անտի և կը բաշխէր խնդրողաց։

Մեր մինչև ցարդ քննածները փրկարար գրերն էին։ Ադոնց հակառակն ալ կար. այս ինքն գրով մը մէկը սատանային իշխանութեան յանձնել, — ներհակը գրաւոր կամ անգիր կապերուն՝ զորս տեսանք (տես, 221–37), – և որով անձը դժբախտութեանց ու վշտաց կը մատնուէր։ Տաթևացին է այս սովորութեան մեր մէջ գործադրութիւնը յիշատակող, խօսելով երդմանց վրայ. «Եւ կամ գրելով, որպէս սովոր են մարդիկ ոմանք, զի գրեն զհոգին՝ սատանայի»․ և զոր «մեծամեծ մեղք» կը համարի (Բրգ. ամր. 16)։ Այս կարգէն է Մովսէս Վրդ. Եզնկացւոյն ըսածն

1. Ուրիշ ազգերն ալ ունեցած են իրենց գրամատեանները, որոց մէջ յատկապէս ծանօթ են Բիւզանդացւոց Geoponica և Hippiatrica կոչուածները. երդումներ կը գտնուին նաև Անգղիացւոց հին աղօթագրոց մէջ, (Կարբոլ. Ա, 1454, '6)։

ալ. « Թէ կապ ոք արասցէ ի վերայ նոր փեսայի և կամ այլ ինչ իրաց », թող զրկուի եկեղեցական թաղմանէ (Խրատք)։ Այս գործն արդիւնք էր թշնամութեան կամ նախանձու. և հաւանօրէն գիրը կը յանձնուէր հակառակորդին ի պահեստ, մինչեւ որ օր մը հաճէր եղծանել զայն և անոր ազդեցութիւնը։

3. — Գրի ձեւեր։ — Կիպրիանոսի պահածներն իսկ պիտի լինին մեր ուշադրութեան նիւթ, — թէեւ վանացս ուրիշ ախտարք ալ ունին նման շատեր, որոնք իրենց նորութեամբ նուազ կը հետաքրքրեն զմեզ. և երկուք ալ օձահարի և մի ճանապարհի՝ կը գտնուի Վ. Մարաթացւոյ աղօթագրոց մէջ 1453 թուին։ — Ասոնք իրենց կազմութեամբ՝ և հրահանգօք իսկ՝ այնքան համաձայն են Մանդակունւոյն, Դաւթի և այլոց նկարագրութեանց, որ պահ մը կը փորձուիմ հաւաքածոյ մը նկատել զայն հնագոյն պահարանաց[1], զգալի նաև լեզուի զանազանութենէն, քան թէ մէկ խորհողի գիւտը։ Եւ այդ նմանու-

1. Այդպէս էին նախորդ ծանօթութեան մէջ յիշուած երկու բիւզանդական մասեաններն ալ. (Schlumberger, Mélange d'archéol. byz. I, 139).

թիւնը ոչ միայն ընդհանուր յօրինուածին, այլ երբեմն ամենացայտուն մանրամասնութեանց մէջ իսկ զգալի է։ Զոր օրինակ գրերէս մին կ՚ըսէ՝ թէ «այր մի էր ի բանակս հրեշտակաց, և այն գրէր զգիրս զայս». և Պաւղոսի հրեշտակէ մը ստացած գիրը զոր տեսանք՝ «գրեալ էր մատամբն Աստուծոյ» (տես, 233)։ Ո՞չ ապաքէն ասոնք Մանդակունւոյն այն պահարաններէն են, որ «զինքն յերկնից ցուցանէ՝ զգրեալս մատամբն Աստուծոյ»։ Յետոյ՝ ասոնց մէջ ալ ճապաղում մը կը գտնենք անուանց՝ «որ ոչ լսի ի պատուիրանս», կից սրբոց անուանց Դաւիթ Վ.։ Վերջապէս ի հնուց մնացած և գրչագրողներէ խանգարուած կամ ռամկացած բաւական բան լինելու է Կիպրիանոսի գրոց մէջ, որոցմէ ընդարձակ ու կարեւոր քաղուած մը պիտի ընեմ այս տեղ։

Մեր այս պահպանակաց համեմատութիւն մ՚օտարաց հետ — ըստ հրատարակութեան Կաբրոլի — համոզեց զիս՝ թէ անոնց յօրինողք չունեցան Հայուն երեւակայութեան աստիճանը։ Աւելի հանդարտ են իրենց լեզուն ու գաղափարները։ Դեւերը նուազ կ՚այլանդակուին ու կը ներգործեն։

Հեթանոսակերպ բանաձեւերը չունին մերոց առատութիւնը. և առաւելապէս իշխեցող տարրն անոնց մէջ ս. Գիրքն է։ Վերջապէս տկար է ընդհանուր աղերսն որ կայ անոնց ու մերոց մէջ. և ուր երբեմն աւելի կը սերտանայ, մատնացոյց պիտի ընեմ։

Իսկ գալով թէ մերոց մէջ չկա՞յ գէթ ասորական զօրաւոր հոսանք մը, չեմ կարող ըսել. բաղդատութեան եզերք կը պակասին ինձ։ Այդ կարելի է թերեւս օտարոտի — և խաթարուած — բառից մթերին մէջ՝ զոր ունին վերոյիշեալ երդմունք և հետագայ պահարանք։ Այս վերջին պարագայս յատուկ էր արեւմտեայց ալ. ս. Հերոնիմոս կ'ըսէ՝ թէ իրենց գրարարք եբրայական աղբիւրներէ կ'առնուին անծանօթ բառեր, տգէտ կանանց վրայ ազդեցութիւն ընելու համար (Թղթ. ՀԵ, 3)։ Տեսանք (աստ, 240) որ Հրեայք ալ իրենց կարգին կը գործածէին ուրիշ անիմանալի բառեր։ Ուշագրաւ է և մեզ ալ պիտանի՝ Եւսեբիոսի ըսածը, թէ Յոյնք ոգիներու անուններ կը կոչէին՝ որոնք երբեմն ոչ մէկ նշանակութիւն չունէին (Պտր. Աւետ. Ե, բ)։ Ուշ դնենք նաեւ Միլլերի, որ խօսե-

լով բիւզանդական գրերու մասին, անոնց մէջ գործածուած անծանօթ բառից ծագումը մոգութեան առաջին ժամանակաց կ'ընծայէ, և կը համարի՝ թէ օրինակողք չհասկանալով՝ հետ զհետէ այլափոխեր են զանոնք[1]։ Այս բոլորին հետ համեմատենք Մանդակունւոյն «ժաժմուկս մոացածին բանից», և Դաւթի «օտար և ազգի ազգի անուանս՝» որոցմով յօրինուած էին և են մեր պահպանակները, և զանք տեսնել զասոնք։

ա. Կիպրիանոսն ունի բաց յայլոց՝ «Այլ գիր գլխացաւի», որոյ պատճառ կը համարուէին դեւերը, որոնք իբր թէ քերանօք կը տանջէին ուղեղը. և որոց դէմ կու տայ այս բանաձեւը. «Սբ. հայրն Սիոնի և Սիսիանոսի միայնակեցի, որ կացեալ էին ի ծերպս վիմաց ութսուն ամ, և չար դեւքն նեղէին զնոսայ, և երկաթի քերչաւք քերէին զ(ը)ղեղս նոցայ։ Կացին յաղաւթս առ տէր և ասեն. Տէր Աձ. մեր, ուր անուանս մեր յիշեսցի, մի՛ ցաւեսցի գլուխ նորա, և մի՛ կէս գլխոյ նորա, և մի՛ խոցտեսցէ[2] գլուխն աչաւքն հանդերձ. եղիցի

1. Miller, Hippiatriques, էջ 10։
2. Իւր արմատն է ծանօթ «խոստուկը՝» որ է փորացաւ։

առողջութիւն և բժշկութիւն ծառայիս Ա․ (դատարկ՝ անուան համար) անուամբ Հաւր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ»։

բ. Նոյն ցաւին մէկ տեսակին համար է և հետեւեալ «Գիր գլխոյ՝ որ յանկարծակի ցաւի կէս գլխոյն». այս ալ արդիւնք էր ծովածին անկար հրեշին, որ ուղեղը ծծելով կը ցամաքեցնէր ըստ յաջորդ ձեւին. «Ելանէր անկարն ի ծովէն, գոչէր մռնչէր իբրև զառիւծ. դէպ եղև Մարիամ մագդաղենացի, ասէ. Ո՞ւր երթաս, պիղծ անկար չար։ Եւ ասէ. Երթամ ի գեւղ և յագարակ, նստիմ ի վերայ գագաթան մարդոյն, զոսկեր(ս)ն բեկանեմ, զ(ը)ուղեղն ծըծեմ, զաչսն խաւարեցուցանեմ»։ Զափազանց խրոխտ խոստովանութիւն, որուն «ասէ Մարիամ. Երդմնեցուցանեմ զքեզ ի դ աւետարանիչքն Քրի. ի Մաթէոս, ի Մարկոս, ի Ղուկաս և Յոհաննէս, և յանուն սրբոյն Միխիանոսի[1] միայնակեցին, որ բնակեալ էին ի ծերպս վիմաց ամս բազումս, և չար դևքն նեղէին զնա, և զգլուխն

2. Գրչի վրիպակ՝ փոխանակ Միխիանոսի ինչպէս ա գրին մէջ։ Թէ Մագդաղենացին՝ ճգնաւորէս դարեր յառաջ ապրած՝ ինչպէս կ'երդմնեցնէ յանուն անոր, գրողին թողունք մեկնել։

ցաւեցուցանէին։ Եւ նա աղաչէր զտէր մեր Յս. Քս. և ասէր՝ թէ ուր լինի գիրս և հաստատի բանք, մի՛ ցաւեսցի գլուխ ծառայիս Այ. (դատարկ) յանուն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. ամէն»։

գ. Ահա ուրիշ մը՝ խառն օտարոտի բառերով. «Գիր ջերման. գրէ յուրբաթի». վերջինս՝ խտրականութեան իմաստով, նըման «ուրբաթագրին» զոր տեսանք (աստ, 225)։ «Սալունա՛՝ խալունա՝ աշխունա՝ լայնապի՛. ասխեմ նաթի՛. կա՛պք ջերման»։ Ապա կը խօսի մտաւոր էակի մը, որ հարկաւ ջերմը չէ, այլ անոր դեւը. «Թէ հայ ես, երդմնեցուցանեմ զքեզ ի Յս. Քսն. թէ տաճիկ ես, երդմնեցուցանեմ զքեզ ի յԱլին և ի Մահմէտն. թէ ջհուտ ես, երդմնեցուցանեմ զքեզ ի Մովսէս և յԱհարոն. և այլ ազգ զինչ և իցես, երդմնեցուցանեմ զքեզ ի թագաւորն քո. և՛լ ի ծառայէս Այ. (դատարկ)»։ Եւ կ'աւարտէ այսպէս. «Այր մի էր ի բանակս հրեշտակաց, և այն գրէր զգիրս զայս. մին ակին, մին ջերման, մին ա(յ)սահարի, և այլ ամենայնի, յանուն Հաւր» ևն։ Կարեւոր է դիտել՝ որ այս տեղ ազգային խտրութիւն կը դրուի ջերմի դիւին մէջ. հետեւաբար ամէն աշխարհ կամ

ցեղ իւր յատուկ չար ոգիներն ունէր յաչս նախնեաց։ Ինչպէս ընդ հակառակն կային նաեւ աշխարհաց պահապան բարի ոգիներ, ըստ Դանիէլի՝ որ մի մի հրեշտակ «իշխան» կը դնէ Պարսից, Յունաց և Հրէից (Ժ, 13, 21. ԺԲ, 1). և Եզնիկ ուրիշ Հայոց հետ կը համարի զանոնք «յօգնականութիւն մարդկան, ազգաց և թագաւորութեանց, ըստ այնմ զոր ասէն[1], թէ կացոյց սահմանս ազգաց ըստ թուոյ հրեշտակացն Աստուծոյ» (Ա, ԻԶ)։

դ. Ուշագրաւ է և հետեւեալը, որ կէս մ'աւետարանակ է և կը հաստատէ Երզընկացւոյն վերեւ ըսածը. «Այլ գիր ջերման Ավ. գրէ». առաջին մասն Յովհաննու աւետարանէն է. «Ի սկզբանէ էր բանն ... (մինչև) և ոչ ինչ որ ինչ եղեւն». և ապա կը յարէ. «Յանուն տն. մերոյ Յի. Քի. եղև։ Պեղծ տենդ և ջերմն, ե՛լ ի ծառայէս Այ. և գնա մուտ ի ջհուտն՝ որ ոչ խոստովանի զՀայր և զՈրդի և զսբ. Հոգին, և այլ մի՛ մտանել ի սա և մի՛ յայլ

1. Ըսողն է Բ Օր. ԼԲ, 8։ Այս վկայութեան մէջ «հրեշտակացն Աստուծոյ՝» ըստ Եօթանասնից է. հրէականը կը դնէ «որդւոցն Իսրայէլի». և հայ թարգմանութիւնը՝ «որդւոց Աստուծոյ»։

որք ի փառս Այ.»։ Այսպէս Աբրահամու քրիստոսուրաց Թոռանց դէմ մեր ազգին ատելութիւնը բաւական հին է։

ե. Այդ կարգէն է և զուտ աստուածաշնչական՝ ուրիշ մի «Գիր պատերազմի», զինուորներն անխոց պահելու համար։ Քաղուած մ'է սաղմոսաց յարմար համարներէն, ու կը սկսի «Դատեա տէր զայնոսիկ» սաղմոսին երեք տներով. և զոր զարմանալի զուգադիպութեամբ կամ թէ հնաւանդ սովորութեամբ «ազազակէին և ասէին» Վարդանանք ալ՝ Աղուանից կռուին մէջ (Եղիշ. Գ). ինչպէս և Գուրգէն արծրունի Արաբաց դէմ ճակատած պահուն՝ «յորդառատ արտասուօք եկաց յաղօթս, ասելով զԼԴ սաղմոսն (որ է նոյն Դատեայն) և զՁԲ» (Թով. արծ. 164)։

զ. Հետաքրքրական է և հետագայ գիրը. «Կինն յորժամ դժար ծնանի, զայս հրեշտակաց անուանքս գրէ՛ և ի ձեռն դիր՝ որ հեշտ ազատի Ավ. և երբ Ավ. ազատի, նա ի կրակն ձգէ»։ Ոչընչացնելու այս պատուէրը, որ կը պակասի ուրիշ գրերու մէջ, անշուշտ վնասակար կ'ենթադրէ գրոյս պահպանութիւնը՝ երբ վտանգն անցած է։ Ահա բովանդակութիւնը. «Աքէ, Աքիա,

Կաթառասաք, Դիմա՛ս, որք փութացուցէք զծնունդ սբ. կուսին Մարիամու, փութացուցէք և այժմ զծնունդ աղախնոյս Ա.յ. այս անուն։ Բացցին դրունք ծննդոց սորայ և երևեսցի պատկերն Ա.յ։ Այս էին հրեշտակքն որ մանկայբարձէք էին սբ. Կուսին յորժամ ծնաւն զՔս». Ծանօթութիւն մ'այս վերջինս՝ որ չի գտնուիր մեր անկանոն գրոց մէջ, և ինքնահնար կը թուի կամ անծանօթ աղբիւրէ։

Է. Շատ արարողալից է և սա միւս պահպանակը. «Գիր ակռի. գրէ ի վերայ թխտի, և գլխուն կամ թովխունն[1] բևեռէ յարևելից կողմն՝ նոր մեխով»։ Արևելից կողման իմաստը տեսանք (աստ, 188). իսկ ի՞նչ կը նշանակէ նոր մեխը. արդեօք նոր ատաման խորհրդանշա՞ն մը։ Ապա կը յարէ. «և սև հաւ մի մատաղ արայ, և երեսուն ծունր դիր, և հարիւր Տէր ողորմեա»։ Եթէ յանկարծ բժշկուէր, արդիւնքն այդ բարեպաշտական գործո՞ց համարելի էր՝ թէ սա խորթ բանաձեւին. «Ծժէ՛ Մանուէ՛լ. Ծժէ՛ Դանիէ՛լ. Ծժէ՛ Դադանիէ՛լ և սբ. Դանիէլ։ Երդմնեցուցանեմ զքեզ, ո՛րթն

1. 1778ի մեր գրապանակը կ'առնու զայդ և կը պարզէ՝ «գամէ ի տունն», որ է պատին վրայ։

Ուրհայ, յՈւռհա և Ցամառնակայ, և ի սբ. գերեզմանն Քի. ոչ մերձենաս, որ է տապանի ծառայիս Այ. այս անուն»[1]: Անհեթե՛թ նմանութիւն փրկչական հանգըստարանին և փտած տապանի մը մէջ, գուցէ որպէս թէ այդու պիտի վախէր Եղեսիոյ որթակերպ դեւն ու փախչէր. և որ կ'արդարացնէ Դաւիթ Վ.ի «անմիտ» ածականը:

ը. Անքուն մանկանց համար կու տայ Կիպրիանոս յաջորդ գիրը. «Անուանք Եփեսոսի մանկանցն գրէ, ի սնարքն տղային դիր, քունն տանի Ավ: — Մաքսիմիանոս. Ամղիքոս. Մատրոնիանոս. Դիոննէսիոս. Յոհաննէս. Կոստանդինոս. Անտոնինոս»[2]: Յայտնի է եօթն մանկանց դարաւոր քունը քարայրի մը մէջ. այս պատճառաւ պահպանակով կը կոչուէին իրենց երկար նինջէն նշխարիկ մը շնորհել քնակորոյս տըղային, որպէս զի անոր մայրիկը չտառապէր՝ հսկելով սնարին:

թ. Գաղափարաց, բառից ու կարգի ճշմարիտ թոհբոհ մ'է և անոր «Գիր ա-

1. Նման Տաթեւացւոյն ըսածին՝ թէ քրիստոնէի «բերանն գերեզման է Քրիստոսի» (Քրզ. ամր. 30):
2. Այդ սրբոց անուանց գրեր ունէին նաեւ Կոպտերը (Կարրոլ, Ա, 1814):

կին», որ է ակնհարութեան դէմ ։ «Քս. ի վերնատունն ի սբ. Սիոն կայր, և գրեցին գիր ակին աշխատամի՛տէ։ Ոմանք գիտեն. ոմանք կորա՛յէ հետայ և հետետայ[1]։ Երեք հարսն Նոյի այս են՝ որ սիրեն զաճումն ամենայն իրաց ։ Հրամանաւն Այ. կապեմ զգլուխս և զկախարդս և զչարակն. Աշումա, Այումշումա՛յ. Ամանա՛յ. Հուիա՛, Հո՛ւլն սատաշիա. Ամէ՛նխեպի. Քամի՛նտլ. Ճահատին, (որ են) ական կապք և աճումն ամենայն իրաց ». ըստ որում չարակնութիւնը կը խամրեցնէր ու կ'եղծանէր, այդ կապերը կը չէզոքացնէին զայն։ Յաջորդութեան մէջ կը պայքարի ձեռնածուաց ընչաքաղցութեան դէմ, և կ'աւանդէ քրիստոնէական ձեռնածութեան մը ձեւը։ «Արդ երեք եղբայրք երթային ի լեառն Ձիթենեաց՝ ձեռն ուսանէին։ Տէրն մեր Յս. Քս. ընդդէմ դիպաւ և ասէ. Յառա՛ջ երթայք, եղբայրք։ Ասեն. Երթամք ի լեառն Ձիթենեաց՝ ձեռն ուսանիմք։ Ասէ տէր մեր Յս. Քս. Երբնո՞ւք որ ոչ գին առնուք և ոչ գաղտ ասէք. ձեռն զայս ուսուցանեմ ձեզ. ասացէք՝ եթէ զտէրն մեր Յս. հրէայքն

1. Թերեւս երեք անուանք են յաջորդ հարսանց։

խոցեցին, արիւն և ջուր ելաւ. ջուրն՝ ի բժշկութիւն մեղաց, արիւն՝ ակնառածի»: Կը շարունակէ ուրիշ վիպով մը. «Սբ. Թորոս Նստեալ գրէր և ջնջէր, և չարակն պատառէր. Զարա՛կն, խաժա՛կն, խատա՛կն, Տանա՛կն, Գրուցա՛կն[1] մի՛ տեսանէ բարի, յանուն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ: Ազի՛. Մազի՛. Զարեխի՛. Զմրուխի»: Եւ կ՚աւարտէ հովուերգութեամբ մը. «Էլ հովլուն ծիրանի, արածէր յովիտն ծիրանի. յանխախաց պանիր եհան. որ ոք տեսաւ՝ զարմացաւ, որ ոք կերաւ՝ պատառեցաւ. ամենայն չարակն նոյնպէս պատառեսցի ի դիմաց ծառայիս Այ. (դատարկ), անասնոց և խաշանց և երիվարաց և կաթին և մեղուաց և ամենայն գոյից. ամէն»: Այսքան անկապ գաղափարաց զուգորդութիւնը՝ մտաց անկանոն բեղնաւորութիւն մը ենթադրել կու տայ:

Ժ. Բանաստեղծութեան սիրուն ծաղիկ մ՚է հեսւագայն, որ դժբախտաբար կը վերջանայ անուանց անքերական կուտակութեամբ. այս է յատուկ «Գիր մեղուի»,

1. Յայտնի է թէ դեւեր են միշտ աղոնք: Համեմատել Գաւիթ Վի ըսածին հետ. «ազգի ազգի անուանս եղեալ դիւաց» (Կանոնք. ԼԶ):

զոր մշակը մեծահաւատ խնամով մը կը տանէր փեթակին մօտ ծակի մը մէջ կը ծածկէր. «գրէ և ի փորոքն դիր»: Իսկ մեք՝ հանենք կարդանք զայն. «Որ անարիւնդ ես կենդանի և անհովիւ ես յարաւտի, որ անբեռն և անշալակ բերէք ի լերանց բարձանց զբարին յանուն Այ. ով զեոք մեղուաց, աճեցէք յանուն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ»: Ու կը կոչէ անոնց պաշտպանները, որոնք տեսակ մը Ցաւերժհարսունք կը թուին. «Այս են անուանք՝ որ ունին իշխանութիւն ի վերայ մեղուաց. Եաննայիսէ, Աննա՛յ մուսէ, Կապա, Թովմա՛յ, Իմաննա՛յ, Արեգակնիա՛յ, Ջանազան, Արեգակնազան, Ջարմանազան, Ճքեղազան. այս են անուանք...[1] Նոյի և Կնկան»:

ժա. Գրեր կան՝ որոց մէջ թուղթ կամ մագաղաթ գործ չունին, այլ ուրիշ նիւթեր կը փոխանակեն զանոնք։ Այսպիսի է՝ զոր օրինակ՝ «Այլ գիր Ջերման», զոր

1. Պատռած է բառի մը տեղ. Թերևս «դստերաց» կամ «հարսանց» Նոյի, զորս այդ թուով ու կոչմամբք կը ստեղծէ հայ գրարարը։ Մխ. Հերացի շատ անգամ կը յիշէ բժիշկ մը «Եհաննայ» անուն, ուստի ծագած կը թուի մեր «Եաննայ-իսէ», յն. իգ. ածանցով. արդէն յայտնի է յարակից անուանց կարկատանքն ալ։

«գրէ, կ՚ըսէ, ի հաւկիթն, խորովէ և ու-տէ կճեպովն». Ինչ հրաշագործ գիր, որ կճեպին վնասաբեր ճաշակը բուժականի կը փոխէ։ Թանաձեւին սկիզբը միայն կայ, «Մահի ահի, շարահիա». Ցուցորդը գրա-մոլ մը յաջորդ թերթով պատռեր տարեր է, խնայելու համար իրեն և ինձ՝ օրինա-կելու աշխատութիւնը։

ժբ. Այդ կարգին կը պատկանի հետե-ւեալն ալ, գրելի հացի վրայ. «Գիր կատ-ղածի». յայտնի չէ, ի դարման կատաղի շա՞ն՝ թէ անոր խածած մարդուն. «գրէ, կ՚ըսէ, զայս բանքս ի (40 անգամ) ի վերայ հացի[1], և տուր որ ուտէ Ավ. — Աքս, բա՛քս, մաքս, ինաքս»։ Կը հաւա-տամ թէ այս նիւթը՝ — եթէ բառերը ոչ՝ — նախորդէն աւելի դիւրամարս է. և եթէ ոչ թոյնը, գէթ քաղցը կը բուժէր։

ժգ. Ուշագրաւ է նաեւ սովորութիւնը՝ առանց որ և է արտաքին նիւթի՝ նոյն

1. Նոյն ոճով Բիւզանդացիք ալ գինւոյ խանգարման դէմ կը գրէին սաղմոսին մէկ խօսքը (ԼԴ, 9) տակառին վրայ, կամ խնձորի մը վրայ՝ զոր կը ձգէին գինւոյն մէջ (Կարբոլ, Ա, 1855)։ — Առատ որսի համար՝ ժժմակի մը վրայ կը գրէին ἰαὼ σαβαώθ աստուածական մակ-դիրները և ջուրը կը նետէին։ — Օձերու դէմ՝ աղաւնոցին չորս անկեանց վրայ կը գրէին Ἀδάμ (Geoponica, հրտ. Niclas, էջ 1251, 980)։

*իսկ ուղղակի ցաւած տեղւոյն կամ մարմնոյն վրայ գրելու, զոր կը յիշէ Մովսէս Եզնկացի, պատուիրելով յեկեղեցի չընդունիլ այն կինը՝ «որ գիր ի վերայ վիրի գրէ» (Խրատք)։ Բայց Կիպրիանոսը զայս ալ կը ներէ, տալով յատուկ «Գիր ծծացուի և խումրայի[1]», զոր «գրէ, կ'ըսէ, գ հետ ի վերայ վիրին, լաւնայ Ավ.»։ Այսպէս աւելի մերձաւոր ցաւին, ուստի բնականապէս և աւելի ազդեցիկ պիտի լինէր։ Բովանդակութիւնն է. «Ջի կասիր արարի, կատակ արարի սակէզ». և կը յարէ «ր կրկնէ»։ Մէկ անգամն իսկ շատ չէ՞ր արդէն։*

⁂

## Է. ԳՐԱՊԱՆԱԿՆԵՐ

*Այս անուամբ ու բաժանմամբ կ'ուզեմ նկատել յատուկ դասակարգ մը գրաւոր պահպանակաց, զորս հիներն իրենց իսկ ձեռօք պատրաստեր ու մեզ են հասուցեր։ Ասոնք այնու կը զանազանին «գրերէն»,*

1. *Մխ. Հերացի կը յիշէ նոյն «խումրայ», և կը մեկնէ. «կարմիր և տաք այտո(յ)ց՝ որ ուտէ զմարմինն և խաղաւարտ այրնէ» (Լ.Գ.)։*

որ վերջինքս համառօտ էին, բովանդա-
կելով լոկ երդմանց մին՝ ըստ պարագա-
յին։ Այսու միայն կարելի էր «ի փողս»
կամ «ի բազուկս» կապել զանոնք. և
ծննդականի գիրը կ'այրէին իսկ, ինչպէս
տեսանք (տես, 244, '46, '56)։ Ընդհա-
կառակն գրապանակները շատ ընդարձակ
են, մեկի փոխան ամփոփելով բազմաթիւ
աղօթքներ, և սահմանուած միշտ անեղծ
պահուելու. տեսակ մ'ախտարքներ գրա-
պանակի ձեւով։ Մեծ հնութիւն մը չու-
նին ասոնք. հազիւ ԺԸ դարէն կը սկսին,
գէթ ինձ ծանօթները։ Բայց հարկաւ վեր-
ջին սահմանը չէ այդ. զի ահա Յիսուսի
օրերէն իսկ տեսանք Հրէից քով բուն իսկ
զասոնք. «Լայնեն զգրապանակս» (Մտթ.
ԻԳ, 6. և տես, 240)։ Նոյներն յար և
նման տարածուած էին արեւմտեայց մէջ
ալ, որոց ծագումը սակայն անյայտ է՝ ըստ
Կաբրոլի (Ա, 1855)։ Գիտենք աղոնց գոր-
ծածութիւնը մահմետական ցեղերէն եւս.
գրիչ մը 1828ին կը պատմէ՝ թէ Կորդո-
փանէն եկած ընձուղտն «յուռութ մ'ունի
կախուած վզէն (նման մեր անասնոց կա-
խելուն, տես 246)։ Այս յուռութը գրուած
է մագաղաթեայ երիզի մը վրայ. և կը

կազմուի՝ բաց ուրիշ յօդուածներէ՝ Կուրանի բազմաթիւ կտորներով, որոնք պիտի պահպանեն ամէն ցաւերէ, դիւթութիւններէ և չարակնութենէ» (անդ, ծն. 2)։

1. – Հայ դրապանակներ։ — Կատարելապէս նման են ադոնց. բոլորը թղթի վրայ, ժապաւինաձեւ երկար ու գալարուն շերտեր։ Զունին որոշ սահման մը. այլ թէ նիւթական մեծութեամբ և թէ բովանդակութեամբ քիչ կամ շատ կը զանազանին իրարմէ։ Վանացս օրինակները, թուով իբր քսան, և բոլորն ալ ԺԷ – ԺԸ դարուց, ունին երկայնութիւն 3, 35էն մինչեւ 10 մետր, և լայնութիւն՝ 3, 8էն մինչեւ 10, 5 հրդ. երկու չափերն իրարու համեմատական միշտ. իսկ մին՝ 1778ին գրուած, երկայն է 26, 50 մտ. և լայն 10, 5 հրդ. և դեռ ամբողջ չէ։

Ադոնք ունին կրկին նպատակ. մին՝ իբրեւ պահպանակ կը գործածուէին, ինչպէս հին «գրերը»։ Եւ արդարեւ 1677ի օրինակին յիշատակարանը զայն նոյն իսկ «գիր» կ'անուանէ. և 1710ի, '13ի, '15ի, '61 օրինակները կը կոչուին՝ իրենց մահմետական նմանակցաց պէս՝ «համայիլ» կամ «հէմայիլ»։ 1693ինը գրուած կ'ը-

սուի «պահպանութեան ծառայիս Ա.յ. Սահակին», և 1761ի գրապանակին համար՝ թէ «ամէն չարեցն փրկես(ց)է», և 1742ին՝ «փրկեսցէ երեվելի և աներու (աներեւոյթ) թշնամուն»։ Ասոր համար բոլորն ալ ըստացողին անունը կը կրեն իրենց աղօթից մէջ, իբր անոր անձնական պահարանը։ — Երկրորդ նպատակն էր կարդալ զայն ըստ պարագային. 1690ի օրինակն յայտնապէս կ'ըսէ աղօթքի մը գլուխ՝ թէ «որ կարդայ՝ կատարի ամենայն խնդրուածք իւր ի բարին Ավ.», և 1693ինը գրուած է նաեւ «ի վայելումն»։ Ասո՛ր համար խըճողուած են այնքան աղօթիւք և խնամով պատկերազարդուած ։ — Անոնց համառօտները, 3, 35 – 4 – 4, 50 հրդ. լայնութեամբ, գալարուելով այնքան փոքր են, որ կրնային նաեւ դրուիլ «ի դրճի» և կախուիլ վզէն. մինչդեռ ընդարձակները պէտք էին զետեղուիլ գրպանը, բարձին ներքեւ և այլն։

Բոլոր ծանօթ գրապանակաց բովանդակութիւնը կրնանք ամփոփել հետեւեալ սահմանի մէջ։ Հաւաքածոյ մը, աւելի կամ նուազ ընդարձակ, Կիպրիանոսի և ուրիշ ախտարաց. այս ինքն բժշկական աղօթք-

ներ առ Աստուած, առ սուրբս և հրեշտակս, մերթ առ զանազան նշխարս տէրունական խաչին. գրեր. սովորաբար Շնորհալւոյն «Հաւատով խոստովանիմը», Նարեկացւոյն «Որդի Աստուծոյ» և «Ընկալ քաղցրութեամբ» աղօթքները. և երբեմն ս. Գրոց ընթերցուածներ եւս։

Աղոնց մէջ հնագոյնն է ՊՂԶ (1447) թուին գրուածը, զոր տեսայ Ուս. Տեզայի քով. երկայն 15 մ. թէեւ տակաւին պակասաւոր է, և լայն 7 հրդ։ Սա բաց յայլոց ունի՝ իբր ոչ սովորական՝ ցուցակ մ'Աստուծոյ «հազար և մի անուան», որոյ ակնարկութեան հանդիպեցանք յառաջ ալ Կիպրիանոսի մէկ աղօթքին մէջ[1] (աստ, 222), և հաւատոյ դաւանութիւն մը։ — Հնութեան կարգով ասոր կը յաջորդէ Վիեննայի Մխիթ. Հարց մի գրապանակը՝ ՋԻԵ (1476) թուին. երկայն 2,86 մ.

1. Վանացս 1690ի օրինակն ալ ունի նոյնը։ Այդ անուանք մակդիրներ են, արդէն ծանօթ կամ նոր յօրինուած, և այբբենական կարգով դասուած. ահա ճաշակ մը. «Անսկիզբն ած. անեղ ած. անիմանալի ած. անհասանելի ած... ամէնարագ ած. ամենաբերկրեալ ած... բարձր ած. բազմեալ ած. բանիչ ած.» են։ Ուրիշ անթուական նոր գրապանակի մը մէջ եւս կան «Անուանք Այ. կբ (62) լեզուաւ՝ Թերնին Թաս. Ակիաւ. Սաւթէր. Մէսիաս. Եմմանուէլ. Ադոնիայ. Աթանատատ. Աւթէաոս. Պանախրամ. Ատաւնաէս» են։

(պակասաւոր), լայն 8 հրզ. և բովանդակութիւնը համաձայն ՚այլոց (Ցուցակ Հ. Տաշեանի, էջ 915, գ)։ — Հետեւաբար գրապանակի այս ձեւը ժամանակակից կը լինի փոքր գրերու, գէթ մեր օրինակին՝ ԺԵ դարուն, և անոնց հետ գործածուած. թէեւ պատճառ մը չկայ զայն աւելի հին ևս չենթադրելու, ինչպէս ըսինք վերեւ։

2. – Ալեաց Եկարք։ — Այդ երկուց արուեստական կողմն ալ կայ. առաջինն երկուստեք իբր շրջանակ ունի մի մի զոյգ կարմիր գծեր, և ազօթքներն իրարմէ կ՚անջատուին կարմրագիր հրահանգօք ու սկզբնաւորութեամբ։ Երկրորդն ունի դեղնագոյն շրջանակ, նոյնպէս կարմրագիր բաժանումներ, և երկու բազմագոյն նկար, որ է կին մը և Թռչուն։ — Ասոնք սկիզբն են արուեստին, որ աւելի վերջ՝ վանացս օրինակաց մէջ բաւական զարգացման հասած է, ստանալով ընդհանուր նկարագիր մը։ Ու է այս։ Շուրջանակի սովորաբար գունաւոր պարունակ մը։ Աղօթքներէն շատեր իրենց վերեւ ունին բազմագոյն պատկեր մը, ներկայացնող տէրունական և երբեմն հին կտակարանի յիշատակաց. կենդանագիրք Տիրամօր, հրեշտակաց կամ սրբ-

բոց՝ որոց նուիրուած են, և կամ անոնց անուանի հեղինակաց, այս ինքն աւետարանչաց, ս. Կիպրիանոսի, Շնորհալւոյն. մերթ եւս անոնց բովանդակութեան պատկերացումը։ Իսկ գրապանակին գլուխ՝ յաջորդաբար զետեղուած են երեքէն մինչեւ վեց պատկերներ։ Բոլոր ասոնք շինուած են նպատակաւ պահպանութեան, և ոչ սոսկ պաճուճանաց։ Համառօտ աղօթքներէն ոմանք ամփոփուած են գունաւոր բոլորակի մը մէջ իբր զարդ։ Մէկ կամ աւելի աղօթից տողեր դասաւորուած են վերուստ ի վայր առ ի շեղ կարգով, խաչաձեւելով զիրար և աղիւսակ մը կազմելով։ — Այս ոճով շինուած են, աւելի կամ նուազ ճոխութեամբ և յաջողութեամբ, մեր 1677, 1703, '10, '13, '15, '42, '61, և այլ տարիներու օրինակները։ 1778ին ունի միայն կարմրագիծ խաչեր, մարդադէմ լուսին, աստղեր ու գիսաւոր մը, մատանահարը զոր պիտի տեսնենք, և ախտարական մթին նշանաձեւեր։

Բայց գեղեցկագոյնն է 1690ի գրուածը, որոյ թուականը սակայն աւելի նոր կը թուի քան գրչութիւնը, և դրուած եր-

կրորդ ստացողէն՝ որ ջնջեր է նախորդին անունը և իրենը գրեր։ Երկայնութիւնն է 10 մ. (պակասաւոր), և լայնութիւնը 10,5 հրդ։ Շրջանակն յօրինուած է՝ իրարու հակառակ նայող կարմիր ու կանաչ տերեւանման զարդերով։ Գլխի նկարուց մէկ մասը կտրուած է, և կը սկսի քառասուն կուսանաց փոքրիկ կենդանագրովք, լոկ իրաններ, շարուած տասնուչորս կարգի վրայ՝ երեք երեք։ Անոր կից՝ փրկչական դաստառակը՝ բռնուած սուրբէ մը, որ թերեւս Անան սուրհանդակը լինի։ Ուրիշ սուրբ մը ծնրադիր կ'աղօթէ Աստուծոյ՝ որ կ'երեւի ամպերէն։ Այս տեղ կը սկսին գրութիւնք՝ հազար և մի անուանց ցուցակով, և մէջ ընդ մէջ կենդանագիրք, որ. են՝ հայրապետի մը. Սեբաստիոյ քառասուն մանկանց՝[1] կուսանաց ոճով. Շնորհալւոյն. Տեառնընդառաջի պատկերը. բըժշկութիւն երկու կաղաց ի Փրկչէն. երկոտասան առաքեալք բոլորակաց մէջ, լոկ իրաններով. ասոնց գլխաւորք՝ առանձինն և կանգուն՝ վեր կը բռնեն եկեղեցին. Տիրամայրն Յիսուս մանկամբ՝ նստած յաթոռ.

1. Եգիպտոսի մէջ շատ յաճախեալ էին Քառասնից անուամբք գրերը (Կաբրոլ, Ա, 1814)։

խաչելութիւնը. Յհ. Մկրտիչ՝ գրկած իւր գլուխը. Ստեփանոս և Լուսաւորիչ՝ իրենց սրբազան տարազուց մէջ. Գաբրիէլ հրեշտակապետը պահապան կանգնած ննջող մարդու մը վրայ. աղօթից երեք շրջանակներ. Աբրահամու զոհը, յարակից աղօթից աղիւսակով. միջապապան ս. Գեւորգ ձիաւոր. ս. Սարգիս՝ իւր որդին առած ձիոյն գաւակին վրայ. և վերջապէս Ալի կշտամբումն Յիսուսէ։ Եւ ամբողջ գործը հարուստ խճողում մ'է կարմրի, կապուտի, կանաչի, դեղնի, մանիշակի, գորշի, և քիչ մ'ալ ոսկւոյ։ Մաքուր աշխատութիւն մը, որոյ մէջ սակայն պէտք չէ փնտռել նկարչական նրբութիւնը և դիմագծերու պահանջուած զանազանութիւնը։

·☀·

## Ը. ԱՅԼ ՊԱՀՊԱՆԱԿՆԵՐ

Ընդհանուր քրիստոնէական և հայ հնութիւնը գործածեր են ուրիշ այլ և այլ ձեւերով պահարաններ եւս, որոց մնացորդք շատ կան այսօր արեւմտեայց մէջ։

*Դժբախտաբար նոյնը չենք կարող ըսել մերոց համար, զորս աւերիչ ժամանակը կորզեր տարեր է, բաց ի սակաւուց, որոնք գէթ իրենց որակով կ'ընծայեն մեզ բաւական յագուրդ մը։ Ասոցմէ ցոյց պիտի տամ ինչ որ յայտնի է ինձ, ապագայ խուզարկութեանց ու պեղմանց թողլով աւելին ընձեռել։*

*ա. Ծանօթ է Արծրունեաց Մլքէ թագուհւոյն անուանի աւետարանը՝ որ կը պահուի վանացս մէջ։ Ասոր Մարկոսի ծայրը կայ գրչութեան երկսիւն մեծ յիշատակարանը, զոր երկրորդ ստացող մը քերեր ու տեղը նոր մ'է գրեր։ Հնոյն ներքեւ, լուսանցին վրայ, երկսեան ճիշդ կեդրոնը, առաջին գրչէն դրուած է՝* 2,7 *հրդ. երկայնութեամբ տառս*



*Ի՞նչ կը նշանակէ այս։ Նկատելով յարակից յիշատակարանին անընթեռնլի վի-*

ճակը[1], դա գրութեան թուականը կարծուեցաւ, իբրեւ նոյն տարին գաղափարուած՝ Վարագայ «Ս. Նշանի» համար. և ուրիշ մը՝ ՅՃԱ՝ որ կայ այլուր, Մլքէի կողմանէ Վարագայ «Ս. Աստուածածնի» ընծայման տարեթիւը համարուեցաւ[2]։ Սակայն ես նոր քննութեան մը բովէն անցընելով մատեանը, տարբեր եզրակացութեան յանգեցայ։ — Անոր վերջին էջին վրայ՝ քառակուսի շրջանակի մը մէջ իրարու ներքեւ նշանակուած կան՝ ժամանակի բոլորագրով՝ հետեւեալք. «ՆԿԶ թերթ — ՅՃԱ թ. — Արաց ԻԸ, Բ — Արեգ Զ, Ե[3]»։ Ի՞նչ են ասոնք, եթէ ոչ գրչութեան հանգամանքները միասին ամփոփուած. այս ինքն՝ թերթից քանակը, տարեթիւը, և հաւանօրէն սկզբնաւորութեան և աւարտման ամիսներն, օրերն ու ժամերը. պարագայք՝ զորս ոչ ոք պիտի ուզէր կամ կարենար արձանագրել՝ բաց ի գրողէն։ Ապա ուրեմն ՅՃԱ իսկ է գրութեան բուն թուականը։

1. Յառաջ բերուած նաեւ նոյն աւետարանի նկարուց մեր նմանահան հրատարակութեան մէջ, տախ. 2։

2. Բազմվ. 1909, էջ 433։

3. Ամսոց կից տառերը պատիւ կը կրեն, ուստի թուանշան են։

Աւելին կայ։ Մլքէ երկու տեղ ինք զինքն աւետարանիս «ստացող» կը կոչէ. և գրչագրաց մէջ թարթափողներս գիտենք՝ թէ այդ բառը սովորաբար, մանաւանդ երբ առանց ուրիշ վերադրի գործածուած է, գրել տուող կը նշանակէ։ — Դեռ աւելին կայ։ Նոյն Մլքէն՝ անեղծ պահուած (և լոկ թուականը խարդախուած) յիշատակարանի մը մէջ կ'իմացնէ՝ թէ ամուսին է Գագկայ. և թէ սոյն մատեանը շնորհեր է «ի Վարագի սբ Ածածինս, զոր իմ ձեռամբս և ծախաւք. եմ շինեալ՝ յաւգնականութիւն ինձ և արքային իմոյ ԳԱԳԿԱՑ» են։ Արդ՝ եղծուածին մէջ ալ, որոյ աւարտը յաջողեցայ աւելի մանրամասնօրէն կարդալ, կան նոյն թագաւորը, ցարդ անընթեռնլի մնացած, և նոյն համգամանք. որով սա եւս Մլքէի համար է։ Ահաւասիկ այդ կտորը. «...[1] զոր չին[եաց վասն արե]շատու[թե Գ]ԱԳԿԱՑ եւ փրկութե հոգոյ իւրոյ եւ ծնողաց եւ [նոր]ա յանցանաց թողու-

1. Յայտնի է՝ թէ ագկից յառաջ պատմուած էր աւետարանին գրութիւնը, և ընծայումն առ Աստուածածին Վարագայ՝ «զոր շինեաց» նոյն Մլքէ են, ինչպէս նախորդին մէջ։ — Կտորիս համառօտագրութիւնք՝ ... թե, ոք և յայ՝ պատուով են, և փակագծեալքը գուշակութեամբ դրած եմ։

ք[ե]. իսկ որ հակառակ եղանէ եւ հանէ զգիրս ի Վարագայ, ինքն [հ]եռացի յԱյ եւ ի սբ նշանէս[1]. եւ որ պահէ յեկեղեցիս, թէ թա-[գ]աւոր [է՞] աւ[ր]հն[ե]ալ [ե]ղ[իցի] յԱյ»։

Արդ՝ ըստ որում այս յիշատակարանս ալ մի և նոյն տիկնոջ է, կարելի չէ՝ որ ասոր յաջորդող Ց տառը գրութեան կամ որ և է թուական լինի՝ իւր 51 տարւոյ հնութեամբ ՑԾԱ յայտնի տարեթուէն, ուր թագուհին զեկեղեցին կառուցեր, ու բնական կարգով անոր համար նոր և իսկապէս արքայավայել աւետարան մ'է գրել տուեր, զոր և արտաքուստ ալ ճոխաբար «զարդարեաց», ինչպէս կը կարդացուի եղծուած էջին մէջ։ Թող որ Ց իւր քով թուականութեան նշան մ'ալ չունի, և ոչ գէթ միւսին Թ. համառօտագիրը. և յիշատակարանին մարմինէն եւս անջատուած է, ինչ որ անսովոր է տարեթուոց համար։

Հետեւանքը։ Շատ պարզ է. այս տառն ըստ իս ուրիշ բան չէ, բայց մենագիր մը, ծագած նոյն ինքն «Ցիսուս» անուան նա-

1. Ոչ համանուն տաճարէն, որ դրացի և ընկեր էր Աստուածածնի՝ մի և նոյն մենաստանին մէջ, այլ անուանի խաչափայտէն ըսել կ'ուզէ։

խատառէն, և համազօր Յունաց հնաւանդ I մենագրին[1]: Կարեւորագոյնը կայ. Կաբրոլ յառաջ կը բերէ քանի մը դրամաձեւ պահպանակներ Դ–Ե դարերէն, որոց վրայ քանդակուած է փրկչական անուան յունարէն բարդ մենագիրը (Ա, 1790, 1823-31): Ահաւասիկ մեր առաջին կռուանը՝ համոզուելու համար, թէ մեր ծածօթ Յ ալ ապահովապէս դրուած է Մլքէի կողմանէ իբրեւ պահպանակ մ'աւետարանին, որպէս զի չկորսուի կամ չգողացուի: Այս կարծեաց կը նպաստեն նաեւ իւր դրացութիւնը մատենին պահպանութեան պատուերին, զոր կու տայ նուիրողը. մեկուսացումն լուսանցին կեդրոնը. անսովոր եռապատիկ մեծութիւնը բնագրին տառերէն, որոյ նման թուականի հանդիպած չեմ այլուր. և ասոցմէ աւելի՝ նոյն իմաստով գործածութիւնը յաջորդ օրինակին մէջ եւս, որ թէեւ աւելի ուշ՝ բայց սահմանուած է ամէն կասկած ցրուելու, և հաստատելու թէ Յ իբր պահպանակ կը մտնէր զանազան առթից մէջ:

բ. Տակաւին մեր երախտաւոր Կիպրիա-

1. Martigny, Dict. – Monogramme.

Նոսն է՝ որ երկար դարերու շրջանի միջէն, ուր աներկբայապէս ապրած է տառդ անընդհատ, — թէև առ այս մեր հին յիշատակարանք շատ ուշդ են տակաւին, — առած ու պահած ունի աղոր սովորութիւնը. բայց բազմապատկեալ ու խաչերով բաղադրուած, իբր Յիսուս խաչեալ կամ Յիսուս և Խաչը. ու կը դնէ «Ելի և գանի»[1] աղօթից վերջը, սա ձեւով.

յյյյ † յյյյ † յյյյ †

և կը յարէ. «զայս ժբ յիս գրէ շուրջ զգանաւն, և զ'ա ի վերայ ծարին գրէ, գ հետ կրկնէ»։ Ապա. կու տայ աղոր համառօտն ալ այսպէս.

յյյյ † յյյ †

և կ'ըսէ. «զայս է գիրս գրէ շուրջ զգանաւն, և զ'ռ ի վերայ ծարին»։ Ուրեմն պարզ է այժմ և Մլքէի մենագրին նշանակութիւնը. յին ինչպէս պահպանակ է հոս, նոյնպէս էր աւետարանին մէջ ալ, և հաւանօրէն քան զայն իսկ շատ յառաջ, ինչպէս ենթադրել կու տայ անոր յունարէն հոմանիշը։

1. Տեղական ցաւ կամ այտոյց կը թուին ըստ հետագայ բացատրութեանց։

*Դիտելի է՝ որ այս տեղ կը գրուի* 12 *և* 7 *անգամ, որոնք երկուքն ալ խորհրդաւոր թուեր էին, և գրողին կամաց թողուած ընտրել մին կամ միւսը. նոյնպէս էին* 1 *և* 1000։ *Դարձեալ՝ «շուրջ զգանաւն» գրել՝ կը նշանակէ ցուած տեղւոյն վրայ, նման ժգ գրին* (*ասա*, 434)*. և մի կամ հազար յ «ի վերայ ծարին՝» կը թուի այտուցին ծայրը կամ կեդրոնը. բաւական համբերութեան գործ, զոր միայն պառաւական երկայնմտութիւնը կարող էր յանձն առնուլ։*

*գ. Արեւմտեայց ու Կոպտաց մէջ հին ժամանակ ծանօթ էր ուրիշ պահպանակ մը, քառակուսի գրութեամբ՝ կազմուած հինգ հնգատառ բառերէ. և այնպէս յարմարած՝ որ անոր արտաքին չորս կողից վրայ մի և նոյն բառը կը կարդացուի ։ Նոյնն ընդունած են նաեւ Բիւզանդացիք, և օրինակ մը կը գտնուի Պարիսու մատենադարանին յոյն գրչագրի մը մէջ. բայց աս տարբերութեամբ՝ որ այս տեղ տառերն անջատաբար ամփոփուած են աղիւսակի մը մէջ* (*Կարբոլ*, Ա, 1811-6)։

*Վերջնոյս նման ձեւ մը պահած է դարձեալ Մլքէի աւետարանը, գծուած Ցով-*

*հաննու պատկերին ետեւ, նոյն իսկ գրչութեան թուականէն, ըստ որում իւր կից յիշուած կայ թագուհին։ Ահա այդ ձեւը.*

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| Է | Յ | Ա | Գ | Ա | Յ | Է |
| Յ | Ա | Գ | Ա | Գ | Ա | Յ |
| Ա | Գ | Ա | Ր | Ա | Գ | Ա |
| Գ | Ա | Ր | Ա | Ր | Ա | Գ |
| Ա | Ր | Ա | Վ | Ա | Ր | Ա |
| Գ | Ա | Ր | Ա | Ր | Ա | Գ |
| Ա | Գ | Ա | Ր | Ա | Գ | Ա |
| Յ | Ա | Գ | Ա | Գ | Ա | Յ |
| Է | Յ | Ա | Գ | Ա | Յ | Է |

Ա Ի Ե Տ Ա Ր Ա Ն Ս

ԱԾ ՈՂՈՐՄԻ ՍՏԱՑՈՂԻ

ՍՈՐԻՆ ՄԼՔԷ ԹԱԳՈՀՈՅՆ

*Կեդրոնի Վ գրէն մեկնելով, ուր ալ ուղղուինք՝ կը գտնենք «Վարագայ է»[1] խօսքը՝ յարելի ստորին «աւետարանս» բառին։*

1. *Բնագրին մէջ առաջին տողի առաջին* Է՝ *ընթերցաբար* Ե, *և չորրորդին վերջին* Գ՝ *սխալմամբ* Յ *գրուած է։*

կարելի է զայս ալ պահարան մը համարել, նկատելով՝ որ թագուհին արձակ յիշատակարաններ ունի արդէն, և անքնական էր պարզ տեղեկութիւն մ'այդքան խրթնացնել. թէ ուրիշ նման յիշատակարանք չկան այլուր. և թէ սա ժամանակակից՝ ուստի և նմանութիւն է պահպանակաց Բիւզանդացւոց՝ որոց սովորութեանց և զգեստուց անգամ նմանելու ձգտումը շատ զգալի էր Արծրունի արքունեաց մէջ։
— Նշանակեալն «Վարագ» անուանի ուխտավայր մ'էր՝ տասներկու եկեղեցեօք և ս. Խաչի նշխարովը, ուստի և յարմար՝ նիւթ լինելու պահպանակիս։ Չորս անկեանց «Ի» տառը բայ, բայց և աստուածական անունն է՝ քարոզուած չորս աւետարանիչներէ՝ աշխարհիս չորս ծագերը.
— Նախնեաց մտածմունք են ասոնք։ — Իւր մասն է և սրբազան անունս՝ «Աւետարանս» . և դեռ աւելի՝ յարակից մաղթանքը Մլքէի համար, յորում կարծես լռելեայն նաեւ պահպանակիս օգնութիւնը կը խնդրուի։

Այս օրինակս ալ միայն չէ. կայ և հետագայն, որ բոլորովին ապահով է, եթէ առաջինս ենթադրական համարուի։

դ. Թուականէդ 582 տարի վերջ կը հանդիպինք ուրիշի մը, զոր դարձեալ պահած է մեր թանկագին Կիպրիանոսը։ Եւ է՝ միատող աղիւսակ մը, եօթն կարմիր մենագրովք, որ կը կոչուի «մատանահար», այս ինքն մատանւոյ կամ կնքոյ ձեւ, և է այս.

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| խ | ս | ք | է | մ | փ | ր |

Ասոր ներքեւ նոյն ուղղութեամբ պառկած է կարմրագոյն դաստակ մը՝ որ դէպ ի յաջ կը նայի. և ստորեւ գրուած է. «Ջեռն Տն. է, և եւթն մատանահար նորին. և մեկնութիւն գրին որ ի մատանահարին գրեալ էր և այսով մատանահարեալ»։ Ուրիշ ախտարք մը՝ գրուած 1779ին՝ կը ձեւացնէ մատանահարն առանց դաստակին, և կը պարզէ ու կը լրացնէ մեր օրինակին այդ մթին տեղեկութիւնն՝ ըսելով. «Տէր Յս. Քս. գրեաց այս է գիրս և առաքեաց առ Աբգար թագաւորն. և ի տեսանել գրոյն խսկոյն փարատեցաւ ցաւն ամենայն ի յանձնէն». և իբր թէ նոյն թագաւորը զայն իւր մա-

տանուոյն վրայ «գրեալ է և այսով մատնահարեաց. և է դեղ ամենայնի»[1]: — Մեր Կիպրիանոսը մենագրոց մեկնութիւնն ալ կու տայ, որ սակայն քմածին կը թուի և քան զձեւը կրտսեր. «Խէն, այս ինքն խաչեալն Ած. ի խաչին հեղուսեաւ վասն արարածոց: — Սէն՝ սոսկ մարդ ոչ, այլ Ած. և մարդ ճշմարիտ: — Քէն՝ քերովբէից վերայդիտողն, որ հանգչի ի վերայ նորայ: — Լն՝ ես եմ Ած. և չիք այլ ոք: — Վեմն՝ վեհագոյն Ած. աստուծոց: — Փիւր՝ փրկիչ և կեցուցիչ ամենայն աշխարհի: — Բենն՝ բովանդակ և յաւէժարար կենդանի եմ յաւիտեան»: — Ասոր կը յարէ խրատս. «Ի վերայ խոցի և ուռուցի գրէ զայսքան բանս, լաւնայ Ավ.». դարձեալ ժգ գրին ոճով (աստ, 263): — Սակայն մեր 1779ի ախտարքն աւոր փոխան կը յանձնարարէ գրել լոկ մենագրերը, և այն՝ թղթի վրայ. «Զայս եօթն գիրն գրէ մէկ թղթի վրայ, հիւանդին և ցաւագարին վիզն կամ ցաւած տեղն կա-

1. Կոպտական պապիրոսներու վրայ Աբգարու բուն թուղթը գործածուած է իբր պահպանակ (Կարբոլ, Ա, 1808-10, '14). բայց հնախօսս չի ճանաչեր մեր մատանահարը:

*պէ »։ Իսկ* 1761*ի գրապանակ մը կը պատուիրէ մենագրերը գրել խոցին վրայ, և մեկնութիւնը կարդալ. «Այս է գիրս դեղ է խոմրոյ խոցի. գրէ վր. խոցին, պատմութիւն վր. կարդայ, բ(ժ)շկի Ավ. ա՛յլ բազում ցաւոց դեղ է Ավ.»։*

*ե. Արեւմտեայց պաշտպանակները միշտ շարժական չէին, և միայն մանր իրաց*




*վրայ չէին գրուեր. կարող օրինակներ կու տայ անոցմէ՝ որ քանդակուած էին տանց ու հասարակաց շինուածոց վրայ* (Ա, 1844

—5)։ *Ախորժակն ունելով կը բացուի․ կ՚ուզեմ ես այդ սովորութիւնը մեր մէջ ալ տեսնել։ Ըստմամբ մը մինչեւ Ե դարու սահմանները՝ կը պատահինք յունարէն արձանագրութեան մը, որ ցայսօր ագուցուած կը մնայ Էջմիածնի կաթողիկէին որմոյն վրայ։ Ազոր ձեւն յառաջ բերած է Հ. Ալիշան՝ Այրարատի մէջ* (213), *ուսկից և ես կ՚առնում այս տեղ։*

*Հմուտն Ստչիգովսկի վերստին հրատարակեց զայս ճշդագոյն ձեւով ու մեկնեց յաջողութեամբ*[1]։ *Ուղղեց նա բոլորակի մէջ առնուած խաչը, տալով անոր վերին թեւոյն մեր Ք տառին գլուխը, որ արդէն կայ և քանդակին մէջ. այսու կը ձեւանայ փրկչական մենագիրը՝ որ կազմուած է խաչաձեւ բաղադրութեամբ յունական* X *և* P *տառից*[2], *որ են* ΧΡιστὸς *անուան առաջին երկու գրերը։ Խաչաձեւին անկեանց մէջ գրուած կան հաւանօրէն «Յիսուս» և «Զուիթայ» անուանք։ Իսկ շըր-*

1. *Էջմիածնի Աւետարանը. Թրգ. Հ. Բ. Պիլէզիկճեան, էջ* 7։

2. *Կը փորձուիմ խորհիլ՝ թէ մեր Ք կրնայ ծագած լինել նոյն մենագրէն, որոյ ճիշդ ձեւը կը կրէ, մանաւանդ հին երկաթագրին մէջ, թերեւս ի յարգանս «Քրիստոսի՝» զոր պիտի գրէր իւր հայացման օրէն իսկ։*

ջանակին վրայ՝ «օգնեա ամենայն ադօթողաց յեկեղեցւոջ»։ Բոլորակին ներքեւ ձախակողմը՝ «տէր ողորմեա ծառայի քում Արքեայ», և աջակողմը՝ «և տէր ողորմեա Ելպիդեայ», որոնք ամուսինք կը թուին, խորհրդանշուած՝ ըստ իս՝ զոյգ մ'ադաւնիներէն։ Այս ընթերցուածը կը հանէ Ստչիգովսկի՝ լրացնելով յունարենին բառերը՝ որ պակասաւոր են։ Իսկ ստորին պնակտին վրայ կը կարդացուին՝ Դանիէլ, Տիրէր և Գարիկինիս անուանք, զորս մեկնիչը կը մերձեցնէ հայերէն (Դանիէլ), Տիրայր և Գարեգին ձայնից։ Զասոնք փոքր ի շատէ նոյնպէս կը կարդայ և Հ. Ալիշան։ Վերջինս յունարենի գործածութիւնը կը մեկնէ՝ նոյն քանդակն երիցագոյն համարելով քան զվահանեան վերաշինութիւն կաթողիկէին և քան զգիւտ գրոց. իսկ միւսը կ'ուզէ՝ որ յետ հայ տառից ալ յունարէնը դեռ երբեմն շարունակուած լինի մեր մէջ։ Բայց ինձ համար կարեւորն այս չէ. այլ այն՝ թէ աղօթավայրին վրայ այդ սրբազան նշանք, իրենց մէջ ու շուրջ գետեղուած ընտանեաց մ'անուանք, և համառօտ հայցուածք, բոլորն ալ անսովորք հին հասարակ արձանագրութեանց մէջ,

ուրիշ բան չեն ցուցներ մեզ, եթէ ոչ՝ դարձեալ պահպանակ մը, զոր բարեպաշտութիւնն անշուշտ միացած առատաձեռնութերի մը հետ՝ զետեղած է այդ տեղ։

գ. Վաղարշապատի մօտ գտուեցան չորս հին խոյակներ, որոնք այժմ կը պահուին յէջմիածին։ Ասոնց վրայ կայ մի մի մենագիր յունարէն. մէկը մի անգամ և միւսն երեք կրկնուած։ Ստչիգովսկի զասոնք ալ կը մեկնէ (անդ, 9)։ Առաջինն է խաչ մը համաչափ միագիծ թեւերով. և իւրաքանչիւր թեւոյ ծայրը գրուած են այս տառեր N, A, C և OY միացեալ. իսկ ստորին և աջակողմեան թեւոց անկեան մէջ կայ աղեղնաձեւ կապ մը՝ որ ստորին թեւին հետ կը ձեւացնէ P գիրը, զոր դնելով միւս չորս տառից միջեւ, կ'ունենանք NAPCOY = Ներսեսի անունը[1]։ — Միւս մենագիրն է խաչ մը նոյն ձեւով. թեւոց ծայրերն ունի K, A, Λ և OY գրերը. և չորս թեւոց անկիւնները շօշափող բոլորակ մը՝ որ կը կազմէ Θ. ասոցմէ եւս կը

1. Այդ ոճով մենագրեր շատ կային Բիւզանդացւոց մէջ, որոց դրամոց վրայ իսկ կը տեսնենք յաճախ (Schlumberger, Un empr. byz. 89, 333, 561. — L'Epopée byz. 318, 493, 764).

ձեւանայ KAΘOΛIKOY = կաթողիկոսի բառը համառօտուած։ Ո՞վ կրնայ լինել այս Ներսէսը, եթէ ոչ համանուն երեք առաջին հայրապետներէն մին, — Սոչիգովոկի կը համարի երրորդը, — որ շինել է գաղոնք և իրենց վերուցած տաճարը։ Իսկ ի՞նչ նպատակ ունեցած է իւր անունը զանգելու խաչին հետ, և զայն քանդակելու սրբավայրի մը սեանց գլուխ, եթէ ոչ՝ իրեն համար պահպանակներ յօրինել, ինչպէս ըրած էին նախորդին անձինքը։

է. Պահարանի վրայ՝ գրուածն անհրաժեշտ չէր. երբեմն անոր տեղ կը բռնէին լոկ խորհրդաւոր ձեւեր կամ պատկերներ, և կամ անոր հետ խառն կը գործածուէին։ Ասոցմէ շատ ունի Կաբրոլ (Ա, 1818–21, '25–33)։ Մեզ եւս չեն պակասիր աղոնք։ Զոր օրինակ Անւոյ միջնաբերդին որմոյն վրայ քանդակուած կան երկու ձիաւորք իրարու հանդէպ, որ մի մի վիշապ կը տիգահարեն (Շիրակ, 57). և որոնք բնականապէս զօրական սուրբերն են՝ Գէւորգ և Թէոդորոս կամ Սարգիս։ Ի՞նչ պատճառաւ դրուած են հող աղոնք, բայց եթէ պահապան լինելու երեւելի և աներեւոյթ թշնամեաց յարձակմանց դէմ. զի սրբոց

և տէրունի պատկերներ սոյն վախճանաւ գործածուած տեսանք արդէն Գրապանակաց մէջ ևս։ — Այդ պաշտօնն ամենէն աւելի յանձնուած էր խաչին. և ասոր կը հանդիպինք մեր հին աշխարհի բոլոր անկեանց մէջ։ Բագրատունեաց ոստանին հզօր պարսպաց վրայ կանգնած է այն իբրև ամուր պատսպարան նիզակաց ու բաբանաց դէմ (Շիր. 38–9)։ Կը տարածէ իւր թևերը եկեղեցեաց որմոց վրայ, սկսեալ Տեկորոյ տաճարէն՝ որ գործ է Ե դարու (անդ, 131–3)։ Կը զարդարէ Անւոյ արքունեաց պատը՝ երկգլխի արծուենշանին հետ միասին (անդ, 142)։ Կը կանգնի մահարձանի ձևով գերեզմանաց վրայ՝ պահելու համար հանգուցելոց ոսկերոտին, որոյ մասին ուրիշ անգամ։ Այս նպատակաւ ննջեցելոյն հետ կը թաղուէին երբեմն նաև սրբոց մասունք, ինչպէս կը պատմուի Մեծին Ներսեսի համար (Սոփերք, է, 52). պատարագի նշխար մը, ինչպէս հրամայեց Մխիթար Գոշ իրեն համար (Կիրակ. 242), և այլն։

ը. Ոսկեբերանի առ Անտիոքացիս խօսած «Յաղագս մկրտելոց» ճառին մէջ կայ այս տեղին. «Ի՞նչ ըսել անոնց մասին՝ որ

կը վարին հմայիւք ու բժժանօք, և Աղեքսանդր մակեդոնացւոյ դրամները կը կապեն իրենց գլխին և ոտից»։ Հետաքրքիր քննութիւն մը ցոյց տուաւ ինծի՝ որ սոյն կտորս հայ թարգմանիչը կը վերածէ ծննդական կնոջ պարագային, որոյ մէկ գիրը տեսանք յառաջագոյն (աստ, 256). կամ թէ ըսեմ՝ կը հայացնէ, կը մերձեցնէ հայ ընթերցողաց բարուց, — բան մը՝ որ յաճախ կը տեսնուի Ե դարու թարգմանութեանց մէջ, — և կ՚ըսէ. «Կանայք յերկունս մերձեալ՝ զդահեկան զԱղեքսանդրի զմակեդոնացւոյ կամ զդրամ ի գլուխ և յոտս կապեն» (Ճառք, 169–70)։ Այս փոփոխութենէն յառաջ կու գան երկու կարեւոր հետեւութիւնք։ Առաջին՝ թէ ծննդականի պահպանակ գործածելը մեր մէջ մինչև Ե դար կ՚ելնէ։ Երկրորդ՝ թէ մեզ ըստ բազում գլխոց մերձաւոր Ասորւոց այդ աղեքսանդրեան յուռութը, որ շատ տարածուած էր յԱրեւմուտս ալ, մտած էր և մեր մէջ. վասն զի եթէ այդպէս չլինէր, թարգմանիչն ամբողջ խօսքը պիտի հայացնէր, և ոչ թէ լոկ անոր կէսը, յօրինելով բարուց անկապ խառնուրդ մը։

Այդ դրամներէն շատեր գտուած են ու

կը պահուին Պարիսու թանգարանին հաւաքման մէջ. և մեծագոյն մասամբ մէկ երեսին վրայ կը կրեն Աղեքսանդրի գլուխը հերակլաձեւ, իւր անուամբ միասին. միւսին վրայ մատակ էշ մը յաւանակով[1], և ներքեւը կարիճ մը և փրկչական անունը (Կաբրոլ, Ա, 1790)։ Բառարանս կու տայ ձեւն ուրիշ երկու դրամոց ալ. մին պահուած ի Վատիկան, մէկ կողմն Աղեքսանդրի գլուխը, ծածկուած առիւծենւով մը, վզէն կախած դիմակ մը, բերանին մօտ արեգակ մը[2], և շուրջանակի իւր անունը լատիներէն. իսկ միւս կողմը քրիստոսեան մենագիրը՝ բաղադրուած X և P տառերէն։ Երկրորդն է Բրիտանական թանգարանին, ձուաձեւ, և ցոյց կու տայ մէկ կողմը միայն՝ Աղեքսանդրի կիսադիմով, որ կը կրէ Ամոնի եղջիւրը[3], և շուրջը յունարէն հինգ բառեր (անդ, 1790–1)։

1. Այդ գրաստերը տեսեր էր Աղեքսանդր աստուածաբնակ կղզւոյ մը մէջ (պտմ. Աղեք. 128։)

2. Աշխարհակալին հայրն որդւոյն նկատմամբ ունեցած տեսլեան մէջ տեսաւ կնիք մը, որոյ «դրոշմն արեգական և գլուխն առիւծոյ» էր (անդ, 10)։

3. Ամոն՝ լիբէացւոց խոյեղջիւր աստուածն էր, Աղեքսանդրի հայր կարծուած (անդ, 6)։

⁂

## Թ. ԲԺԺԱՆՔ

1. — *Մեր նախնեաց պահարանք լոկ գրի մէջ չէին կայանար. ցարդ յիշուածներէն զատ կը յարգէին անոնք ուրիշ զանազան նիւթեր եւս, որոց աղբիւրը նոյնպէս շատ հին է, նոյն ինքն հեթանոսութիւնը։ Բոլոր Արեւելք կը գործածէր ասոցմէ* (*Գոշլ.* Ա, 271)։ *Յոյնք և Հռովմայեցիք կը վարէին քանդակեալ քարերով, մետաղներով ու բոյսերով* (*Դարեմբ.* Ա, 252–4), *որոցմէ ս. Կիւրեղ դեռ կը տեսնէր իւր օրով* (*Կոչ. ընծ.* Դ, 721)։ *Յուդա Մակաբէի զօրաց քով անգամ գտուեցան անոցմէ՝ հեթանոս ազգերէն առնուած* (*Բ Մակ.* ԺԲ, 40)։ — *Քրիստոնեայ Արեւմուտքը չուզեց մերժել զանոնք, որով իւր դէմ սրեց Աթանասի, Ոսկեբերանի, Եւլիգիոսի և ուրիշ ս. Հարց լեզուները* (*Կաբրոլ,* Ա, 1788–90)։ *Բիւզանդացւոց ծանօթ* Γεωπόνικα *մատեանը*[1], *որ ինչ ինչ փոփոխութեամբ՝ արաբերենի և անտի եւս*

1. Աստ. 262, ծան.

*հայերէնի թարգմանուած է, նոյն ինքն մեր Վաստակոց Գիրքը, ունի դեռ բաւական բժժանքներ խոտերէ, պէսպէս խառնափնդոր նիւթերէ, ծրարներէ և ծխումներէ, ի պահպանութիւն տանց, արտորէից, խաշանց ու մեղուաց* (*հյ.* ՄԴԳ, *յն. էջ* 1094)*. յօժանդակութիւն դժուարածին կամ վիժող կնոջ* (ՃԱ, 416)*. արբեցութեան դէմ* (ՃԴՁ, 520)*. կարկտի ամպերը ցրուելու* (ԴԽ, 60)*. գազանները հալածելու* (ԻԷ, 195), *և այլն։*

*Վաստակոց գիրքը միայն թարգմանուած չէ, այլ և գործածուած մեզմէ։ Արդէն անոր բժժանաց նմանողներ շատ կանուխ՝ Ե դարէն իսկ կը յիշուին մեր քով, որոց կարգին կը թուէ Մանդակունին «զոսկերս ձկանց և սողնոց, զծրարս բժժանաց ի ձեռին և ի յակին և ի պարանոցի կապել»* (185)։ *Բայց յայտնապէս չի ըսեր՝ թէ եկեղեցականք եւս այդ նիւթերով կը զբաղէի՞ն։ Յաճախապատում գրոց մէջ ալ կը կարդանք. «Ասեն բժիշկք՝ թէ գոն արմատք որ հալածեն զդեւս ի մարդկանէ»* (ԺԳ, 148)*. եթէ ադոնք դեղեր չեն յօգուտ կարծեցեալ դիւահարութեանց, այն ժամանակ յուռթական իմաստով կը գործածուէին, ինչպէս կը գտնենք ԺԲ դարու՝*

ըստ Ալաւկայ որդւոյն. «Ի թացուստ, կ'ըսէ նա, արմատս բուսոյ հատանեն և լիցս (ծրար) կապեն ի ծառս տանձոյ և յայլ թուփ՝ որ լինի շուրջ զսեննեկաւն, և ասեն՝ թէ դեղ է ջերմնոտի» (Կանոնք, ԳՁ)։ Ասոցմով զբաղողք դեռ ռամիկ ժողովուրդը կը թուի, հետեւաբար նուազ հետաքրքրական ինձ, որ խնդիրը կ'ուզեմ պաշտօնական սահմանի մէջ նկատել միշտ։

2. — Սակայն դժուարին էր հայ կղերին՝ — ժողովրդեան այդ զաւակաց՝ — փակուած մնալ գրի գծերուն մէջ, ու չտարուիլ հոսանքէն։ Եւ արդարեւ — իբր օրինակ յիշենք — մեր գրչագրատան մէջ կայ բժշկարան մը, գրուած 1294ին, Կոռիկոսի Հեթում իշխանին համար, որ ունի տարօրինակ պաշտօն մը՝ «փէնունայ» կոչուած խոտէն յուռութ պատրաստելու համար։ Այս բոյսը, ինչպէս կ'ըսուի հոն, հրեշտակ մը ցուցեր էր Մովսիսի՝ երբ «երթայր ընդ Սինա». և մարգարէն անով բժշկեր է իւր դիւահար զոքանչը։ Ուրեմն ինչո՞ւ չբուժէր Հայոց այսահարներն ալ։ Հետեւաբար անոնք եւս ընդունեցան, և ահա իւր եզական պատրաստութիւնը։

«Երթա(յ) քահանայն խաչիւ և աւե-

տարանաւ և սաղմոսիւ» հոն՝ ուր կը գըտնուէր այն, և «ողջոյն տայ խոտին», — կ'ենթադրուի՝ ըսելով, Ողջոյն քեզ, — իբրեւ աւելի քան ի բնէ սրբազան իրի կամ նշխարի մը, իբր կենդանի էակի մը. ու կը սկսի պաշտել Ծ սաղմոսը, և ապա այս աղօթքը. «Աւրհնեալ ես, տէր Աստուած, որ արարեր զերկինս և զերկիր, և վասն արդարոյն Մովսէսի շնորհեցեր զսա ի բժըշկութիւն։ Կարդամք առ քեզ, տէր Սաբաւովթ, տուր զօրութիւն փէնուճախս, զի ի քէն է զօրութիւն և փառք յաւ ...»։ Պաշտօնն այսքան դիւրաւ չի վերջանար. երեք անգամ կը կրկնէ նոյն սաղմոսն՝ ուրիշ երկու աղօթիւք և ընթերցուածօք եւս։ «Եւ ապա, կ'ըսէ, փորէ՛ և հան՝ որ ի տակէն չմնայ ի տեղն». իբրև անպատե՞հ անոր նուիրականութեան, թէ ուրիշ սնապաշտական գաղափարով մը, յայտնի չէ։ Եւ կը պատուիրէ՝ թէ «սրբութեամբ կալ զնա». խրատ մը՝ որ այդ բոյսը խաչի կամ սրբոց նշխարաց աստիճանին վրայ կը դնէ։

Բազմաթիւ են անոր օգուտները. «դեւք սարսեն ի նմանէ և ամենայն ախտք դիւականք». դեղթափ է մահացու թոյնի.

անդաստանաց մէջ դրուելով՝ կը պահէ կարկտէ և ուրիշ վնասներէ. և տան մէջ կը պահպանէ չարէ. բնակարանի մէջ երբ ծխուի՝ «կախարդութիւնն ի վայր ընգնի». բարձի տակ զետեղուելով՝ անոյշ երազներ տեսնել կու տայ. անոր պտուղն իր վրայ կրողը զերծ կը մնայ գազաններէ. և այլ շատ յատկութիւններ՝ զորս չի յօգնիր թուել մեր բժշկարանը, — առանց խորհելու թէ այդ ամենաբուժ խոտով կը փակէր ընթերցողաց առջեւ իր արուեստին ասպարէզը։ — Եւ «քահանայն» որ կը հանէր զայն, և նոյն մատեանը ստացող պատմագիր փառաւոր իշխանը, և անոնց հետեւող բազմամբոխ ժողովուրդը՝ կը հաւատային այդ բոլորին՝ ինչպէս իրենց գոյութեան։ Աղոցմէ յառաջ կը հաւատար իմաստունն Մ՛խ. Գոշ եւս, որ կը հաստատէ՝ թէ «փեննա ... ընդդիմանայ դիւաց» (Առակք, ԻԹ)։ Եւ ինչո՞ւ Յաճախապատմի ակնարկած դիւահալած արմատներէն մին ալ չլինի այս։

Աւելի վերջերը կը յիշուին յանուանէ և ուրիշ զարմանալի բոյսեր, յատկապէս լօշտակը, որոցմով զբաղիլ շատ երկար կը լինէր, և զորս Հ. Ալիշան փոքր ի շատէ

նկարագրած է արդէն (Հին Հաւատք, Գ, 72–9)․ և լօշտակի պատրաստութեան աղօթքն ամբողջապէս յառաջ բերած է Սրուանձտեան (Մանանայ, 327)։ Առաքել դաւրիժեցին շատ բաներ կ՚աւանդէ նաև քարանց պահպանողական և բուժական յատկութեանց մասին (գլ. ԾԳ)․ սակայն եթէ աղոնց հնութեան չափն անորոշ, պատմիչը չափազանց նոր է մեզ համար, ԺԷ դարուն, ուստի և նուազ կարևոր։

Բայց մեք մեր նախնեա՛ց թողունք այդ ամէն սնոտի պահպանակները, անոցմէ յուսացուած երեւակայական օգուտներով հանդերձ, — նսե՛մ դարերու նսե՛մ պտուղներ․ — և կնքենք մեր ուսումնասիրութիւնը։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

*Քանի մը կարեւոր տեղեկութիւնք կամ օրինակներ, որոնք իրենց յարմար տեղւոյն մէջ վրիպած էին ուշադրութենէս, կը զետեղեմ այս տեղ՝ աշխատութիւնս ըստ կարի անթերի ընելու համար։*

1. — *Երդման սովորութեան բացարձակ հակառակորդներէն մին է մեզմէ Դաւիթ Վ. Ալաւկայ որդին ԺԲ դարուն։ «Երդումն իրաւ և անիրաւ՝ ոչ ունիմք հրաման ի Տեառնէ», կ'ըսէ նա անխտրաբար և կը մերժէ զայն ի սպառ. կ'ուզէ՝ որ երդմնողաց վրայ «զուրացողացն դիցեն կարգ»։ Իրեն համար՝ երդման «սուտն և իրաւն՝ առաւելութիւն և պակասութիւն միայն տեսանի ի կարգ ապաշխարութեան», և ոչ թէ օրինաւորութեան խտիր* (*Կանոնք*, ՁԳ)։ — *Նոյն գաղափարէն է և Յովհ. Եզնկացի, որ իւր Խրատին մէջ կը պատուիրէ՝ «ոչ երդնուլ բնաւ, ոչ սուտ և ոչ իրաւ»* (*գլ.* Ը)։

2. — *Երդմնահարութեան յոռի վարժութիւնն ալ կը նկարագրէ Դաւիթ Վ. ըսելով. «Ոմանք սովորեալ՝ ի խաղս և ի կատակս, յարբեցութիւն և ի հակառակութիւն և ի խռովելն՝ զահաւոր և ըզպատկառելի անունն Աստուծոյ յիշեն և միշտ ի բերան ունին». զայսպիսիս կը պատուիրէ զրկել յետին թոշակէն՝ եթէ կանխաւ չապաշխարեն (կան. ՁԳ)։ — Կային ալ՝ որ «երդնուն ի շնութեան». այս ինքն երդման կ'ապաւինէին՝ խաբելու համար այրի մը կամ կոյս մը։ Իբր դարման այս չարեաց՝ կը պատուիրէ նոյն վարդապետը՝ որ «զխաբեալն կին արասցէ» (կան. ԾԳ)։ Այս սովորութեան կը թուի ակնարկել վանացս 1216ի մաշտոցին ունեցած մեղաց ցուցակն ալ սա խօսքով. «Եթէ ի շնալն երդուաւ՝ ուրացող է»։ — Յհ. Եզնկացին ցոյց կու տայ երդմնահարութեան շարունակութիւնն՝ ըսելով. «Մեծ պղծագործութիւն է՝ ամենայն ուրեք ի գռեհս և ի փողոցս, և ի վերայ անտեղի և անգէտ իրաց զսուրբ անունն (Աստուծոյ) հայհոյել կամ ուրանալ կամ վկայ կոչել» (Մեկ. Մտթ. Ե. 34)։ Եւ Զաք. Ծործորեցին՝ թէ ո-*

մանք « վասն մի ղանգի և ընդունայն բանից բազում անգամ երդնուն ի կամաց, առանց արտաքին պատճառի. և թէ վասն Քրիստոսի երդմնեցուցանէ այլ ոք, նոքա ոչ երդնուն » (Թղթ.), նման Մխ. Գոշի ըստածին (աստ, 10)։

Դաւիթ Վ. կը նկարագրէ նաև « ուրացութեամբ » երդման սովորոյթը, որ բաւական տարբերութիւն ունի Մխ. Գոշի աւանդածէն (աստ, 11). « Առ ոտն կոխել զխաչ կամ զնշան, կամ ծիր առնել Քրիստոսի և Մահմետի, կամ շուն ի գիրկ առնուլ և յեկեղեցի մտանել, կամ ջուր և ձէթ ի բերանոյ ի բաց փչել, կամ ի վերայ եկեղեցոյ լուսոյ ջուր փչել և անցուցանել, կամ զձէտ շան բերանով ըմբռնել, կամ թէ յանբան կենդանեաց ստէպ ասել թէ զնա պաշտեմ », զատոնք « մի՛ ոք առցէ յանձն՝ մի՛ ի քահանայից և մի՛ յաշխարհականաց » (կան. խջ)։ Նոյն տեղ կ'ըսուի նաև՝ թէ այս ձևը բնիկ չէր մեզ. « եթէ խնդրէ » ոչ հայ, այլ « առ մեզ » ապաւինած գերւոյ մը տէրը, որ կ'իմացուի այլազգի, նման Մ. Գոշի ըսածին. թէև սա կը յաւելու՝ թէ Հայերն իսկ յոռի վարժութեամբ նոյնը կը պահանջէին

երբեմն իրարմէ, և զորս կը հրամայէ դատաւորին հալածել առհնէն մինչև զղջան (Դատ. 52)։ Սակայն աղոր Հայոց մէջ տարածուիլն ու տևելը կ'ակնարկէ Եզնկա-ցին՝ քիչ վեր ըսած «ուրանալ» բառով։

Ոսկեբերանի առ Անտիոքացիս խօսած Անդրիական ճառից մտադիր ընթերցումը ցոյց տուաւ ինծ՝ որ մեծ նմանութիւն մը կար Ասորւոց ու մեր երդմնական բա-րուց մէջ. նմանութիւն մը՝ որ դիւրաւ կը մեկնուի երկու ցեղերու դրակցական ու եկեղեցական սերտ կապակցութեամբ, սկսեալ Լուսաւորչի օրերէն իսկ։ Արդ՝ յիշեալ բեմասացը մէն մի ճառին մէջ պայքար մ'ունի երդման դէմ, որով կը համոզէ զմեզ՝ թէ ո՛րքան ընդարձակ էր երդմնահարութեան ախտն Անտիոքացւոց մէջ, ճիշդ ինչպէս ի Հայս։ Կը բաւէ յա-ռաջ բերել հետևեալ տեղին. «Քանզի որ սովորական է ստէպ երդնուլ, և կամաւ և ակամայ, գիտութեամբ և անգիտու-թեամբ, ի շտապ խռովութեան և ի հան-դարտութեան, ևս և ի սրտմտութենէ, բա-զում անգամ և յայլ պատճառաց երդնու... ոչ եթէ ի տունս միայն, այլ և ի փո-ղոցս լինի սաստիկ, ևս առաւել ի վիճ-

մունս և ի մարտս. մանաւանդ յորժամ մրցին ընդ միմեանս, հակառակ երդնուն. ոմն երդնու հարկանել, և ոմն՝ եթէ ոչ հարցես... և ի վաճառս և յարուեստանոցս և յուսմունս լինիցի այս... զայն առնէ և մայր առ մանկունս և յաղախնայս և ի ծառայս» են, շատ մանրամասնօրէն (ԺԴ, 831 – 2)։

3. – Օրինական երդման հարկը կը մեղմէ վերոյիշեալ Յովհաննէս Եզնկացւոյն ընդդիմութիւնը սա պարագայից մէջ. « Յորժամ հարկ լինի քրիստոնէից և երդումն հասանի յեկեղեցի, և ուղղորդ է բանն, և հոգոյ շահ կայ ի ներս և արեան փրկութիւն, յայնժամ թոյլ տան որ երդնու »։ Բայց այս երդումն ալ հակառակ է աւետարանական բացարձակ արգելին. անոր համար, կը յարէ, « այլ և ոչ այս առանց ապաշխարութեան լինիցի » (Խըրատ, Ը)։ — Տաթևացին ալ թոյլ տալով հաւատոյ և կամ կեանք մ'ազատելու համար միայն երդնուլ, « դեռ յետոյ, կ'ըսէ, ապաշխարութեամբ քաւէ զնա » (Քրզ. ձմր. 16)։ Այս վկայութիւնք կը հաստատեն Մ. Գոշի աւանդած ապաշխարանաց գործածական լինելը (աստ, 13)։

4. – *Երդման առթից մէջ կարելի է յաւելուլ հետևեալները կրօնից համար։ Յիննովկենտ Գ. պապը թագ ղրկելով մեր մեծին Լևոնի, պատգամաւորին բերանով կը պահանջէր Հայերէն ինչ ինչ արարողական փոփոխութիւններ. որուն երբ հաւանեցաւ թագաւորը, «Նորա երդումն պահանջեալ ի նոցանէ երկոտասան եպիսկոպոսաց, և հաւանեցոյց Լևոն զեպիսկոպոսն յանձն առնուլ զերդումն. և արարին եպիսկոպոսք զքանս երդմանն, յորոց մի էր եպիսկոպոսն Տարսոնի Ներսէս Լամբրոնացի»* (*Կիր.* Ա, 76)։ – *Կղեմէս Զ պապին երկու նուիրակներն առ Կոստանդին Բ թագաւոր՝ հաւաքեցին աւագանին, յորդորեցին « և երդմնեցուցին մի ըստ միոջէ՝ » ընդունել հռովմէական եկեղեցւոյ դաւանութիւնն ու հպատակութիւնը* (*Դարդէլ*, Լէ)։ *Այս օրինակներէն կ'երևի՝ թէ լատին եկեղեցականութիւնը ո՛րքան դիւրամէտ էր երդման՝ հակառակ մեր Հայոց խղճահարութեան։* — *ԺԳ դարուն՝ Հաղբատայ եպիսկոպոսը կը կշտամբէ զԴաւիթ մոլորեցուցիչը, «երդումն պահանջեալ՝ զի մի՛ այլ մոլորեցուացէ զմարդիկ»* (*Կիր.* ԽԶ, 185)։ — *Լևոն Ե՝ պաշարուած Ա-*

րաբներէն Սսոյ մէջ, բոլոր քաղաքացի-ներն հաւաքեց իւր շուրջ, խրատեց, «զօ-րացոյց զնոսա ի հաւատսն. և աղաչեաց զամենեսեան առ հասարակ՝ զի երդնու-ցուն նմա լինել բարի և հաւատարիմ, և յանձն առնուցուն կեալ և մեռանել ի միա-սին իբրև բարի և ճշմարիտ քրիստոնեայք». և այս իմաստով երդուաւ նախ ինքն ար-քայն, յետոյ կաթողիկոսը, եպիսկոպո-սունք, իշխանք և բոլոր քաղաքացիք (Դարդէլ, ԴԲ)։

Հրատարակութեան երդմանց կարգէն է Ար-շակայ դէպքը։ Սա մեծին Ներսեսի աք-սորանաց պահուն կառուցեր էր ամբարիշտ Արշակաւանը։ Դարձաւ սոսկալի հայրա-պետը, անիծեց և չարակեղ մահուամբ անմարդացուց քաղաքը։ Սարսափեցաւ Ար-շակ իւր կենաց համար. և այն գոռոզը մանկան մը պէս «ի գունս հարեալ» մեծ եկեղեցականին առջև, թախանձանօք հաշ-տեցուց իւր հետ. «և եդ ուխտ՝ զի այլ ոչ երբէք անցցէ զբանիւք նորա» (Փաւս. Դ, ժգ)։

Արքայական օծման առթիւ. մեծին Լե-ւոնի յաջորդեց դուստրը Զապէլ, զոր ա-մուսնացուցին Անտիոքայ իշխանորդւոյն

Փիլիպի հետ, իբրև Թագաւոր Հայոց՝ ըստ Կիրակոսի (Է), կամ իշխան ամուսին՝ ըստ Վարդանայ (ԶԴ)։ Վերջինս կը մեջադրէ զայն իբրև «երդմնազանց եղեալ ի յեդեալ ուխտէն հայադաւան և հայասեր լինել». ուսկից կը հետևի՝ թէ ամուսնութեան ժամանակ պահանջուած էր իրմէ այդ երդումը, որ մէկ տեսակն է Նորապըսակ արքայից կատարածին։

Վստահութեան երդում մը կը կազմէր Գեղարքունւոյ իշխանին Աշոտ Երկաթէ առածը (աստ, 66)։ Այս կարգէն է Ե Լևոնի ընդունածն ալ ուրացեալ հայ նախարարներէն, զորս ի խորհուրդ կոչեց իրեն յԵւրոպա դառնալուն համար՝ զոր կ'առաջարկէր Մելէք ամիրայն. և նա նախ «երդմնեցուցեալ զնոսա» գաղտնապահ և անկեղծ լինել, ապա խօսեցաւ (Դարդէլ, ԾԷ)։

Խոստման երդում մ'ալ կ'աւանդէ Յհ. Երզնկացին, ըսելով՝ թէ «մեք յորժամ խոստանամք ինչ ումեք, զխոստումն երդմամբ կնքեմք» (Մեկ. Մատթ. Ե, 34). ինչ որ շատ յաճախեալ կը թուի իր ժամանակ։

Դաւադրութեան երդումն ալ ծանօթ է

մեր պատմութեան մէջ. Գրիգոր երիցու կողմանէ յիշատակը կը լինի « երդման ուխտին՝ զոր ունէին առ իրեարս » Քեսունոյ բնակիչները, Պեհեսնոյ բերդին արաբ բռնաւորին դէմ դաւ գործելու համար (Ուռհ. ՄԿԸ)։

5. — Երդմնողք, ըսինք, իրենց կրօնից համեմատ կ'երդնուին. ըստ այսմ Լեւոն Ե զԴաւուղ բէգ երդմնեցուց « ըստ օրինի կեշտին նորա՝ պահել զդաշինսն հաւատարմութեամբ » (Դարդէլ, ՁԵ)։ Հալպայ Մելէքը ամիրայն ալ երդուաւ անոր « յօրէնս իւր » (անդ, ՂԴ). և նոյնն ուրիշ անգամ կ'ըսէր՝ « երդուեալ քեզ յօրէնս իմ » (անդ, ՃԳ)։ Նոյն իսկ վերոյիշեալ ուրացողաց երդումն առաւ Լեւոն « ըստ օրինաց նոցա » (անդ, ՃԷ). բան մը զոր ըստ ինքեան քրիստոնէական նախանձաւորութեամբ պիտի յանձն չառնուր ընել՝ եթէ կենաց խնդիր չլինէր։

Քահանայից երդման դէմ խիստ արգելքն ընդհանուր էր. Ալաւկայ որդին վերև յիշեալ կանոնին մէջ կ'ըսէ. եթէ փախստական գերւոյն տէրը պահանջէ զայն, և չգոհանալով իրեն տրուած փրկանօք՝ երդումն ուզէ քահանայէն, — իբր

*թէ գերին չե՞ն պահած՝ թէ այլ իմաստով, յայտնի չէ, — «մի՛ երդնուցու քահանայն, այլ ժողովրդականքն, զի փըրկեսցեն զառաջնորդ իւրեանց». բայց եթէ նա չհաւանի, և ստիպէ զքահանայն, «թող երդնու և փրկէ զգերին, և յետ այնորիկ մի՛ պաշտեսցէ զքահանայութիւն» (կան. ԽՁ)։ Չափազանց խիստ — թէև անշուշտ ընաւ գործադրելի չեղած — համոզում երդման չարութեան, զոր յառաջ եկած կը կարծեմ յանուն ս. Աթանասի մեր ունեցած կանոնաց յաջորդ երեք յօդուածներէն։ Անոնց մին՝ ԽՋ՝ կ՚ըսէ. եթէ քահանայն դատի կոչուի «վասն բազում կարասւոյ», և իրեն վիճակի երդնուլ, և աղքատութենէն չկարենայ «զգինս երդմանն[1]» տալ, «և ոչ ընտանեաց ումեք երիցուն առնուցուն յանձն երդումն տալ ընդ նորա[2], իբրև բռնադատիցի և երդնու արդար, պա՞րտ է անխիղճ կալ նմին ի քահանայութեան՝ թէ ոչ։ — Պխ. ոչ է պարտ*

1. «Գին երդման» կը կոչէ և Մխ. Գոշ (Դատ. 53) ամբաստանելոյն երդումը խափանելու համար պահանջուած փրկանքը (աստ, 34)։

2. Այդ կանոնը հիմն եղած է Մ. Գոշի առաջարկած երդմնողաց փոխանակութեան (աստ, 30)։

երդնուլ. և թէ երդնու՝ զքահանայութիւնն ոչ է պարտ առնել»։ — Խէ յօդուածը կը սահմանէ. եթէ քահանայն միջնորդ ու վկայ է երկու եղբարց մէջ՝ ժառանգութեան կարևոր խնդրոյ մը համար, և դատախազն իւրմէ երդում պահանջէ, չպարտի տալ, նոյն իսկ եթէ այդու արդար կողմը բոլորովին կորուսանէ իւր իրաւունքը։ — Անոր Ղ. յօդուածն ալ կայ՝ որ կը թոյլատրէ երդումը՝ լոկ մեղաց խափանման համար. «քահանայ, կ'ըսէ, անդ երդուիցի՝ ուր կարճումն է մեղաց, և կարի չարիք են. և վստահ է յարդարութիւն, և զայն արդար երդնու»։

Գր. Տաթևացին կը միաբանի Մ. Գոշի հետ՝ զլանալու քրէական յանցաւորաց երդումն յատենի. զոր օրինակ կ'ըսէ՝ թէ գողին «ոչ է տալի երդումն. և թէ տան երդումն գողին՝ երկոքինն յանցաւորք են և պատժին յԱստուծոյ, որք զերդումն տան և որք զերդումն ուտեն[1]». այլ «այն

1. Ազոր իմաստը տեսանք յառաջ (յէջ 14), բայց այս տեղ կը նշանակէ պարզապէս երդուլ, ուր կ'ըսուի նաև նոյն մտօք. «Ասեն թէ երդումն կեր. այս ինքն կրեա ի քեզ (իբր կեր արմատ կրելոյ)... Երդումն ուտելն թէ ճշմարիտ է՝ օգնէ» (անդ). աստի կ'որոշէ «սուտ երդմնակեր» (անդ, 30)։

ոսոխն որ զդաւին (դատ) առնէ՝ նմա է գիրն և վկայն և երդումն» (Քրզ. ձմր. 459):

6. — Երդման վայրերէն մին տեսանք տաճարը. Նոյնը սեպհական կ'աւանդէ Ոսկեբերան Ասորւոց ևս, ըսելով. «Դու սպանանես զեղբայր քո ի մէջ Եկեղեցւոյն... մի՛ թէ վասն այսորի՞կ եղև Եկեղեցի՝ զի երդնուցումք. ոն անդր» (Անդր. ժե, 853): — Հեթանոս Յոյնք կարևոր երդումներն ընդհանրապէս կը կատարէին մեհենաց մէջ. և քանի մը քաղաքներ յատուկ տաճար մ'ունէին հանդիսական երդմանց համար (Դարեմբ. Գ, 751):

7. — Երդման վկայից գլխաւորն էր Աւետարանը. Հայոց ծանօթ երդումն ալ Ե Լևոնի ձեռքով՝ կը լինի «սրբոյ Աւետարանին» վրայ (Դարդէլ, ՂԲ): — Նոյնը յատուկ էր և Ասորւոց՝ ըստ Ոսկեբերանի. «ԶԱւետարանն սուրբ՝... անդ հրամայես երդնուլ» (Անդր. ժե, 854):

Թովմա արծրունի կը յիշէ Բագարատ տարօնացւոյ և Աշոտ արծրունւոյ «զկապակցութիւն ուխտին՝ որ ընդ միմեանս երդմամբք հաստատեալ՝ սուրբ Աւետարանաւն և տէրունական Նշանաւն» (120),

այն է կրկին սրբութեանց՝ որ յայտնի են մեզ (աստ, 45)։

Մեր յառաջագոյն նկատած վկայից մէջ անսովոր է սա հետագայ զոյգը, զոր կը գտնեմ Ալաւկայ որդւոյն քով. «որ երդնու ի խաչ և ի Սեղան, երդուաւ ի պատարագն որ ի վերայ նորա» (կան. ՁԳ)։ ԺԲ դարէս շատ կանուխ՝ Ասորւոց ալ սովորական էր «ի Սեղանն սուրբ» երդումն՝ ըստ Ոսկեբերանի (Անդր. ԺԵ, 853)։ — Դաւիթ ունի նաև երդումն «ի խաչ և յեկեղեցի» (կան. ԽՁ). և կամ լոկ «յեկեղեցի» (կան. ՁԳ)։

Դաշանց թղթոյն մէջ յիշուած — կամ ինչպէս ըսի՝ մեր սովորութենէն անոր փոխանցուած — պայմանագրութիւնը սուրբ Բաժակաւ (աստ, 50), կը կրկնէ Վանական վրդ. եւս. «Քրիստոսի Արեամբն ի մելանն խառնե(ա)լ՝ գրեցան եղբարք» (Հարցմունք)։

Բարոյական վկայից մէջ կարելի է յաւելուլ նաև Ասորւոց «ի փառս» Աստուծոյ կամ Յիսուսի (Անդր. Է, 761)։ Նոյնպէս հեթանոս Հռովմայեցւոցն «ի Բախտ ինքնակալին՝» ըստ վկայաբանութեան ս. Ապողոնի (Վկայք. Ա, 138–9)։

*Մարմնոյն անդամոց մէջ հաշուելի է Արարաց մէկ վկայն, յիշուած Թովմայէ՝ Բուղայի առ Գուրգէն արծր. յղած հաշտական երդմնագրին մէջ. «Գրեալ երդմունս ի Ծանականս կանանցն իւրեանց և և ի մոլար Օրհնողիրն» (167). զուգադրութիւն մը՝ զոր արուայիկ միտքը միայն կարող էր ընել։ Կազանկայտուացին ալ կը հաստատէ առաջինը, գրելով նոյն ցեղին համար. «Մինչ յահեղ անունն Աստուծոյ երդնուն՝ ստեն, և մինչ յԱռականս կանանց երդնուն՝ անսուտ պահեն» (Գ, ա), — թէև առ Գուրգէն երդման դրժեցին։ — Սա՝ ցեղը կամ սերունդը կը թուի նշանակել, նման Հրէից «երանաց» ըստ ս. Եփրեմի (մեկ. Արրծ. 85), որոյ դերը տեսանք երդման մէջ (աստ, 136)։*

8. — *Երդման նշանակին մէջ էր ձեռաց դրութիւնը, զոր կը յիշէ Ոսկերերան և Ասորւոց քով. «Յորժամ տեսանեմ զոք մերձ ի սեղանն գոլով և զձեռն դնելով և յաւետարանն մերձենալ և երդնուլ» (Անդր. ժե, 854)։ — Կ'երևի թէ մեր մէջ սա այնքան խիստ չէ եղած միշտ. անոր համար Այաւկայ որդին կրկին ձև կ'աւանդէ երդման «ի խաչ և յեկեղեցի».*

այն է « բանիւ կամ ձեռն դնելով » (կան. ԽԶ)․ եթէ սակայն « կամ » հոմանիշ չէ եւր։

9․ — Բանաձեւք երդման ըստ Յովհ. Եզնկացւոյն՝ երեք տեսակ են։ Կայ որ « վկայական կոչի »․ և է այս, « Աստուած վկայ է »․ և կը յարէ՝ թէ « այս կարի ծանր և ահագին է », իբր համազօր աստուածային անունն « ի վերայ սուտ իրաց » կոչելու։ Երկրորդն է « ուրացական »․ ինչպէս ըսելը՝ թէ « ԶԱստուած ուրացեալ է մարդն, թէ այսենց (այսպէս) չէ »․ և զոր « մեծ անօրէնութիւն » կը համարի նոյն իսկ ճշմարիտ իրաց վրայ․ ու կը յիշէ Բարսղի կանոնը տասնուհինգ տարի ապաշխարելու (աստ, 62)։ Երրորդն է « խոստովանողականն », ինչպէս սա ձեւը․ « Աստուծոյ փառքն՝ որ այս հանց է »․ կամ՝ « Այս խաչիս և այս Աւետարանիս փառքն »․ և կամ՝ « Հրեշտակաց փառքն »․ և կը պատուիրէ այսպէս երդնուլ երբ հարկ լինի (Խըրատ, Ը)։

10․ — Գրաւոր երդման և կնքման ուրիշ օրինակ մ'է այն՝ զոր Կղեմէս պապին նուիրակներն « Եստուն (մեր) իշխանացն

առնել գիր ուխտին և երդմանցն, և կնքել մատանեաւ իւրեանց և ստորագրել իւրեանց իսկ ձեռամբ» (Դարդէլ, ԼԷ)․ վերջին պարագայս մեզ համար նոր է, զի մեր կնքումն ստորագրութեան տեղ էր արդէն։ — Բուղայի առ Գուրգէն երդումը նոյնպէս «գրեալ և կնքեալ» էր (Թով. արծ. 167)․ և 1153ին՝ սուլտանը «դաշինս սիրոյ խաղաղութեան երդմամբ գրեալ» յղեց Հայոց (Գր. երէց յՈւռհ. ՄԿԴ)։

11. — Միջնորդաց դերը կը յիշէ նաև Յհ. Եզնկացւոյն մէկ վկայութիւնը, որոյ համեմատ եկեղեցւոյ մէջ տրուած երդմունքը կը լինէին «քահանայի միջնորդութեամբ» (Խրատ, Ը)։ Դարձեալ՝ Ե Լևոնի Հայոց հետ երդման պահուն՝ աւետարանը «կալեալ ունէր եպիսկոպոսն Ներսոնի» իբրև միջնորդ (Դարդէլ, ՂԲ)։ — Նմանապէս Ասորւոց քով երդման աւետարանն «ի վերայ ձեռաց ունէին խորհրդականք» (Ոսկ. Անդր. ժե, 854)։

12. — Երդմնազանցութեան պատժոց մէջ կարելի է յաւելուլ վերև յիշուած 1216ի մաշտոցին այս յօդուածը. «Եթէ երդմնուրաց է, ժբ ամ» պիտի ապաշխարէ։ — Այս թերութեամբ մեծապէս վա-

ըակուած էին նաև Ասորիք՝ այն չափով որով իրենց երդմնահարութիւնն էր, զոր տեսանք (ստ, 300) ուստի և նոյն առթից մէջ. և որոյ ստէպ յիշատակութիւնը կ'ընէ Ոսկեբերան (Անդր. ԺԴ, 832–3. ԺԱ, 804)։

13. – Երդմնազանցութեան ուշագրաւ պարագայ մ'է Յով. Եզնկացւոյն ըսածը. « Պատուէր տամ առն և կնոջ՝ մի՛ երդնուլ ի վերայ իրերաց ». կ'իմանայ երդնուլ բաժնուիլ իրարմէ, որ կը պատահէր «բարկութեան» պահուն։ Եւ ըստ որում բաժանումդ հակառակ էր « Աստուծոյ հրամանին և ուխտին », և այդ երդումը չըպահելով « երդմնազանց լինին », ուստի ադոր դարմանը կը կարգէ այսպէս. « Արդ որք միանգամ անգիտութեամբ երդնուն, քահանայն լուծ դիցէ՝ զի պահաւք և աղաւթիւք, մատաղաւք և ողորմութեամբ քաւեսցեն, և այլ մի՛ երդնուն » (Խրատ, Ե)։

14. – Ապաշխարողաց երդման մէկ տեսակն է Շնորհալւոյն աւանդածը նորադարձ արևորդեաց համար։ Կ'ըսէ՝ թէ անոցմէ ոմանք իրեն երթալով՝ « յուրաստ եղեն երդմամբ մեծաւ ի չար աղանդոյ

անտի, և նզովեցին բերանօք իւրեանց՝ որ զայնպիսի ծածուկ անաստուածութիւն ունիցի յինքեան»: Միանգամայն սամոստացի Հայոց կը պատուիրէ՝ թէ ի՛նչպէս պիտի ընդունէին զանոնք: Բոլոր քահանայքդ, կ'ըսէ, հաւաքուեցէք և ժողովեցէք զանոնք «ի դրունս եկեղեցւոյն» քաղաքին: Եւ յետ հարցնելու անոնց դարձի յօժարութիւնը, «հարցէք զնոսա որպէս ընդ երախայսն ի ժամ մկրտութեանն, եթէ Հրաժարէ՞ք ի սատանայէ և յամենայն խորհրդոց և ի բանից և ի գործոց նորա: Եւ իբրև յանձն առնուն և ասեն թէ Հրաժարեմք, ապա յարևմուտս դարձուցէք ըզդէմս երեսաց նոցա և ասացէք՝ թէ Թքէք յերեսն սատանայի երիցս անգամ, և անարգեցէք զնա որպէս զպեղծ և զսուտ և զանիրաւ»: Եւ յետ ցուցնելու անոնց մոլորութիւնը, «ապա դարձուցէք զերեսս նոցա յարևելս և հարցէք՝ թէ Հաւատա՞յք յամենասուրբ Երրորդութիւնն ի Հայր և յՈրդի և ի սուրբ Հոգին», որուն կը յարէ մանրամասն դաւանութիւն մը: Այս կարգը կը յանձնարարէ հաւասարապէս անոնց մկրտելոց և ոչ մկրտելոց համար (Նամակ. 240–7):

15. — *Կիպրիանոս մատեանն ալ* (*տես*, 215) *ունեցած է իր նախագաղափարը կամ համագաղափարը՝ նոյն կոչմամբ հանդերձ՝ ուրիշ քրիստոնեայ ազգաց մէջ, ինչպէս են Յոյնք և Լատինք։ Ասոնց բնագրաց մասին խօսած են Հառնակ, Շերման՝ որ յունարէնը հրատարակած ալ է*[1], *և վերջերս Ադոլփ Փրանց իր մէկ կարևոր աշխատութեան մէջ*[2]։ *Ես կարողացայ տեսնել վերջինս միայն, որ կը ծանուցանէ՝ թէ յոյն և լատին բնագիրք իրարմէ բոլորովին տարբեր են յօրինուածով, ոճոյ նմանութիւն մը միայն ունելով* (395, *ծն.*)։ *Ինք կը խօսի յատկապէս լատիններէնի մասին. և անոր նկարագրէն զոր կու տայ, և մէկ երկու կտորներէ զորս յառաջ կը բերէ, յայտնի կը տեսնուի՝ թէ լատինին և մեր հայ բնագրին մէջ որ և է սերտ աղերս չկայ։ Լատինն ալ ունի երդումներ յանուն աստուածային երեք անձանց, նահապետաց, առաքելոց ու սրբոց, հաւատոց, խորհրդոց, վերջին դատաստանի և այլոց, որոնք*

1. Oriens christianus, III (1903), 311–23.
2. Die Kirchlichen Benediktionen *եւն*, Բ, 394–8։

խմբագրուած են արարողական մատեաններէ։ Կան նաև մոգական երդմնաձևեր. դրախտի չորս գետերը. հրեշտակաց անսովոր անուանք, ինչպէս «Սարահոտ, Աքրահամ, Ոսիամ, Ոսիա, Ոգլա» (397)։ Բայց այս բոլորն ընդհանուր գաղափարով միայն՝ և ոչ ձևով կը համեմատին մերոց։

Ընդ հակառակն Հ. Ն. Ա. ի Հանդ. Ամս. (1910, էջ 381) ակնարկելով հայ բնագրին, կ'ըսէ՝ թէ սա «ուրիշ բան չէ՝ բայց եթէ թարգմանութիւն Անտիոք ծագած յոյն ( ) սկզբնագրի մը»։ Չեմ կարող որոշ համոզում մը կազմել կամ յայտնել ինձ անծանօթ յոյն բնագրին և հայուն մէջ եղած կապակցութեան կամ աստը չափուն նկատմամբ։ Սակայն չեմ վարանիր այժմէն դիտել տալ՝ թէ առանց ուշադիր համեմատութեան և հապճեպով է հայուն անպայման «թարգմանութեան» վարկածը պատ. մատենախօսին կողմանէ. նկատելով՝ թէ ինքն իսկ արդէն հարցականով մը կը տարակուսի «յոյն սկզբնագրի» մասին, և իմ քննած հայ բնագրին ամբողջութիւնն ալ անծանօթ է իրեն. – թէ ինչպէս յոյն և լատին օրինակները, մերայինք ալ իրարու աննման

խմբագրութիւնք են՝ եթէ ըստ աղօթից և եթէ ըստ Գրոց. — Թէ իմ գործածած օրինակին մէջ հիւսուած Նարեկացւոյն, Շնորհալւոյն և Գր. Սկեւռացւոյ չորս աղօթքները, որոնք հայ Կիպրիանոսի ատաղձներէն են, չէ կարելի հելլենացնել. — Թէ որ և իցէ օտար սկզբնագիր մը չէր կարող տալ իմ օրինակին՝ պահպանողական երդման մէջ (աստ, 223) գըտուած այս անուանքը. « Բարեխաւսութեամբ սուրբ հայրապետացն. սրբոյն Գրիգորի Լուսաւորչին... Գրիգորի Նարեկացւոյն, Գրիգորի Արծրունեաց եպիսկոպոսին, Գրիգորի Աղաւնից կաթուղիկոսին, սրբոյն Ըռըստակիսի, Վրթանիսի, Յուսկանն » ևն մինչև « Մեսրոպա », և լոկ առաջին երեք տիեզ. ժողովոց յիշատակութիւնը. կամ ուրիշ աղօթից մէջ՝ « Սարգսի զօրավարին և որդւոյ նորայ Մարտիրոսին... սրբոց Վարդանանց, սրբոց Ոսկեանցն, սրբոց Սուքիասանցն, սրբոց Ատոմեանցն և սրբոց Ղևոնդեանցն», կամ « սրբոյն Սանդըխտոյ կուսին, սրբոյն Հռիփսիմեայ և ընկերաց իւրոց, սրբոյն Նունէ և Մանէ, սրբոյն Շուշանայ » անուանքը. և կամ ուրիշ սրբոց ցուցակներ՝ որոնք մեր տօ-

*նացուցին բովանդակութեամբ ու կարգով յօրինուած են։*

*Վերջապէս մեր Կիպրիանոսը նիւթական «Թարգմանութիւն» մը, օտար գիրք մը չէ. այլ թէ շատ՝ — եթէ ապացուցուի՝ — ազատ խմբագրութիւն մը հայ ձեռքէ, վերածմամբ ու բաղադրութեամբ անոր մէջ տոհմային տարերաց. ինչ մերձեցած է Ե դարէն իսկ «յուռութս և ի գիր զառածեալ» հայ ժողովրդեան մտաց, և ոչ թէ այս միտքն իրեն։ Որով և իր բովանդակած անապաշտութիւնք ճիշդ թարգմանն են հայ համոզմանց և աւանդութեանց՝ զորս քննեցինք ազգային մատենագրաց խօսքերով, յատկապէս Ե և Զ գլխոց մէջ. և որոնք որ և է չափով օտարաց ալ թէ պատկանին, չեն դադարիր մերն ևս լինելէ, ինչպէս մերն էին նաև միւս սովորական երդմանց այնքան ձևերը՝ զորս տեսանք և օտարաց քով։*

*Դիւաց կիպրիանոսեան կամ հայ աւանդական կերպարանաւորութեանց (տես, 227), և յատկապէս գնոստիկեան (նաև աստուածաշնչական) օձանմանութեան վրայ (տես, 228՝ ծն.) կարելի է յաւելուլ փաւստոսի ըսածն ալ, թէ Պապ ի ման-*

կուլթենէ դիւաց նուիրուած իւր մօրէն, սա օր մը « տեսանէր աչօք իւրովք օձք սպիտակք, զի պատեալք էին զգահոյիցն ոտամբք, և ճապատէին ի վերայ պատանեկին Պապայ, մինչ դեռ ընգողմանեալ էր նա ». Փառանձեմ իմացաւ թէ դեւերն էին անոնք (Դ, խդ)։ Այս և այսպիսի ամենահին նմանութեանց մէջ ո՛րքան անապահով է փոխառութիւն ենթադրել, և ոչ մանաւանդ գաղափարակցութիւն։

# ՑՈՒՑԱԿ ՆԻՒԹՈՑ

## ԵՐԴՈՒՄՆ



## ԱՆԿԱՆՈՆ ԵՐԴՄՈՒՆՔ *կամ Երդմնահարութիւն*



## ՕՐԻՆԱԿԱՆ ԵՐԴՄՈՒՆՔ

## ՀԱՅ ԵՒ ՕՏԱՐ ԵՐԴՄՈՒՆՔ



## ԵՐԴՄՈՒՆՔ ԴԻՒԱՑ ԵՒ ԱԽՏԻՑ